ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃՀԵ.

# ԱՐՑԱԽԻ ՎԱՆՔԵՐԸ

ԳՐԵՑ

ԴԿՏՐ. Հ. ՀԱՄԱԶԱՍՊ ՈՍԿԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1953

# DIE KLÖSTER VON ARTZAKH

VON

DR. P. HAMAZASP OSKIAN

MECHITHARIST



WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1953

PRINTED IN AUSTRIA

# ԱՐՑԱԽԻ ՎԱՆՔԵՐԸ

ԳՐԵՑ

**ԴԿՏՐ. Հ. ՀԱՄԱԶԱՍՊ ՈՍԿԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



**ՎԻԵՆՆԱ**

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1953

ԱՐՀԻԱՊԱՏԻՒ ՏԵԱՌՆ

ՅՈՎՀԱՆՆԷՍ Վ. Ի ՆԱԶԼԵԱՆ

ՏԻՏՂՈՍԱՒՈՐ ԱՐՔԵՊ. Ի ՏԱՐՍՈՆԻ

ԱՌԹԻՒ

ԵՊԻՍԿՈՊՈՍՈՒԹԵԱՆ

ՔԱՌԱՍՈՒՆԵՐՈՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ

(1911—1951)

Կ'ԸՆԾԱՅԷ

ԽՈՐԻՆ ՅԱՐԳԱՆՔՈՎ

ՀԵՂԻՆԱԿԸ

## ԱԶԴ

Այս հատորը ամփոփումն է «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ նախապէս լոյս տեսած յօդուածներու (հմմտ. անդ, 1951, էջ 339, 521. 1952, էջ 80, 213, 415, 546 եւ 1953, էջ 33), որոնք ստուգիւ ծանր պարագաներու տակ գրուած են Վիեննայի, Տրիեստի եւ Բէյրութի մէջ։

Բէյրութ 1953։

ՀԵՂԻՆԱԿԸ

# ԱՐՑԱԽԻ ՎԱՆՔԵՐԸ

## 1.

## ԱՐՑԱԽԻ ԴԱՇՏԱՅԻՆ ԿԱՄ ՍՏՈՐԻՆ ԵՒ ՎԵՐԻՆ ԿԱՄ ՀԱՐԱՒԱՅԻՆ ԳԱՒԱՌՆԵՐՈՒ ՎԱՆՔԵՐԸ

*Արցախի Նահանգի Դաշտային կամ Ստորին եւ Վերին կամ Հարաւային գաւառները շատ քիչ վանքեր ունին, ուստի եւ զանոնք — թէեւ իրարմէ բաւական հեռու — կը միացնեմ: Նախ առաջինին վանքերը նկատի պիտի առնուին եւ ապա երկրորդինը:*

*Դաշտային կամ Ստորին Արցախի գաւառներն են.*

| Հին գաւառ | Նոր գաւառ |
| --- | --- |
| 1. *Պիանք* | 1. *Ճիբրայել* |
| 2. *Մուխանք կամ Մուղան* | 2. *Միլին դաշտ* |
| 3. *Արանռոտ* | 3—4. *Քեարպելու* |

| Հին գաւառ | Նոր գաւառ |
| --- | --- |
| 4. *Տրի* | |
| 5. *Ռոտպացեան* | 5—6. *Ջաւանշիր* |
| 6. *Աղուէ* | |
| 7. *Տուչքատակ, Թոռան-գիւղ, Տիգրանակերտ* | 7. *Ծաւ-Պուլաղ* |

| Հին գաւառ | Նոր գաւառ |
| --- | --- |
| 8. *Ուտի, Առանձնակ* | 8. *Ջուանշիր* |
| 9. *Ծակաշէն, Արշակաշէն, Գանձակ, Գեանջա* | 9. *Գանձակ կամ Եղիսաբեթպոլիս* |
| 10. *Կողթ, Շամքոր, Զակամ* | 10. *Ղազախ* |

*Իսկ Վերին կամ Հարաւային Արցախի գաւառներն են.*

| Հին գաւառ | Նոր գաւառ |
| --- | --- |
| 1. *Բերդաձոր, Բելուկան, Ղալաերեսի* | 1. *Ծիպրայիլ* |
| 2. *Հարճլանք, Ջառիստ* | 2. *Հաճիլէր* |
| 3. *Վայկունիք* | 3. *Զանգեզուր* |
| 4. *Սիսական ոստան, Ծար, Զար* | 4. *Զար* |
| 5. *Վարդանակերտ* | 5. — — — |

(*Բարխուդարեան Մ. եպ., Արցախ, Բագու* 1895, *էջ* 22—23, 25—26 *եւ* 26—60, 399—412:)

Ա.

Ստորին եւ Վերին Արցախի գաւառներու վանքերն ի մի կ'ամփոփեմ, վասն զի շատ սակաւ են թուով:

## 1. ԽՈՐՈՏԿԱՑ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԸ

Ջակամի մէջ[1]: Ալեքսան աբեղան Խորոտկայի մէջ 1490ին կը գրէ Աւետարան մը, որուն յիշատակագրութեան մէջ կան կարեւոր տեղեկութիւններ՝ «Արդ եղեւ գրաւ գրչութեան այս աստուածաշունչ սուրբ աւետարանիս ի յերկնահանգէտ եւ գերահռչակ սուրբ ուխտս Խորոտկայ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս եւ սուրբ Յակոբիս եւ սուրբ Նշանիս եւ այլ սրբոցս որ աստ կան: Որ բազմաժամանակեա(յ) անմարդայրնակ լեալ եւ խախտեալ հիմանց սորա: Եւ եսո (յեսոյ) սրբամիտ եւ աստուածասէր եւ մեծազգի տեսեալ զսուրբ ուխտս այսպիսի խախտեալ, խանդաղատեալ սորա. վասն որոյ ջերմեռանդ սիրով եւ եռայփափաք տենչմամբ Աւան աղէս նորոգեաց զսուրբ ուխտս եւ շատ աշխատութեամբ կատարեաց... ի

[1] Բարխուդարեան, անդ, էջ 57:

առաջնորդութեան սուրբ ուխտիս ամէր Ղուկասին, որ է սրբամիտ եւ հեզահոգի եւ խոնարհ երրայրսիրութեան ի հայրապետութեան ամէր Ղազարին եւ փակակալութեան ամէր Սիմէոնի եւ տնտեսութեան Շանչին...» (Աճառեան Հ., Ցուց. հայ. Ձեռ. Նոր Բայազէտի, էջ 23. Սմբատեան, Գեղարքունիք, էջ 54):

Շահարասի օրով հոս առաջնորդ կ՚ըլլայ Գեղամացի Դաւիթ եպիսկոպոսը, որ 1610ին անոր եկեղեցին կը շինէ (Սմբատեան, անդ, էջ 407 եւ Մառ Ն., Ցուց. հայ. Ձեռ. Սեւանայ, էջ 16, թ. 35):

## 2. ԱՂԱՃ-ՂԱԼԱՅԻ ԿԱՄ ՇԱՀ-ՓԵԹԱՐԻ ՎԱՆՔԸ

Կողթի Աղաճ-Ղալա կամ Շահ-Փեքարի գդեակին «արեւելեան կողմում կայ մի փոքրիկ վանք, որ ամբողջապէս կանգուն է եւ որի հարաւին հանդէպ կայ մի փոքր եկեղեցի, գիւղատեղի եւ հանգստարան» (Արցախ, էջ 58): Գուցէ այս վերջինները կը վերաբերէին վանքին:

## 3. ԽԱԼԽԱԼԻ ՎԱՆՔԸ

Կողթնի վանքերէն:

Շամքորի մօտ Խալխալ քաղքին քով կը գտնուի վանք մը, որուն (իսկական) անունը կը մնայ անծանօթ (Բարխուդարեան, Արցախ, էջ 58):

## 4. ՎԱՆՔԱՍԱՐԻ ՎԱՆՔԸ

Տիգրանակերտ գաւառին (Ծաւ-Բուլաղ) համանուն աւանին աւերակներուն վերեւն է Վանքասարը[2]: Այսպէս կոչուած է, վասն զի անոր գագաթին վրայ Վաչէ Բ. թագաւորը խաչաձեւ մենաստան մը շինել տուած է: Մենաստանին գլուխը բոլորովին խոնարհած է (Արցախ, էջ 28 եւ 414):

## 5. ՔՐԴՄԱՆԿԱՑ ՎԱՆՔԸ

Ծիկաշէն–Գանձակ գաւառի մէջ: Ծանօթ հետեւեալ ընդարձակ յիշատակագրութենէն՝ «Փառք... Արդ... գրեցաւ սուրբ Մաշտոց... ի թուականութեանս ՋԿԴ (1515) ի կաթողիկոսութեան տէր Բսատակէսի ի դանութեան Շահ Իսմայէլին ԺԴ. ամին: Եւ է սա ի լաւ եւ ընտիր աւրինակէ... ձեռամբ... անարհեստ գրչի Ալեքսանոս արեղայի... գրեցաւ յերկիրս Գանձակա ի վանքս Քրամանէկայ ի դուռն սուրբ տաճարիս Ս. Յովհաննիսիս[3], ի խնդրոյ բարի... առաքինաւէր եւ առաջնորդ ուխտիս արհիեպիսկոպոս տէր Բարսեղ ստացող սորին...: Ի վայելումն անձին իւրոյ եւ յիշատակ հոգոյ իւրոյ եւ ծնողացն հաւրն պարոն Պէպուզին որդի Ղարամանին եւ թոռն մեծ Սատոնին եւ մաւրն պարոն Խոնձատին եւ այլ եղբարցն որ ի Քրիս–

---

[2] Բէշիկ-դաշի:

[3] Գանձակի մէջ կայ Ս. Յովհաննէսի եկեղեցի մը (Արցախ, էջ 36):

ոսս հանգուցեալ՝ Սատոնն եւ Ծահալպուղն եւ փոքր եղբայրն Ղարամանին եւ եղբայրորդեացն Տէանոտեարին եւ Պէապարին։ Եւ հարեղբայրն դստերն Հռիփսիմեայ հաւատաւորին։ Եւ քվէրանցն...[4] եւ միաբան որդոց սորա Իգնատիոս աբեղայն, Ղուկաս աբեղայն եւ Յոհան դպրին, Տէրուն դպրին, եւ միւս Ոհան դպրին եւ Մխիթար դպրին, Թադէոս միայնակեցին եւ Մկրտչի։ Ընդ նոսին եւ զանպիտան գրիչս Աղեքսանդրոս հանդերձ ծնողաւք իմ յիշեցէք ի Քրիստոս...»։ Նկարողն է Յովհաննէս։ Թղ 111ր կայ «Հռիփսիմէ հաւատաւորն սպասաւորէր, զմիաբանքս եւ զմեզ կերակրէր» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ., Tübingen, Nr. 28, Թղ. 352բ—354ա. Հմմտ. Fink, Hauptkatalog der königl. Universitätsbibliothek zu Tübingen MA. Nr. 28)։

## 6. Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ (ԼԵՂԱՆԻ) ՎԱՆՔԸ

Գանձակի վանքերէն։ Ծանօթ՝ յիշատակարութենէ մը։

«Սկիզբն եղեւ գործանութեանս այսմիկ նախախնամութեամբ սուրբ Հոգւոյն յաստուածապահ գաւառիս Գանձակայ ընդ հովանեաւ Լեղանի սուրբ Աստուածածնիս եւ արհիական յաթոռիս եւ առաջնորդութեան իմոյ Ստեփաննոս յեպիսկոպոսիս սուրբ ուխ–

[4] Յառաջ կը բերուին անուններ։

տխս...» (Աւետարանը կը գրուի 1445—1467ի շրջաններուն, հմմտ. Մառ Ն., Ցուց. Հայ. Ձեռ. Սեւանայ, էջ 13. Սմբատեան, Գեղարքունիք, էջ 399, Թ. 28)։ Հոս յիշուած Գանձակի վանքերէն մաս մը կարելի է Գարդմանի վանքերու տակ դասել։

7. ՊԱՅԱՆԱՆՑ (Ս. ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԻ) ՎԱՆՔԸ

Ծանօթ է հետեւեալ յիշատակագրութիւններէն՝ 1. «Գրեցաւ (Աւետարանս 1669ին)... ի հայրապետութեան տանս Աղուանից Տեառն Պետրոսի կաթողիկոսի եւ առաջնորդութեան սուրբ մենաստանիս Պայանու Անտոն պարոնտերի ... ի յերկիրն Գանձայու ի գեղս Քարատակ ընդ հովանեաւ նորակնունք սուրբ եկեղեցւոյս եւ սուրբ Գարբիէլ եւ Միքայէլ տաճարիս» (Արձագանք, 1888, էջ 133—134)։

2. «Թվին ՌՄԺԲ(...) ...առայ Յովհաննէս սուրբ աւետարանս ի ձորս Գանձակու ի երկիրս Գանձու, ի գիւղս որ կոչի Պայանանց ի դուռն սուրբ Հրեշտակապետ եկեղեցւոյ, ի հայրապետութեան Գանձասարու տէր Ներսէսին» (Թօփճեան, Ցուց. Հայ. Ձեռ. Դաղեան Վ.ի, Բ., էջ 46)։

8. ՔԱՐԱՀԵՐՁԻ ԱՅՐԵՐ ԿԱՄ ՕԽԹԸ ԵԴՅԻ

Գանձակ գաւառին մէջ։

«Շամքոր գետի ափին ձգւում է մինչեւ Շիպատարը մի լեռնաբազուկ, որի հիւսիսա—

հայեաց ծայրի քերծերում փորուած են քա–րայրներ», որոնց մէջ երկար ատեն Աղուանից Յովհաննէս կաթողիկոսը պատսպարուած է: Հաւանօրէն ճգնատեղիներ են եղած այդ քարայրները (Ազգր. Հանդ. 1899, Ե., էջ 344):

## 9. ԲԵՐԴԱՁՈՐԻ Ս. ԳՐԻԳՈՐԻ ԿԱՄ ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔ

*Բերդաձորի Խոխեկոյ բերդի դիմաց, Լարան ձորի մէջ, Վաղաշաւէն 10 վերստ հեռու: Նման է օրօրոցաձեւ եկեղեցւոյ: Ունի թաղակապ գաւիթ: Կայարանները քանդուած: Արտաքին պատերուն վրայ կան արձանագրութիւններ* (1229 *թուականէն, Արարատ,* 1896, *էջ* 80—81. *Բարխուդարեան, Արցախ, էջ* 25):

## 10. ԾԱՐԻ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԸ ԿԱՄ ԳԵՏԱՄԷՋԻ ՎԱՆՔԸ

*«Սրբատաշ քարով շինուած է տաճարը, որ կանգուն է նոյնութեամբ, գտնւում է Ծարի հարաւային մխմահերձի տակ, երկու ջրախառնուրդի մօտ, որք են Տաք–ջրի եւ Զրխուլ գետի վտակներն» (Արցախ, էջ* 407):

*Ծարի այս մենաստանը փոքր է եւ շատ գեղեցիկ: Ունի հետեւեալ արձանագրութիւնը, որ մինչդամայն իր պատմութիւնն է՝ «Ի ժամանակին յորում տիրեալ ազգն նետողաց բազում աշխարհաց եւ մինչեւ յՄիկկիանոս ծով եւ Սատամպալն ի Պոնտոս եւ մին–*

չեւ ցգեան Եփրատես տիրելով գաւառաբար եւ ծանր հարկապահանջութեամբ ցաւեցուցանելով զամենեսեան զմեծամեծս եւ զփոքունս ի մահ եւ գերութիւն մատնելով, յայնմ ժամանակի դառնութեան որ կաք մեք տէր Յովհաննէս Դոփեան տրուպ եւ նուաստ եւ տկար հոգի, հասաւ մեզ հրաման ի Նախահարցն մերոց գնալ ի մեր հայրապետացն առաջնոց(ց) աթոռն հռչակելի Հախպատ, դարձ արարեալ ի մեր հայրենական եւ բնիկ տունս հարազատ աւագ եղբաւր Հասանայ քաջ զօրականին եւ հռչակաւոր արխացելոյն, որ եւ որդի իւր Գրիգոր սիրող եկեղեցւոյ եւ քահանայից եւ ամուսինն իւր բարեհամբաւ Ասփայ դուստր մեծի կոմսի Տարսայիճի իշխեցողի կողմանցն Սիւնեաց՝ եւ մեր հայցեալ ի ձորակս, զի հոսէին ջուրք աստի եւ անտի եւ ի մէջն նոցա բլրակ մի գեղեցիկ, եւ հաճեցայ ընդ սա եւ մտայ յանապատս եւ սկսայ շինել ժամատուն մի եւ յայնմ խորհրդի եկն Գրիգոր եղբաւրորդի մեր եւ իշխան գաւառիս եւ այլ շատ կողմանց իշխեցող եւ կամեցան շինել զաւուրբ Աստուածածինն ի բարեխաւս մեզ եւ ամենայն քրիստոնէից. եւ տէր Յովհաննէս արարի սկիզբն շինութեան եկեղեցւոյս ի թուին ՉԾ» (Արցախ, էջ 407—408):

Տաճարին մերձ սքանչելի խաչքարձանի մը վրայ կայ՝ «Աստուծով ես Սայտի որդի Ծանչին քաջ եւ յաղթող զաւրավարին եւ մեծ իշխանաց ազգէն եւ ի թուին ՊՀԹ. անդեւայս

*տէր եւ պարոն փոքր Սխնեաց, Ականայ, Հաթերքայ եւ Հանդաբերդի եւ ծովակին Գեղամայ մինչ ի Տաղվաքայ կանդնեցաք գխաչս հաւր մերոյ Տանչին*[5]» (*Արցախ*, էջ 408, *Ջալալեան*, *Ճամբ*., *Ա*., 408, *Տահխաթունեան*, *Ստորագրութիւն*, *Բ*., էջ 364. *Էփրիկեան*, *Բնաշխ*. *Բառ*., *Բ*., էջ 239):

*Հաւանականաբար այս վանքին իսկական անունն է Գետամէջի վանք*[6], *բայց եկեղեցւոյ անունովը կոչուեր է եւ Ս. Աստուածածին: Ճաշոց մը կը գրուի* 1410*ին «յաստուածաշէն երկիրս Ծար կոչեցեալ ի վանս Գետամէջ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս...»* (*Նօտարք*, էջ 39—40): 1455*ին Աւետարանի մը արտագրութիւնը կ՚ըլլայ «ի հոյակաւոր վանքս Գետա* (*դուցէ՝ Գետամէջ*) *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս եւ սուրբ Ստեփաննոսիս»* (*Թօփճեան*, *Ցուց*. *հայ*. *Ձեռ*. *Դաղեան Վ.ի*, էջ 31): 1588*ին Աւետարան մը կը գրուի «ի գաւառիս Ծար, ի վանս Գետամիջոյ»* (*Ակինեան*, *Հաւաք*. *Յիշատ*. *Հ*. *Պօտուրեանէն*):

---

[5] *Ծարի արեւելեան ստորոտը կայ դեռ ուրիշ վանք մը: Անունն՝ անծանօթ* (*Արցախ*, էջ 408):

[6] *Հմմտ. Գետամէջ եւ Ծար ի Սիւնիս*, *Ալիշան*, *Սիսական*, էջ 61:

2.

# ԱՐՑԱԽԻ ԼԵՌՆԱՅԻՆ ԿԱՄ ՄԻՋԻՆ ԳԱՒԱՌ–ՆԵՐՈՒ ՎԱՆՔԵՐԸ

*Արցախի վանքերուն մեծագոյն մասը կը գտնուի անոր լեռնային կամ միջին գաւառներուն մէջ։*

*Այն գաւառներն են՝*

| Հին գաւառ | Նոր գաւառ |
| --- | --- |
| 1. *Գարդկանք, Դիզակ* | 1. *Ճիպրայել* |
| 2. *Հարանդ (Միւս Հարանդ), Ամարաս, Վարանդա* | 2. *Վարանդա* |
| 3. *Մեծիրանք (Մեծարանք) Ներքին Խաչէն* | 3. *Խաչենք* |
| 4. *Բոստակ, Հաթերք* | 4. *Ջրաբերդ* |
| 5. *Մեծկողմանք, Ջարաբերդ, Ջրաբերդ, Գիւլիստան* | 5. *Ջուանշիր* |
| 6. *Գարդման, Գարթմանիկ* | 6. *Գանձակ* |
| 7. *Փառիսոս* | 7. *Ղազախ կամ Շամշատիլ* |
| 8. *Բուսախ* | 8. *Ղազախ կամ Շամշատիլ* |
| 9. *Ձաւէ, Ձորագետ, Սեւորդեաց կամ Կայենոյ երկիր* | 9. *Ղազախ կամ Շամշատիլ* |

## Ա.

## Պազկանքի (Պանծկանքի) կամ Դիզակի վանքերը:

*Պազկանք (Պանծկանք), այժմ կոչուած Ճիպրայի՝ գաւառը կը գտնուի Երասխ գետի ձախ եւ Ղուրուչայի աջ ափին, Հադրութի եւ Դիզափայտի լեռնաշղթային գագաթնադծին մէջ (Բարխուդարեան, Արցախ, էջ* 28) :

### 1. ԳՏՉԱՅ ՎԱՆՔԸ

*Թաղլար աւանին դիմաց, Տող գիւղի մօտ, Ղուրուչայ գետակին աջ ափին, գեղեցիկ եւ հիւսիսահայեաց սարահարթակի վրայ հիմնուած է Գոչայ կամ Կոչոյ վանքը: Շինուած է համակ սրբատաշ տորոնագոյն քարերով, խաչաձեւ, քառակուսի, չորս կամարներով, որոնց վրայ բարձրացած է սիրուն կաթուղիկէն: «Վանքս ունի մի աւագ, չորս փոքր խորան տասնուերեք լուսամուտ, մի դուռն,* 10 *մետր երկարութիւն եւ* 7·50 *մետր լայնութիւն» (Արցախ, էջ* 80) : *Հիւսիսային պատին վրայ փորագրուած է՝ «Յանուն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, ես Սարգիս եւ Վրդանէս եղբարք հիմնեցաք զեկեղեցիս ի ՈՂ* (1241) *թվին. չաա*

աշխատութեամբ աւագ խորանն խփեցաւ եւ եղբայրս իմ Տէր Սարգիս ի Քրիստոս փոխեցաւ: Ես Վրդանէս կատարեցի բազում աշխատութեամբ եւ հալալ արդեամբք իմովք ՈՂԷ (1248) թվիս, ի դառն եւ ի նեղ ժամանակիս, որ ազգն նետողաց գրաւգում գաւառս աւերեաց եւ մնաց այլասեռից աթոռ եւ վիճակ սրբոյն Գրիգորիսի, որ է հաստատեալ աջով եւ սուրբ նշանաւն եւ գաւազանաւն սրբով, վիճակեցաւ եւ սահմանով ի յԱղուանոյ գետոյ մինչ ի Երասխն, մինչ ի Աւագն Գատուհատի, Վակունիս Վաղաղնագետով, ի Քարատնիս եւ Խոզանագետովն, Ձախատ իւր գետովն, Հաքարի Հագարագետովն, Քրտագետ իւր գետովն, իւր սահմանովն, Դիզակ, Բէլուկան իւր գետովն եւ հայրենիքն եկեղեցւոյս տուինք, Փարախն եւ Գոտանոցն, Եկեղեցաձորն իւր սահմանովն, Ա. Լուծ հող ի Տայխս, Ա. Լուծ ի Դող ի Գաղս, Ա. ի Մոխրենիս... ով որ այս սահմանէս յետ տանէ կաթուղիկոս... բաժին ընդ Յուդայի առցէ» (Արցախ, էջ 80—81):

Հարաւային փոքր խորանին ներքին ճակատին վրայ կայ՝ «Ի թվին ՈՂԵ (1246) ես Տէր Վրդանէս շինեցի զեկեղեցիս եւ զցրուեալ վիճակս հաստատեցի եւ զհայրենիքս եւ արժանի գրեցի հանապազ ուրխաթն անյիշատակաց ժամն եւ տարուոջն Ժ. ժամ ինձ եւ Ժ. ժամ տէր Սարգսի: Յետնանցն Ա. ժամ Ուխտանէս եղբաւրն իմ, Ա. ժամ Մովսիսի իմ

քվեր որդու, ով խափանէ մեր մեղացն տէր է առ Աստուած» (Արցախ, էջ 81)։

Հիւսիսային փոքր խորանին ճակատին վրայ՝ «Ես Ջերդամ եւ որդի իմ Ղարաք մխարանեցաք սուրբ ուխտիս. տէր Վրդանէս իւր կամաւ զժամատունն ինձ ետ եւ ես իմ հալալ արդիւնն ընծա բերի սուրբ աԹոռոյս» (անդ, էջ 81)։

Վանքը գաւիթ մը ունի, որ անկէ շատ յառաջ շինուած է։ Հոն կան երկու խաչարձան հետեւեալ արձանագրութիւններով (միոյն վրայ) «Թվին ՈՂէ. Ես տէր Վրդանէս կանգնեցի զխաչս ի փրկութիւն հոգւոյ իմոյ» (միւսին վրայ) «Յիշատակ է սուրբ տաճարիս կաթուղիկէն Դողեցի Սարգսի որդի Սայուն եւ իւր կողակից Հերիքնազին Թվին ՌճԿԶ» (անդ, էջ 81—82)։

Սոյն գաւիթին մէջ քանի մը եպիսկոպոս եւ վարդապետ Թաղուած են։

Հաւանօրէն Գտչայ կը վերաբերէր անոր հիւսիսային կողմը գտնուած եկեղեցին ալ, որուն դրան առջեւ տապանաքարի մը վրայ կայ՝ «Այս է տապան տէր Սիմէօնի որդի Մեսրոբ վարդապետին Թվին ՌճՀԲ։ Լուսահոգի Մէլիք Եկանն ձեռնադրել տվաւ եպիսկոպոս, կարգեց Գտիչոյ վանքին առաջնորդ, որ եկի հաստատեցի սուրբ աԹոռս Թվին ՌճՂԶ...» (անդ, էջ 82)։

Գտչայ վանքի պատմուԹենէն շատ քիչ բան ծանօթ է։ Վերոյիշեալ արձանագրու-

թիւններն են որ անոր մասին տեղեկութիւններ կու տան: Ունեցած է բազմանդամ միաբանութիւն, նաեւ եպիսկոպոսներ: — 1668ին հոս՝ «Կոփչոյ» մէջ Մատթէոս քահանայի համար Աւետարան մը կը գրուի (Ալիշան, Սիսական, էջ 270): — Դադեան վարդապետին Ձեռագրաց հաւաքածոյին մէջ եղած է «Պատմութիւն Գոչոյ վանուց» (Թօփճեան, Ցուց. հայ. Ձեռ. Դադեան Վ.ի, Ա., էջ 102):

Գոչայ վանքը ստացած է շատ մը հոգեր[1], բայց անտեսուած է եւ «հետզհետէ քայքայում է». երկրաշարժի եւս ենթարկուած է (Բարախանեանց, Լէօ, Ուխտաւորի յիշատակարանը, էջ 23. հմմտ. նաեւ Արձագանք, 1886, էջ 578. Ջալալեան, Ճամբ. Բ., էջ 258 եւ Էփրիկեան, Բնաշխ. Բառարան, Ա., էջ 563—564):

## 2. ԴԻԶԱՓԱՅՏԻ ԿԱՄ ԿԱՏԱՐՈՑ ՎԱՆՔԸ

Դիզափայտի ամրոցէն քիչ մը հեռու: Անոր աւերակներուն վրայ այսօր կը նկատուի միայն մատուռ մը:

Յայսմաւուրքը Դիզափայտի անունը հետեւեալ դէպքին կը վերագրէ՝ «Իսկ որդիք զօրավարին (Թէվոփիլեայ) Մովսէս եւ Երա–նողիս (Աներողոգէս) եւ այլք զօրքն հաւատացեալ փախեան ի լեառն որ կոչի Դիզափայտ, որոց զհետ երթեալ անօրինացն կո–

[1] Ամբողջապէս իրմէ յափշտակուած:

տորեցին զնոսա . . . այրեցին հրով եւ անուանեցին զլեառն Դիզափայտ, վասն զի քան զփայտ դիզեցին զնոսա եւ այրեցին»: Անոնց աճիւններովը նուիրականացած այդ վայրին մէջ . . . «Յետ ժամանակաց միայնակեացք ոմանք, որք ճգնաւորք եկեալ բնակեցան անդ եւ արարին իւրեանց վանս զտեղին»:

Միեւնոյն տեղը նահատակուած են նաեւ Սանեսանի քրիստոնեայ որդիները՝ ուրիշ շատ մը հաւատացեալներու հետ (Ինճիճեան, Ստորագրութիւն, էջ 316. Չամչեան, Պատմ. Հայոց, Բ., էջ 127. Տաշեան, Մայր Ցուցակ, էջ 40 եւն. Օրբէլեան, Պատմ. Տան Սիս., էջ 202. Գլ. ԼԹ, Բարխուդարեան, Արցախ, էջ 85 եւ 422. Ճռաքաղ, 1860, էջ 220. Լէօ, Ուխտաւորի յիշատակարանը, էջ 53—86, կարեւոր՝ Մովսէս Կաղանկատուացի, Պատմ. Աղուանից, էջ 113—116 եւ 134. Էփրիկեան Հ. Ս., Բնաշխ. Բառարան, Ա., էջ 605):

Բարխուդարեան Դիզափայտը կ'անուանէ Կատարոյ վանք (Արցախ, էջ 422. Հմմտ. եւ էջ 85): Ծանօթ է համանուն վանք մը Սիւնիքի մէջ (Օրբէլեան, Պատմ. Տան Սիս., էջ 245. Հմմտ. Ալիշան, Սիսական, էջ 278), նաեւ ծանօթ է «Կատարոյ վանուց» տանուտէրը (Հմմտ. Կաղանկատուացի, Պատմ. Աղուանից, էջ 343):

Ձեռագրի մը յիշատակագրութեան մէջ կայ՝ «Յիշել ի աստուածամերց աղօթս ձեր հոգեւոր ծնողն իմ հանգուցեալ ի Տէր Երե–

միայ եպիսկոպոզ աջորդ սուրբ ուխտին Դիզափայտ կոչեցելոյն երկրի Դիզակոյ» (Աճառեան, Ցուց. հայ. Ձեռ. Թաւրիզի, էջ 18բ)։

## 3. ԴՈՂ ԱԽԱՆԻ ԿՈԽՄԱՆՈՑ-ԱՆԱՊԱՏԸ

Դող աւանի մօտ, եկեղեցույ մը քով՝ «Նշմարւում են խուցերի եւ կացարանների բակեր եւ բեկորներ, որոնց մասին պատմում են թէ՝ կուսանոց եղած է անապատ» (Արցախ, էջ 77)։ Եւ այդ ճիշդ է։ Վասն զի արծաթեայ խաչի մը վրայ արձանագրուած է՝ «Յիշատակ է մէլիք Եսայի որդի Սաֆարի բէկին, որ ետ Դողա կուսանաց անապատին. սա է Յակովբ հայրապետին եւ Թէոդորոսի մասունք» (Արցախ, էջ 74)։ Հաւանական է թէ Աւանի մելիքները դեռ ուրիշ նուիրատուութիւններ ըրած ըլլան այս կուսաստանին։

## 4. ԹԵՂԱՍԵՌԻ ԱՆԱՊԱՏԸ

Թեղասեռի կամ Թաղասեռի մօտ կայ եկեղեցի մը, որ անապատ կը կոչուի եւ այն դուցէ անոր համար, որ երբեմն անոր շրջակայքն անապատ մը կար (Արցախ, էջ 69)։ Աւետարան մը կը գրուի «ի յերկիրս Աղուանից ի գաւառիս Դիզակա(յ) ի գեաւղս որ կոչի Թեղասեր ի դուռն Ս. Սարգսիս... ձեռամբ Մելքիսեդ երիցու...» (Թօփճեան, Ցուց. հայ. Ձեռ. Դաղեան Վ.ի, Բ., էջ 46. հմմտ. Արցախ, էջ 143 եւ Եղիշէի վանքը)։

Ուրիշ Աւետարան մըն ալ կը գրուի 1635ին «ի գեաւղս որ կոչի Թեղասեռ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս եւ սուրբ կուսին Քրիստոսի Աստուծոյ մերոյ...» (Հանդէս Ամսօրեայ, 1925, էջ 476):

## 5. Ս. ԼՈՒՍԱՒՈՐՉԻ ԱՆԱՊԱՏԸ

Ցոր գիւղի հարաւային կողմի ձորի ձախ եզերքին բարձրութեան վրայ կայ փոքրիկ հարթակ մը եւ անոր վրայ շինուած է «վաղուց մի հին եւ անտաշ քարով եկեղեցի: Փոքր տաճարիս չուրջն հանգստարան է, բայց երեւում են խուցեր. թուի թէ փոքրիկ միաբանութիւն եղած է այս տեղ» (Արցախ, էջ 65):

## 6. ԾԱՂԿԱՎԱՆՔԸ

Ծակուռիի եկեղեցին կը կոչուի Ծաղկավանք, որ՝ «երեւի թէ վանք եղած է այս, յետոյ փոխած են եկեղեցու» (Արցախ, էջ 72—73. Էփրիկեան Հ. Ս., Բնաշխ. Բառարան, Բ., էջ 230):

## 7. ՀԻՆ ԱՌԱՔԵԼԻ ԱՆԱՊԱՏԸ

Հին Առաքել անուն աւերակ գիւղի մօտ կայ «աւերակ եկեղեցի... Անապատ անուն» (Արցախ, էջ 63). կը կասկածիմ թէ իսկական անապատ եղած ըլլայ:

## 8. ՅԱԿՈՎԿԱՅ ԵՒ ԻՐԱԽԱՓԱՌԱՅ ՎԱՆՔԸ

*Ղուրուչայի աջ կողմը: Միջակ մեծութեամբ վանք մը: Ունեցած է ամուր շրջապատ, մխարաններու սենեակ եւ ուխտաւորներու բնակարան: Շինուած է «չորս սիւների վերայ կոփածոյ քարով եւ կրացեխով»: Սիրուած ուխտատեղի, բայց աւերակոյտի վերածուած է արդէն (Արցախ, էջ 71):*

## 9. ՇԱԽԿԱԽԻ ՎԱՆՔԸ

*Հաթրութի վանքն է այս եւ մերձ Սպիտակ Խաչ վանքի (Հմմտ. անդ եւ Արցախ, էջ 68):*

*Այս վանքը հետեւեալ յիշատակարաններէ ծանօթ է: Արրահամ ՌՆԳ թուրւոյն կը դրէ յիշատակարան մը՝ «Երկիրս Դիզակոյ եւ ի գեաւղս Հաթրութի յանապատս որ կոչի Շախկախ եւ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս ի հայրապետութեան Տաւիթ կաթուղիկոսին եւ ի սուրբ անապատիս առաջնորդութեան Յոհաննէս եպիսկոպոսէս եւ իշխանութեան Խոտայպանդին գառն եւ գժուարին ժամանակիս» (Քէչիշեան, Յուց. հայ. Ձեռ. Զմմառի, Թ. 350): Ապա՝ «Աւետարան գրեալ ի թվ. ՌՃԻԲ. յերկիրն Դիզակու ի գիւղս Դաք ընդ հովանեաւ սուրբ եւ նշանաւոր տեղւոյ, որ կոչի Շախկախ եւ այլ մխարանիցս Յակոբ եպիսկոպոսին եւ տէր Մկրտչին, տէր Բարսղին գրող աշակերտ Սադաթին» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ.*

Հ. Գատըրճեանէն. — Դաք կամ Տադ գիւղը հմմտ. Արցախ, էջ 66): — Սիմէոն Կաթողիկոսը ՌՃԾ-ին Թաղլարցիներուն կը գրէ թէ Շախկախի եւ Սպիտակ խաչի վիճակ եղած են (Թօփճեան, Ցուց. հայ. Ձեռ. Դաղեան Վ., Բ., էջ 41):

## 10. ՍՊԻՏԱԿ-ԽԱՉ ՎԱՆՔԸ

«Հիմնուած է Վանք գիւղից ներքեւ մի տեսարանաւոր հարթակի վրայ, շինուած է անտաշ քարով եւ կրացեխով: Վանքս[2] ունի փոքրիկ կաթուղիկէ եւ գաւիթ» (Արցախ, էջ 66): Տաճարն ու գաւիթը միասին գրեթէ տասնուհինգ մեթր երկարութիւն եւ անոր կէսը լայնութիւն ունին: Առաջինին դրան հարաւային կամարի վրայ գրուած է՝ «Շինեցաւ ՌՃՁԳ, այն տարին էր Թահմազ-խան»: Զանգակատան վրայ արձանագրուած է՝ «Յիշատակ է զանգակատունս Սուրաղի որդոյ Ավանէս եպիսկոպոսին»:

Տաճարին ներսը խաչարձանի մը վրայ կայ՝ «Ես Միրուք կանգնեցի զխաչս հաւր իմոյ Խութլափի թվ. ՋԶԲ»: Իսկ անոր արեւմտեան դրան մօտ հանդստարանին մէջ կայ բեմ մը, որուն արեւմտահայեաց երեսին մէջ զետեղուած է գեղեցկաքանդակ խաչարձան մը

---

[2] Սիմէոն եւ Ներսէս կաթողիկոսները Դիզակի Սպիտակ Ս. Խաչի համար ունին քանի մը թուղթ (հմմտ. Թօփճեան, Ցուց. հայ. Ձեռ. Դաղեան վարդապետի, Բ., էջ 42. հմմտ. Շախկախի վանքը՝ վերը):

այս փորագրութեամբ՝ «Ես Աջամի որդի Իշխանայ կանգնեցի գխաչս ի փրկութիւն հոգոյ որդոյ իմոյ Աստուդարոյ, որք կարդէք, յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր, աղաչեմ, ի թվին ՉՂԷ»:

Բեմին առջեւը կլոր տապանաքարի մը վրայ կայ՝ «Այս է հանգիստ բարեպաշտին Աստուդարոյ, որ կէսաւրեայ ժամանակաւ ի Քրիստոս փոխեցաւ, ով կարդայ...»: Ասոր կից է՝ «Այս է հանգիստ բարեպաշտ Վալիջանայ, որ կէսաւրէ ժամանակաւ ի Քրիստոս փոխեցաւ, ով...»: Միւս կողմը՝ «Ես Ախիջան որդի Ջալալայ կանգնեցի խաչս ի փրկութիւն հոգոյ որդոյ իմոյ Վելիջանին... թվ. ՋԻԷ»: Իսկ տապանին մօտ՝ «Այս է հանգիստ Խոնարհեկուն, դուստր Ախիճանին, կողակից Կոստանդէյին եւ քոյր Վելիջանին... թվ. ՋԿԱ»:

Վանքին հիւսիսային կողմը խոշոր սենեակ մը շինուած է ուխտաւորներու համար: Անոր դրան ճակատակալ քարին վրայ կը կարդացուի՝ «Ես Մակրտիչս յիշատակ է թանապէս (մեծ սենեակ) Սուրապի որդի Ավանէս եպիսկոպոսի. շինեցաւ ՌՃՁԴ. թվին. այն տարին էր Թահմազ խան, Օսմանլուն երկրէս դուրս արաւ» (Արցախ, էջ 66—67):

Սոյն հիւրանոցին մօտ կան երկու վիմափոր սենեակ, գուցէ ճգնարան կամ նոյն իսկ ննջարան:

*Արձանագրութիւններէ եզրակացնելով Սոփիաակ Խաչի վանքը[3] բաւական հին է: Գուցէ եպիսկոպոսանիստ, քանի որ հոն քանի մը եպիսկոպոսի աճիւններն ամփոփուած են: Աղուանից Եսայի, Ներսէս եւ Յովհաննէս կաթողիկոսներէն կոնդակներ տուած է: Անոնք ուրիշ հնութիւններու հետ փախցուած են, (Համմտ. վերը, Արցախ, էջ* 66—68. *Ջալալեան, Ճամբ, Բ., էջ* 263):

*Ունեցած է բաւական շատ կալուած (Արարատ,* 1896, *էջ* 44):

---

[3] *Անոր բաւական մերձ է Ղուշչիլար, որ Բերդավանք անուն եկեղեցի մ՚ունի (Արցախ, էջ* 65):

## Բ.

## Վարանդայի վանքերը։

*Վարանդա, կոչուած նաեւ Հարանդ կամ Միւս Հարանդ եւ Ամարաս, գաւառը ինկած է Ղուրու չայի ձախ եւ Գարգար գետակի աջ ափերուն, Դիզափայտի եւ Քիրս լեռնաշղթայի գագաթնագծի ու դաշտարերանի մէջ։*

### 1. ԱՄԱՐԱՍԻ ՎԱՆՔԸ [1]

*«Հիմնուած է այն երկրալեզուի վերայ, որ Մուղան դաշտից կամ գաւառից մտած է Խազազի եւ Լուսաւորչի սարի մէջ եւ կազմած է գիւրալի հովիտ, որու մէջ հասում է Ամարաս վանքն» (Բարխուդարեան, Արցախ, էջ* 113)։ *Շրջափակուած է* 94 *մետր երկար,* 56·5 *մետր լայն. եւ* 5 *մետր բարձր պարսպի մէջ, որուն չորս անկիւնները կը բարձրանան մէկական բուրգեր։ Եկեղեցին* 23 *մետր երկարութիւն եւ* 12·50 *մետր լայնութիւն եւ* 6 *մետր բարձրութիւն ունի։ Զորս*

---

[1] *Ամարաս օտարագիրներէ կոչուած է՝ Ագ-օղլան, այս է՝ Սպիտակ տղայ (Ճռաքաղ,* 1859. *էջ* 335· *Արձագանք,* 1886. *էջ* 577)։ — *Համանուն վանք մը կայ Երուսաղէմ։ Զայն Ագուանները շինած են (Մ. Կաղանկատուացի, Պատմ., էջ* 325)։

քառակուսի անպատուանդան սիւներու վրայ կը բոլորուին կամարները, որոնց վրայ կը յենու ռոմանական կամարակապ ձեղունը: Արեւմտեան կողմի առաջին կամարներու միջեւ կը բացուի մէկ մեծ տրամագիծով կլոր անցք մը: Անոր վրայ շինուած է կաթուղիկէ մը, որ իբրեւ զանգակատուն կը գործածուի: Արեւմտեան պատին մէջ ռոմանական կամարով դուռ մը կայ: Օժտուած է տասը պատուհանով եւ երկու խորհրդարանով: Աւագ խորանին տակը կը գտնուի «Վիրապ» մը, այս է ստորերկրեայ մատուռ մը, որ շինուած է Ղազարի հանքի սրբատաշ քարերով: Անոր մէջ ամփոփուած են Ս. Գրիգորիսի մասունքները: Այս՝ ամէնէն հին շէնքն է: Վանքն ու եկեղեցին սաստիկ նորոգութիւն տեսած են, վերջին անգամ՝ 1858ին:

Տաճարին հիւսիսային դասին քով, պատին կից կայ գերեզմանաքար մը՝ այս ծանօթագրութեամբ՝ «Դամբարան սրբոյն Գրիգորիսի Աղուանից կաթուղիկոսի թոռին սրբոյն Գրիգորի Լուսաւորչի Պարթեւի: Ծնեալ յամի ՅԻԲ=322, Օծեալ ՅԽ=340. եւ նահատակեալ ՅԽԸ=348ի Սանեսան թագաւորէն Մազքթաց ի Դըրբէնդ, բերեալ յԱմարաս սուրբ Նշխարս ի ձեռն ձեռնասուն սարկաւագաց նորին Արցախունի: Արձանաքարս սրբոյն Գրիգորիսի աշխատութեամբ Միքայէլ տէր Իսրայէլեանց Շուշեցւոյ ի յիշատակ կենդանեաց եւ ննջեցելոց իւրոց ի

1889 ամի 1 նոյեմբերի»։ Աջի մը մէջ ամփոփուած են Ս. Գրիգորիսի մասունքները եւ անոր վրայ գրուած է՝ «Աջ սրբոյն Գրիգորիսի Աղուանից հայրապետին շինեցաւ յամին 1870 ի Շուշի քաղաքի անվարձ աշխատութեամբ Շուշեցի ոսկերիչ Միրզաջանայ Խոջաբազրեանց Գրիգորի Բաղամեանց եւ Առաքելի Յարութեանց»։

Պարիսպին կից են կաթողիկոսին, միաբաններու եւ ուխտաւորներու սենեակները թիւով բաւական շատ։ Ասոնցմէ զատ շինուեր են տնտեսութեան վերաբերեալ շէնքեր եւ պատշաճ տեղ մըն ալ գերեզմանոցի յատկացուած է (Արցախ, էջ 113—115. Ազգր. Հանդէս, 1897, Բ., էջ 37—39[2]. Արձագանք, 1886, էջ 577. Ջալալեան, Ճամբորդութիւն, Ա., էջ 196)։

Ամարասի եկեղեցւոյն հիմնարկութիւնը Ս. Գր. Լուսաւորչին կ՚ընծայուի (Մ. Կաղանկատուացի, Պատմ. Աղուանից, էջ 72), բայց զայն աւարտած ու օծած է Աղուանքի առաքեալը՝ Գրիգորիս եւ ուր ապա կը բերուին եւ դարերով յարգանքի առարկայ կ՚ըլլան իր մասունքները։ Ամարաս նախապէս եպիսկոպոսանիստ[3] վանք կ՚ըլլայ եւ ապա կաթողիկոսարան։ Մեր նպատակէն զգալի շեղում ըրած կ՚ըլլանք, եթէ ծանրանանք կա–

---

[2] Հմմտ. նոյնը՝ Լալայեանց Ե., Վարանդա, Թիֆլիս 1898, էջ 379)։

[3] Հմմտ. Գասնիկ եպ., Ամարասի (Վաչագան Գ.-ի ժամանակ) Մ. Կաղանկատուացի, գլ. Ե։

թողիկոսական աթոռին հոն հաստատուելու–անցքերուն եւ կաթողիկոսներու գործունէութեան մասին։ Անոր հիմնարկութեան տարին ու միւս պարագաները կը մնան տարակուսական, մանաւանդ թէ անծանօթ։

Անդրադառնալով Ս. Գրիգորիսի մատուռներուն՝ զանոնք Աղուանքի Վաչագան Գ. Թագաւորը կը գտնէ եւ վերստուգելէ յետոյ՝ անոնց ամփոփումին համար եկեղեցի մը կը շինէ։ Ապա դարեր վերջ անոր նշխարները նորէն յարգանքի յատուկ առարկայ կ՚ըլլան եւ կոփածոյ քարէ շինուած շիրիմի մը մէջ կը զետեղուին (հմմտ. վերը, եւ Արձագանք, 1886, էջ 577. Մասիս, 1858, Թ. 332. Ճռաքաղ, 1859, էջ 342—348, 1860, էջ 219—220. Արշալոյս Արարատեան, 1859, Թ. 573. հմմտ. եւ Մ. Կաղանկատուացի, Պատմ. Աղ., էջ 73—94)։ Բայտուն խանը Ամարասէն Ս. Գրիգորիսի գաւազանն ու գանազան ակերով զարդարուն խաչ մը կը գրաւէ, բայց Դեսպինա արքայադուստրը զանոնք ետ կը ստանայ[4] (Օրբէլեան Ստ., Պատմ. տանն Սիս., գլ. ԿԹ, էջ 344)։ Լենկթիմուրեան արշաւանքներու առեն Ամարաս ծանր հարուածներ կ՚ընդունի։ Դարեր յետոյ (ԺԹ.) Թուրքերը զայն գրաւելով իրենց աղօթա–

---

[4] Վրթանէս Փերթողի առեն կ՚ապրէր՝ «Տէր Մխիթար Ամարասու եպիսկոպոս» (Արարատ 1866, էջ 477)։ — Վերջին շրջաններու առաջնորդներէն է Յակոբ Վ. Նարատունկեան (Արարատ, 1886, էջ 40—41, ուր եւ յիշուած են Արցախի քանի մը վանքերու վանահայրերն եւս)։

տեղին կ՚ըննեն. եղած է նաեւ բերդատեղի ու մաքառատուն, մինչեւ որ Բաղտասար մետրապոլիտը կը յաջողի զայն օտարին ձեռքէն ազատելու (Ազգր. Հանդ. 1897, Բ., էջ 8. հմմտ. եւ Րաֆֆի, Խամսայի մելիքութիւնները, Գ. տպ., Վիեննա, էջ 329):

Ամարասի մէջ ու մերձ արտագրուած են քանի մը ձեռագիրներ: Մանուէլ 1428ին կը գրէ Աւետարան մը «ի վիճակս Ամարասայի ի վանքս Թթխույ» (Սմբատեան, Երնջակ, էջ 253), 1559ին Գրիգոր կ՚արտագրէ նոյն գիրքը (Մառ Ն., Ցուց. Հայ. Ձեռ. Սեւանայ թ. 4, էջ 4): 1664ին գրուած յիշատակարան մը կ՚աւանդէ այն շինարարական գործունէութիւնը, զոր Բարսեղ եւ Պետրոս կ՚ունենան Ամարասի մասին (Թօփճեան, Ցուց. Հայ. Ձեռ. Դաղեան Վ.ի, էջ 100, հմմտ. Հերհեր):

Ամարաս ունեցած է տատ վարելահող, այգի, ջրաղաց, նաեւ ամարանոցներ (հմմտ. Հերհեր եւ Ջոխտ Պուլածառի վանքերը), ինչպէս եւ նախիր ու արջառ (Արցախ, էջ 114. Ազգր. Հանդ. 1897, Բ., էջ 39. Թօփճեան, Ցուց. Հայ. Ձեռ. Դաղեան Վ., էջ 100, ուր եւ նորոգութիւն Ամարասի, Նոր Դար, 1903, թ. 78. Լէօ, Ուխտաւորի յիշատակարանը, 1885. Շուշի, յաւելուածը էջ 1—14. Արարատ, 1896, էջ 44. Արձագանք, 1886, էջ 577. Մխիթար վարդապետ, Հայերը Ռուսաստանում, Վաղարշապատ 1906, էջ 10—

12, ուր եւ Արցախի ուրիշ վանքերու հողերու մասին եւս. Էփրիկեան Հ. Ս., Բնաշխ. Բառարան, Ա., էջ 135—136):

Դիւթական տեսարաններով եւ նշխարներով հարուստ[5] Ամարաս Արցախեցիներու ամէնէն սիրուած ուխտատեղին էր, մանաւանդ Համբարձման, Խաչի եւ Վարդավառի տօներուն հոն կը խուժէին շատերը: Ստացած է շատ նպաստ (Բիւզանդիոն, 1903, թ. 2033. Նոր Դար, 1903, թ. 76. Ազգր. Հանդ., 1897, էջ 7—8. Արձագանք, 1886, էջ 574. Արարատ, 1872, էջ 26):

## 2. Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ԱՆԱՊԱՏԸ

Շուշիի մերձ կուսանաց անապատ մը կայ որուն Ս. Աստուածածնի ընծայուած եկեղեցին շինուած է 1816ին՝ «արդեամբ ձեռագործ աշխատանաց կոյս Հռիփսիմեայ, օժանդակութեամբ երից եղբարց իւրոց հարազատաց Իսրայէլի, Աստուածատրոյ եւ Պետրոսի Գրիգորեանք Բահադուրեանց...» (Արցախ, էջ 148):

## 3. ԱՒԵՏԱՐԱՆՈՑԻ ԿՈՒՍԱՆԱՑ ԱՆԱՊԱՏԸ

Աւետարանոց աւանի մօտ բարձրավանդակի մը վրայ հիմնուած է կուսանաց անա-

---

[5] Ամարասի մէջ — ըստ այլոց Գանձասարի մէջ — կար արիւնն Զաքարիայի եւ մասն Ս. Պանդալիոնի (Տաշեան, Մայր Ցուց., էջ 58. Արցախ, էջ 176): Ոմանք կրնան նախ Ամարաս եղած ըլլալ՝ եւ ապա Գանձասար փոխադրուած:

պատ մը, որ պարսպով շրջապատուած է։ Տաճարը քարաշէն է եւ ունի 11 մետր երկարութիւն եւ 9 մետր լայնութիւն։ Վէմքարի վրայ քանդակուած է՝ «Թվ. ՌԿԵ. ես Աթաս Հիմոզչի (?) կանգնեցի խաչս ի հայր իմ (հայրենի) վիճակին»։ Դրան ճակատակալ քարին վրայ կայ՝ «Եկեղեցիս Թվ. ՌԿԵ (շինեցաւ)»։ «Թվական ՌՃԻԵ Շահնազարին եւ վարդապետին Գրիգորի, յիշատակ է դուռս կոյս Խոսրովին եւ Ծնողացն»։

Տաճարին գաւիթը Մէլիք Շահնազարեաններու դամբանարանը եղած է։ Հոն ամփոփուած են Մանուէլ վարդապետը, Մէլիք-Յիւսէյին, Մէլիք Յովսէփ եւ այլ մէլիքներու տիկինները։

Տաճարը շրջապատող պարիսպներէններս եղած են կուսաններու համար յատկապէս շինուած սենեակները։ Այսօր անոնց մեծագոյն մասն աւերակի կոյտ եղած է (Արցախ, էջ 95—96. հմմտ. Ազգր. Հանդ., 1897, Բ., էջ 42—44. Րաֆֆի, Խամսայի մելիքութիւնները, էջ 38)։ Այն բնակարանները շատ պարզ էին (Արեւելք, 1894, Թ. 3110 եւ Նոր Դար, 1894, Թ. 111)։

Աւանդութեան մը[6] համեմատ այս Կուսաստանին հիմնադիրն է Վաչագան Գ. Բա—

---

[6] Ուրիշ աւանդութեան մը համաձայն Շահ Մահմադի արշաւանքներուն (1797) կուսանաց անապատի կոյսերը կը ցրուին եւ անոր Ս. Խաչի մասունքը կը գերուի, բայց կը վերադարձուի (Ազգր. Հանդ., 1897, էջ 42—43)։

դաւորը, մինչ յիշատակագրութեան մը համաձայն Գայիանէ եւ Հռիփսիմէ կոյսերը զայն Տէր Աւաքելի աջակցութեամբ բարձրացուցած են (Ազգր. Հանդ., 1897, Բ., էջ 42. Ջալալեան, Ճանապարհորդութիւն, Բ., էջ 246—247):

Նոյն անձերու մասին կարեւոր տեղեկութիւններ ունի նաեւ հետեւեալ արձանագրութիւնը՝ «... Արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականութեանս Հայոց ՌՃԹ (1660) թըւին. աւարտեցաւ սա ձեռամբ անարժան... Կատարինէս ի երկիրս Վարանդու (ի) կաթողիկոսութեան Աղուանից Տեառն Պետրոսի եւ եպիսկոպոսութիւն (sic) տէր Յովանիսի եւ թագաւորութիւն Շահապազին եւ իշխան մալիք երկրիս Մելիք Բաղին եւ խոստովանահայր սուրբ անապատի որ մերձ գօղաքաղաքիս Աւետարանոցիս պտէր Աւաքեայն եւ միարան քորք վանացս զկուսանուհին Գայանէն, որ եղեւ ծաղկող սուրբ Աւետարանիս եւ համշիրակ ընկերակից քոյրն իմ զՀռիփսիմէն, որ է մայր սուրբ անապատիս:

«Արդ hետ աւարտման սուրբ Աւետարանիս Ե. ամ եկաց սայ կազմելո եւ ապա կազմեցաւ թըւին ՌՃԳ (իմա՝ ՌՃԺԳ): Եւ դարձեալ աղաչեմ... յիշեսջիք... յաղօթս ձեր զզարիպս կրկին ղարիպացեալ հոգով եւ մոխաթաւաղ եւ հոգս հաւատար Կատարինէս եւ զմայրադուլթ եւ սննդամայր վարպետն իմ զՄարիամ կուսանուհի, զոր սնոյց զիս եւ

կարգացոյց բազում աշխատութեամբ եւ յետ իւրոյ աշխատութեանն եւ գիս ի ձեռն Աստուածատուր քահանային վասն չարականի եւ գիր ուսուցանելոյ, որ էր նա խոստովանահայր անապատին Շէնհէրու, զոր եւ ուսոյց գիս իբրեւ զմայր մանկան իւրոյ բազում աշխատանաւք, զոր Տէր Աստուածն ամենայնի ինքն հատուսցէ զվարձս աշխատանաց իւրոց հայրախնամ քաղցրիկ Տէրն մեր՝ իմ զտէր Աստուածատուր քահանայն, որ է նա ընիկ երկրէն Վանա եւ Մարխամ վարպետն էր երկրէն Նախջավանու ի գօղն որ կոչի Դարաշամբ» (Ոսկեան Հ. Հ., Մայր Ցուց. Վիենն. Մխիթ. Մատ. Թ. 931 (=873), էջ 471, անտիպ. հմմտ. Ակօս, 1949—1950, Թ. 4, էջ 100):

Վանքին չէնքը 1814ին վերանորոգուած է եւ հոն եռուն գործունէութիւն մը վերսկսած (անդ, Թ. 111): Անկէ յառաջ 1733ին հոն քաշուած ու ճգնած է Գայիանէ Վարանդացին (Րաֆֆի, Խամսայի մելիքութիւնները, էջ 47—48):

## 4. ԲԱՐԵԱՒ ԾԱՌԻ ԿԱՄ ՋՈԽՏ-ՊՈՒԸԽԱԾԱՌԻ ՎԱՆՔԸ

Վերին-Թաղավարդի հարաւային կողմը ձուաձեւ բլրակի մը վրայ բարձրացած է այս վանքը, որուն իսկական անունը չենք գիտեր — գուցէ Ս. Յովհաննէս կամ Ս. Պետրոս-Պօղոս — եւ այսպէս կը կոչենք իր գիւղին անունովը: Փոքրիկ վանք մըն է եւ ու-

նեցած է չրջապարիսպ։ Երբեմն Ամարասի ամարանոցն եղած է, իսկ այժմ ուխտատեղի։ Ունի քանի մը արձանագրութիւն։

Խաչքարի մը վրայ կայ՝ «Յիսուս Քրիստոս, Հայոց Թվ. ՈՀէ, Ես Ալի որդի Ջինովբին եկի ի Պարսից, չինեցի զուրբ եկեղեցիս Աստուծոյ, փրկութիւն հոգոյ իմոյ, որք երկրպագէք գիս յաղաւթս յիշեսջիք եւ Աստուած զձեզ յիշէ»։

Քարի մը վրայ՝ «Սուրբ Պաւղոս, յամս աստուածապատիւ եւ հոգեւոր Տեառն Յովհաննիսի Ամարասա եպիսկոպոսին եւ պետութեան Տեառն Գագիկա Աղուանից իշխանաց իշխանի ես Հայր Կիրակոս առաջնորդ սուրբ ուխտիս, եղբաւրորդի Կոկանա»։ Նոյնին միւս երեսին՝ «Սուրբ Պետրոս. կանգնեցի զխաչս ի փրկութիւն հոգո իմո եւ ծնողաց իմոց։ Արդ որք երկրպագէք սուրբ Նշանիս, գիս յաղաւթս յիշեցէք եւ Աստուած զձեզ յիշեսցէ. ՆԽԶ. էր»։ Ուրիշ քարի մը վրայ՝ «Յիսուս Քրիստոս Աստուած, Ողորմեա երէց»։ Տարբեր քարի մը վրայ՝ «Հոգեւոր հարք եւ եղբարք զՍողոմոն երայց (երէց) կանգնող խաչիս յաղաւթս յիշեսջէք, աղաչեմ, ամէն»։ — Խաչքարի մը վրայ՝ «Սուրբ Յովհաննէս, սուրբ Ովաննէս» (Արցախ, էջ 90—91. Ազգր. Հանդ., 1897, Բ., էջ 7—8. Լէօ, Ուխտաւորի յիշատակարանը, էջ 1—14. Էփրիկեան, Բնաշխ. Բառարան, Բ., էջ 11. հմմտ. եւ Ամարասի վանքը)։

## 5. ԲՈՂՐԽԱՆԻ ՎԱՆՔԸ

*Հիմնուած է համանուն սարին հարաւարեւելեան կողմը՝ փոքր ձորակի մը ձախ լանջին մէկ հարթակին վրայ: «Ըստ ամենայնի ունի եկեղեցու ձեւ՝ կառուցեալ անտաշ կաթնագոյն քարով մի կամարի վերայ: Ունի մի մեծ եւ միայն մի փոքր խորան, մի դուռն, երեք լուսամուտ, երկու խորհրդարան» (Արցախ, էջ 109): Շրջապատուած է քառակուսի որմերով: Միաբաններու սենեակները քանդուած եւ փլատուած, միայն առաջնորդի սենեակը դեռ անփլաս: Վանքին չուրջը կայ անտառ մը, որ ունի պատուական ջուր եւ մաքուր օդ (Արցախ, էջ 109· Ազգր· Հանդ·, 1897, Բ·, էջ 50—51· Էփրիկեան Հ· Ս·, Բնաշխ· Բառարան, Ա·, էջ 430):*

## 6· ԲՌԻ ԵՂՑԷ ԿԱՄ ՀԱՑԻ ԳԻՒՂԻ ՎԱՆՔԸ

*«Հացի գիւղից դէպի արեւելք սարալանջի մը վրայ կը գտնուին բազմաթիւ գերեզմաններ, իրարու մերձ երկու եկեղեցի, երկու մատուռ եւ երեք բեմ: Մատուռների եւ եկեղեցեաց մէջ նստած են յատկապէս վանահայրեր: Կարծում ենք որ Աղուանից թագաւորազների, իշխանազների մարմինները ամփոփուած լինին այս առանձնապէս պատրաստուած շինութեանց մէջ եւ աղօթաւոր վարդապետներ կարգուած պաշտօնապէս:*

Այսպէս էին Խոթայ, Խաթրոց, Գանձասարայ, Եղիշառաքելի, Հոռեկայ եւ այլն վանքերն եւս» (Արցախ, էջ 125. Ազգր. Հանդ., 1897, Բ., էջ 47)։

Առաջին եկեղեցին լերան գագաթը՝ տափարակի վրայ հանդչած է եւ չունի գմբէթ ու սիւն, ունի նեղ աւագ խորան մը եւ երկու պահարան, որոնց դռները գեղեցիկ նշխերով եւ խաչերով եզրափակուած են։ Սեղանին առջեւը հետեւեալ արձանագրութեամբ քար մը կայ՝ «Թվին ՁԺԹ ի տէրութեան... տր Ստեփաննոսի յե... սխսի (յեպիսկոպոսութեան Ներսիսի) Ես Մխիթար որդի... կանգնեցի»։ Այս եկեղեցւոյն մէջ կան բաւական թուով գերեզմաններ, որոնցմէ մէկուն վրայ կը կարդացուի՝ «Այս է տապան տէր Յօհաննիսին որդի տէր Կարապետին, Թվ. ՌՄԽԷ»։ Երկրորդ եկեղեցին անոր արեւմըտեան կողմն է, փոքր եւ ամրաշէն[7]։

Առաջին մատուռին դրան հիւսիսային սեմին վրայ կայ՝ «Զ. Շահէն վարդապետ եկեղեցւոյս յիշեցէք ի Տէր»։ Իսկ անոր դրան (արտաքուստ) վերեւը՝ «քահանայ եւ եղբայր իմ Վահրամ»։

Երկրորդ մատուռն ունի այս արձանագրութիւնը՝ «Զխաչենիկ վարդապետ սուրբ

[7] Անոր մերձ՝ ջարդուած քարի մը վրայ կայ՝ «Այս տապան Խմիչի որդուն Սարգիսին, էն ժամանակն որ Պապա Ուչաղին Թվ. ՌՃՀԴ, որ եկն, ես Թապուղի առաջք տուող իլի, այանին ճղոմը սպանեցէն, հերքերանցս Աթային, Հերփքիս» (Արցախ, էջ 127)։

*եկեղեցոյս յաղաւթս յիշեցէք ի Քրիստոս»* (*Արցախ*, *էջ* 125—126· *Ազգր. Հանդ.*, 1897, *Բ.*, *էջ* 47—48)։

*Բեմերն ալ արձանագրութեամբ օժտուած են։ Ա. բեմն ունի. «ՆԱ. Թիւս ... ակէր Վարթ ... ի տարին Ի. ժամ ... աղատաե ... անէկաքս ... մեր սու ... աղաչեմ»։ Դարձեալ՝ «Ես Խաչենի ... կանգնեցի վարդապետս սուրբ նշանաւս ... որդի Վարհամա. որք կարդէք յաղաւթս յիշեցէք ի Քրիստոս»։ Բ. բեմն ունի՝ «... խւրս ... մա ... Մխիթարս ո՞վ այրեցայ ... բենա ... աավաքչին գլխն պայտի ... ակէր ... Մնպատա ոչ յիսա գգերլելոց ... ի Թարաս է մին պետ ... ի մինան պատ ... սուրբ աղաւթս ձեր ...»։ Գ. բեմի վրայ կայ՝ «Թվ. Ձժ. Թ ... ի կաթուղիկոսութեան տէր Ըստեփաննոսի եւ յեպիսկոպոսութեան հայր տէր Ներսէսի Աստուծով մեր եղբարցս ... ուց այդ եղայ վարդս ... այար կաթ ... բամիկս ... յորդեացս ... եւ ծնողաց մերոց ... ազգականաց ... բար ...»* (*Արցախ*, *էջ* 125—126)։

*Այս արձանագրութիւնները կը պատմեն՝ թէ բաւական եռուն կեանք մը եղած է այս կողմերը։*

7. ԲՐԴԱՀՈՒՆՋԻ ՎԱՆՔԸ

*Վարանդի «Բրդահոնջի եղցի»ին մօտ «կայ քարուկիր հին շինութիւն մը, որ նման*

է սենեակների։ Մեզ թւում է թէ վանք եղած է այս, քանզի թէ եկեղեցի եղած լինէր անշուշտ կ՚ունենար գիւղատեղու աւերակ եւ հանգստարան, բայց չունի ոչ այս եւ ոչ այն» (Բարխուդարեան, Արցախ, էջ 90)։

## 8· ԵՂԻՇԱ ԿՈԽՍԻ ԱՆԱՊԱՏԸ

Կանգնուած է Շուշիի արեւելքը, Լուսաւորչի սարի եւ Սօս, Թերթ ու Ղուզի–Ճարտար գիւղերու միջեւ բարձրացած լերան մը վրայ։ Շինուած է անտաշ որձաքարով, միայն թէ կամարներն ու բոլոր անկիւնաքարերը սրբատաշ քարերով (Արցախ, էջ 116)։ «Երկու հաստարակ սիւնի վրայ բոլորում են ռոմանական կամարներ եւ կամարակապ ձեղուն, որի մէջտեղից բարձրանում է մի փոքրիկ կաթուղիկէ, որ ծառայելիս է եղեր իբրեւ զանգակատուն» (Ազգր. Հանդ., 1897, Բ., էջ 46. Էփրիկեան Հ. Ս., Բնաշխ. Բառարան, Ա., էջ 676)։

Մենաստանը 16 մետր երկարութիւն եւ գրեթէ 10 մետր լայնութիւն ունի։ Անոր աւագ խորանին տակ ամփոփուած են Եղիշէ կուսի նշխարները։

Այս տեղ կան հետեւեալ արձանագրութիւնները՝

«Յիշատակ է Համաստուտանց Միրզախանի որդի Մանուէլ վարդապետիս այս խաչկալս, եղբարքն իմ Պապան եւ Վանլալան, քարար (քորք) իմ Գուլասմար, Ինթաղիհ,

ծնողքն իմ Մումխանոիմ, կողակից իմ Նազլու, որդի իմ Հախնազար, Շահպատ, Սիրուն, Վռամին, Մազրվանին եւ դստերն իմ Բաջուն, Դօստաշին, Թվ. ՌՃԴ» (1655):

«Նազար կողակից ուր (խւր) Նազլու Թվ. ՌՃԴ»:

Հիւսիսային խորանին ճակատակալ քարի վրայ՝ «Ես Աղէս կանգնեցի զխաչս փրկութիւն ինձ եւ կենակցին իմոյ, որդւոյ եւ դստերաց իմոց»:

Դրան ճակատակալ քարին վրայ՝ «Կարողութեամբ ամենազօրին Աստուծոյ ես նուաստ տէր Յոհան անձամբ տկար արեդայս եւ որդէգիր տէր Յոհանս շինեցաք սոյն զեկեղեցիս ըստ անուան Սրբուհոյ Կուսին Եղիշէի ի կաթուղիկոսութեան տեառն Երեմիայի եւ տանս Աղուանից, որ ի մայր աթոռոյն Գանձասարայ, վասն որոյ յիշել աղաչեմք հանդերձ ծնողովք մերովք ՌՃԻԴ»:

Լուսամուտին գլխուն՝ «Տէր Աստուած Յիսուս Քրիստոս, ես անարժան ուստայ Կարբեցիս շինեցի այս եկեղեցիս ի ձեռամբ իմով, ով կարդա մէկ բերան ողորմի ասէ. խաչս յիշատակ է Գաբրիէլիս եւ ծնողաց իմոց եւ դստերաց եւ որդոց իմոց» (Արցախ, էջ 115—117. Ազգր. Հանդ., 1897- Բ., էջ 46—47, երկուքին ընթերցուածին մէջ բաւական տարբերութիւն կայ:

Եթէ խորհինք թէ վերջընթեր արձանագրութիւնը ոչ թէ վանքին վերաշինութիւնը,

այլ հինագրութիւնն ու կառուցումը կ՚ակնարկէ, այն ատեն պէտք եզրակացնենք՝ թէ մաս մը այն արձանագրութիւններէն ուրիշ տեղէ հոս բերուած է, վասն զի Երեմիա Բ. 1175է յետոյ կաթողիկոս եղած է։

## 9. ԿԱԽԱՆԻ ՎԱՆՔԸ

Հին Դրախտիկի հիւսիսային կողմը՝ բարձր լերան մը գագաթին վրայ՝ կայ Կախան անուն ուխտատեղի մը, որ հաւանականաբար կանխաւ վանք եղած ըլլայ (Արցախ, էջ 88—89)։

## 10. ԿԱՐՄԻՐ ԵԿԵՂԵՑԻ ՎԱՆՔԸ

Հիրհեր գիւղի արեւելեան կողմը, Ծովատեղ գիւղի մերձ բլրակի մը վրայ կը գտնուի Մէլիք Փաշաեանցներու գամբանարանը, որ ունեցած է միաբաններու սենեակներ եւ վանք եւս եղած։

Գամբանարանը ստորերկրեայ է եւ բաղկացած չորս մասուններէ, որոնց մեծագոյնը կարելի է եկեղեցի համարել։ Առաջին մասրան ճակատակալ քարին վրայ արձանագրուած է՝ «Թվ. ՌՀ. Դաւիթ եպիսկոպոս․ յիշատակ է եկեղեցի վանքս, որ լինի սա գամբարան եւ չիրիմ մերոց նախնեաց»։ Անոր խորանին հարաւային կողմը խաչի մը վրայ կը կարդացուի՝ «Թվ. ՌԼԵ. ի հայրապետութեան Դաւիթ առաջնորդի Մէլիք Փաշի,

Պետրոս եպիսկոպոս»: Վէմ քարի վրայ կայ՝ «Դաւիթ եպիսկոպոս»: Բեմին խաչին վրայ՝ «Դաւիթ արեղա կանգնեցի զխաչս Առան վարդապետի Տարօնեա... եւ զիս յիշա (յիշեա)»:

Խորանին հիւսիսային խաչքարին վրայ կը գտնուի՝ «Թվ. ՌԻԵ. ի հայրապետութեան տէր Յովհաննիսի, առաջնորդութեան Մէլիք փաշին յանուն Աստուծոյ եւ Սահակ եպիսկոպոս կանգնեցի զխաչս ի փրկութիւն եղբաւր մերոյ Ղազարին, աղաւթս յիշեցէք»:

Մեծ խաչի մը կէս երեսին վրայ կը կարդացուի՝ «Այս է Սահակ եպիսկոպոսն, որ փոխեցաւ», միւս կողմին վրայ՝ «Անուամբն Աստուծոյ եւ Պետրոս եպիսկոպոս, Դաւիթ խան այանս կանգնեցինք զխաչս ի փրկութիւն Սահակ եպիսկոպոսին աղաւթեցէք»: Իսկ խաչարձանի մը վրայ՝ «Իշխանութեան Թահմազին եւ առաջնորդութեան ուխտիս Սահակայ եպիսկոպոսի»: Կան դեռ ուրիշ արձանագրութիւններ (Արցախ, էջ 106—108. Ազգր. Հանդ., 1897, Բ., էջ 49—50): Ինչպէս այս ամէնէն կը տեսնուի Կարմիր եկեղեցիի վանքը աննշան վանք չէր:

### 11. ԿՈԽՍԱՆԱՑ ԱՆԱՊԱՏԸ

Շուշիի թեմին մէջ. նորագոյն հիմնարկութիւն: Կոյս Հռիփսիմէն իր արդիւնաշատ գործունէութեամբը անապատին հռչակը տարածած է (Արցախ, էջ 148—149 եւ Ազգր.

Հանդ., 1897, Բ., էջ 27)։ Նոյն է Ս. Աստուածածնի հետ. համմտ. վերը։

12. ՀԻՐՀԵՐԻ ՎԱՆՔԸ ԿԱՄ ՀԵՐՀԷՐԻ ՎԱՆՔԸ

*Ամարասէն դէպի հարաւ, համանուն լեռնագօտիին հիւսիսային լանջին վրայ։ Հիրհեր գիւղի մէջ։ Եկեղեցին Ս. Գրիգորիսի նուիրուած է։ Հայակապ շէնք է։ Երկարութիւնն է՝* 19 *մետր, լայնութիւնը՝* 14, *իսկ բարձրութիւնը՝ գրեթէ* 8 *մետր։ «Չորս սիւների վրայ բոլորում են ռոմանական կամարներ եւ ռոմանական ձեղուն։ Եկեղեցու ժողովրդեան կանգնած տեղից բարձրանում է մի փոքրիկ գմբեթ»* (*Ազգր. Հանդ.*, 1897, *Բ.*, *էջ* 39)։

*Սեղանին ժողովրդահայեաց երեսին վրայ արձանագրուած է՝ «Կամաւն Աստուծոյ ես Պետրոս կաթուղիկոս Աղուանից սուրբ աթոռոյ Գանձասարայ արքեպիսկոպոսութեան բոլոր նահանգին Վարանդու եւ Քոչիզու, քանզի փենեկտեալ եւ պատառեալ էին գվխձակ սորին արարեալ ըստ իւրաքանչիւր կամաց, իսկ մեք գցանկ հայրենի նորոգեալ ժողովեցաք, նորոգեցաք զսիրելի աշակերտս մեր զտէր Բարսեղ արհի եպիսկոպոսն, որ եւ հրամայեցաք սմա շինել զեկեղեցի իմ հովարան Ամարասայ, զոր եւ շինեալ կատարեաց ըստ մերում հրամանի յաւուր տաւնի այլակերպութեանն Քրիստոսի եւ աւրհնեցաք զսուրբ տաճարս անուանելով զսա սուրբ Գրիգորիս՝*

բերելով ի նշխարաց սրբոյն Գրիգորիսի ամփոփեցաք երկրիս Վարանդու եւ Քոչիգու, զի եղիցի սա երկու աթոռս մի: Ով ոք զայս վիճակս բաժանել եւ զոք նստուցանել այլ տեղի, եթէ կաթողիկոս իցէ կամ եպիսկոպոս Տէր զայնպիսին նզովեալ եղիցի ՅԺԸ. հայրապետացն, ընդ խաչահանուացն դասեսցի, Յուդայի մասնակից եղիցի: Այս կտակ եւ արձանագիր յաւիտեան մնայ հաստատ» (Արցախ, էջ 104):

Հարաւային փոքր խորանի հիւսիսային սեմին վրայ՝

«Մեք Հիրհերայ ճամխաթս տանուտէր Ղասումս, մեծ եւ փոքր ճանապարհի գլխի տափին ի սկզբանէ վախմ էր սուրբ Աստուածածնին, մեք եւս վախմ արարաք սուրբ Գրիգորիսիս, ով քակէ, նզովեալ եղիցի յԱստուծոյ»:

Հիւսիսային փոքր խորանի հարաւային սեմին վրայ՝

«Աստուած ողորմի տնտես Մարիամին, որ է. տարի եկեղեցուս հացն եւ ճաշն արաւ»:

Աւագ խորանի հիւսիսային կամարակապ սիւնի վրայ՝

«Կամաւն Աստուծոյ եկի Սս... թիւն Հայոց ՌՃԵ.ին հանդերձ Յս... Ալէքսան, Եղիայ եւ Մարտիրոս եպիսկոպոսօքս, որ առ Աստուած փոխեցան, որ թիւն էր ՌՃԺԶ ի Ա. Յուլ. հիմնարկեցաւ սուրբ տաճարիս...

արնա սուրբ Գրիգորիս ձեռնտուութեամբ... ի թիւ... աշխատանս արարի... Մահդասի Գէսուն... ցէ ըստ աշխար... անց... յիշեցէք... ցս ոս...»:

Արեւմտեան դրան ճակատակալ քարին վրայ՝

«Ես Պետրոս կաթուղիկոս աշակերտ Ղուկաս վարդապետին եսու շինել կաթուղիկէս յիշատակ ինձ եւ աշակերտին իմոյ Բարսեղ եպիսկոպոսին, յիշեցէք ի Քրիստոս»:

«Աստուած աւրհնէ Քոչիզու ժողովուրդն այն աւրհնութեամբն, որ ոչ անցանէ, ձեռնտու եղեն կրին եւ քարին»:

«Զաւրութեամբն Աստուծոյ շինեցաւ սուրբ եկեղեցիս ի դառն եւ ի նեղ ժամանակիս, վասն ծովացեալ մեղաց մերոց, եկն մարախ եկեր զերկիրս Աղուանից եւ աւերեաց բազում տեղիս ի թագաւորութեան Շահ Սուլէմանին, պարոնութեան Միրզա Ղուլի բէկին եւ իշխանութեան երկրիս Վարանդու Մէլիք Բաղու որդի Մէլիք Շահնազարին եւ օժանդակութեան (թեամբ) Ովանիսին եւ քահանայից եւ տանուտերաց, մեծամեծաց եւ փոքունց ամէն, թվին ՌՃԻԲ»։

Հարաւային դրան ճակատակալ քարին վրայ՝

«Շնորհօքն Քրիստոսի ես Բարսեղ եպիսկոպոս աշակերտ Պետրոս կաթուղիկոսին եւ ծնողսն իմ Աղայն եւ Գիւլաղայն ի զաւակէն

Վարանդու ի գեղջէն Գիշուն, նորոգեալ պայծառացուցի զսուրբ աթոռս Ամարասայ, պարսպօք շրջապատեցաք հանդերձ յոգնաթիւ սենեկօք, զեկեղեցին շքեղացուցաք զարդուք, տուաք շինել զեկեղեցին անուամբ սրբոյն Գրիգորիսի Հովարան սուրբ Աթոռոյն Ամարասայ, որ եւ մասն բերեալ ի նմանէ ամփոփեցաք աստ, խկ հիմնարկեցաւ ՌՃԺԶ թվին. կատարեցաւ ՌՃԻԵ.ին» (Արցախ, էջ 104—106. Ազգր. Հանդ., 1897, էջ 41—43. Ջալալեան, Ճան., Բ., էջ 330—332)։

Վերոյիշեալ արձանագրութիւններէն ակներեւ է որ Բարսեղ եպիսկոպոսը Պետրոս կաթողիկոսի հրահանգովը ու օժանդակութեամբը Հիրհերի Ս. Գրիգորիս եկեղեցին շինած է եւ զայն բազմաթիւ սենեակներով օժտած[8]։ Այդ վայրը պիտի ըլլար Ամարասի կաթողիկոսներու հովարանը — ամարանոցը — եւ շատ բնական է որ անոնց իրաւասութեան ենթակայ։

Հետեւեալ յիշատակագրութիւնն արձանագրութիւններու բանձները կը հաստատէ՝ «Փառք... եղեւ կատարումն... ի ՌՃԺԳ (1664)... ի հայրապետութեան աշխարհիս Աղուանից Տեառն Պետրոսի[9]... կաթողիկոսի

[8] Այսօր անոնց հիմն անգամ անհետացած (Ջալալեան, Ճամբ., Բ., էջ 317—319)։

[9] «Ի կաթողիկոսութեան Հայոցս Աղուանից Տեառն տէր Պետրոսի» 1669ին կը գրուի Աւետարան մը, որուն յիշատակարանին մէջ կը յիշուի տէր Անտոն վերադիտող «սուրբ աթոռոյն կաթուղիկոսի վանիցն» (Արցախ, էջ 95)։

վերադիտողի մեծի աթոռոյն Գանձասարայ, զի այս խոհեմարան Հայրապետս աշակերտ էր սրբափայլ եւ ուղփաճեմ բարունապետին Ղուկասու, վասն զի այս երիցս երանեալ կաթողիկոս լուսաւորեաց... բոլոր տունս Աղուանից, զոր ի բազում ամանակաց կայր խախտեալ եւ խանգարեալ ի կարգաց եւ ի կրօնից, վանօրայք եւ յամենայն եկեղեցիք: Յորոց մի էր եւ մեծ աթոռս Ամարաս, զի յամանակաց յոլովից կայր աւեր եւ անբնակ ի մարդկանէ, զի արք ոմանք խենէշք եւ անխոհեմք փեռեկտեալ եւ խրամատեալ էին զթեմ եւ զվիճակ սորին, եւ կաթողիկոս Պետրոս եկեալ ժողովեաց զվիճակ երկրիս Հարանդ կոչեցեալ, զոր այժմ ասի Վարանդա եւ կացոյց զառաջնորդ զաշակերտն իւր զպարոն Տէր Բարսեղն, որ է ստացող տառիս եւ սա նորոգեաց զԱմարաս պարսպօք եւ բազմածախս սենեկօք եւ տամբք: Տինա կայր հովարան ի հնոյ մեծի աթոռոյս հուպ ի գեղՋն Հերհեր, որ կոչիւր Ս. Աստուածածնի վանք, նա եւս էր անբնակացեալ, այլ եւ անդ գնացեալ մեծ Հայրապետս հիմնարկէ զեկեղեցի եւ յանձնէ աշակերտին իւրոյ զվերոյգրեալ Բարսեղ պարոն տերին, զի շինեսցէ զոր եւ կատարեաց կամարակապ ձեւով եւ գեղեցկանկար դրամբ... որ վերաձայնի Ս. Գրիգորիս, որ եւ անդ զարդարեաց պարսպօք եւ խցերօք: Դարձեալ ետ գրել յոլով գրեանս, յորոց մինն է եւ զայս պատմագիրք... եւ ետ

*վախմ... սուրբ Ամարասա եւ Նորաշէն Ս. Գրիգորիսի վանուցն...։*

*«Յիշեցէք ի սուրբ աղօթս ձեր զաստաշնորհ սուրբ ուխտեացս կորուսմիտ եւ հանձարապատում զտէր Բարսեղ արհիեպիսկոպոսն, որ է յերկրէս Հարանդու ի գեղջէն Կիչի կոչեցեալ։ Ընդ սմին եւ միաբանք տեղոյս զՄարտիրոս, զԱլեքսան, եւ զՇղիա պարոն տեարքն, այլ եւ որք կանն ի պաշտօն ուխտեացս զՈվանէս պարոնտէրս զտէր Գրիգորս, զտէր Մկրտիչս եւ զտէր Ոսկանս. դ. յիշեցէք... զՄարտիրոս պարոն տէրն, որ մականուամբ Ծեկ կոչիւր... ընդ որոց եւ զխս զՍիմոն...»* (*Թօփճեան, Ցուց. Հայ. Ձեռ. Դաղեան Վ. ի, Ա., էջ* 100—101, *հմմտ. Արարատ*, 1895, *էջ* 389—390)։

*Յիշատակագրութենէս եւ այն կ՚իմանանք՝ թէ Հերհերի մէջ արդէն կանխաւ վանք մը կար։*

*Հերհերի ննջեցեալներէն ծանօթ են հետեւեալները՝*

*«Այս է տապան հայրապետի սրբազան մեծ վեհապետին, Տեառն Իսրայէլ դխտապետի, տանս Աղուանից հովուապետի, Աջոյդ սրբոյն զՇղիչէի, Աթոռակալ Գրիգորիսի, ժառանգ մեծի Սիմէօնի եւ թոռն պետին Ներսիսի, Զի էր որդի մեծասեփ, Իշխանազեայ այն Ապրէսի, ՌՄԾէ Հայոց թուի, Յուլիս երեքն վախճանի, Յիշման տացէ սա արժանի, Ով որ կարդալ հանդիպեսցի»*։

*Խաչի մը վրայ կայ՝ «Այս է Սահակ եպիսկոպոսն, որ փոխեցաւ ի Քրիստոս թվին ՈԼ»: «Ես Պետրոս եպիսկոպոս, Դաւիթ եպիսկոպոս, Սահակ եպիսկոպոս» (Ազգր. Հանդ., 1897, Բ., էջ 41. Ջալալեան, Ճան., Բ., էջ 332):*

13. ՂԵՒՈՆԴԵԱՆՑ ԱՆԱՊԱՏԸ ԿԱՄ ՂՈՆԴԻԿ ՎԱՆՔԸ

*Հիմնուած է բարձր սարի մը գագաթին վրայ, որ ձուաձեւ արձանացած է Աւետարանոց գիւղի եւ Սարգսաշէնի կենդրոնները: Անտաշ քարերով եւ առանց գմբեթի մատուռ մըն է, որուն արեւմտեան եւ հարաւային կողմերը շինուած են քանի մը սենեակներ ուխտաւորներու եւ միաբաններու — աւելի ճիշդը՝ ճգնողներու — համար: Ունի գաւիթ մը, որուն դրան սեմին վրայ գրուած է՝ «ՌՄԻԷին յիշատակ է գաւիթս Զաքարիա, Յովսէփ եւ Մելքոն վարդապետացն»: Հարաւային կողմը (վանքին) է՝ գերեզմանոցը ուր ամփոփուած են քանի մը վարդապետներու մարմինները: Շիրիմնաքարի մը վրայ կայ՝ «Աստանօր հանգչի մարմին Յակոբայ սուրբ վարդապետի որդւոյ Թոմասայ Աւան Լալաեան յազգէն Իւզբաշեանց յԱւետարանոց գեղջէն Վանանդայ սրբակրօն ճգնաւորական արար իւր կենաց զբարւոք վախճան 33 ամաց, 1845 Նոյեմբ. 25»:*

*Ղեւոնդեանց անապատի մէջ յարգուած են Ս. Թադէոս առաքեալի, Յովհաննէս*

Մկրտիչի մասունքները եւ երկու խաչ։ Ասոնք ունին փորագրութիւններ — վերջին ժամանակէ։ Մատուռը նուիրուած է Ղեւոնդ վկայի, որ իր Աննա քրոջ հետ նահատակուած է։

Այնպէս կը թուի թէ Ղեւոնդեանց անապատը բաւական սիրուած ու բնակուած ուխտավայր եղած ըլլայ։ Ստացած է վարելահող, անտառ ու պարտէզ (Արցախ, էջ 92—33· Ազգր· Հանդ·, 1897, Բ·, էջ 45· Արձագանք, 1886, էջ 578· Արարատ, 1816, էջ 44· Նոր Դար, 1899, Թ· 89)։

## 14· ՄԱՄԱՍԻ ՎԱՆՔԸ

Մաւաս չէնի կամ գիւղի մօտ, իսկական անունն՝ անծանօթ։ «Վանքս որ կառուցեալ է երկու սիւների վրայ, ունի եկեղեցու ձեւ։ Խորանի տակ կայ չորս գերեզմանաձեւ չիրիմ, որ նորոգուած է երբեմն երբեմն տաճարիս հետ միասին։ Մեծ ուխտատեղի է վանքս եւ չիրիմներս։ Վանքիս մօտ եղած են խցեր միաբանից համար, որք աւերակ են այժմ բոլորովին» (Արցախ, էջ 103· հմմտ· Ազգր· Հանդ·, 1897, Բ·, էջ 51)։

## 15· ՄԵԾ ՆԱՀԱՏԱԿԻ ՎԱՆՔԸ

Սարի մը գագաթին վրայ «որ սահմանն է Աչան, Նորշէն եւ Ղզչաղա գիւղերի» կը գտնուի քարուկիրով շինուած մատուռ մը։ «Երեւի թէ փոքր միաբանութիւն եղած է այս

*տեղ, մինչեւ ցայսօր վարդապետի տափ են անուանում արօտավայրը, որ այս մատուռին ստորոտը կը գտնուի: Իսկ անոր շրջակայքը կան սենեակներ»* (*Արցախ*, *էջ* 124):

16. ՇԵԽԵՐԻ ՎԱՆՔԸ

*Շեխեր տանող ճամբուն գլխուն բարձր սարահարթին վրայ կայ եկեղեցի մը, որուն արեւմտեան կողմը՝ քարընկէց հեռաւորութեամբ՝ կը գտնուի քարուկիր շինութիւն մը, որ սենեակներու կը նմանի: Կը թուի թէ վանքի սենեակներ ըլլան* (*Արցախ*, *էջ* 90):

17. ՇՈՇԿԱՑ ՎԱՆՔԸ

*Խաչմաչ եւ Մամնայ գիւղերու միջեւ: Հին վանք: Ստէպ նորոգութիւն տեսած: Տաճարը՝* 9 *մետր երկայն եւ* 6 *մետր լայն: Ունեցած է երեք լուսամուտ, դուռ մը եւ խորան մը* (*Արցախ*, *էջ* 100. *հմմտ*. *Ազգր*. *Հանդ*., 1897, *Բ*., *էջ* 51):

18. ՋՈԽՏԱԿ ԵՂՑԻ

*Վերին–Թաղավարդի մօտերը «Միմեանց կից շինուած են երկու եկեղեցիներ, որք նոյնպէս կիսաւեր են: Հազիւ թէ քարընկէց հեռի են երկու աւերակ եկեղեցիներս վանքի աւերակին: Մենք կարծում ենք՝ թէ այս երկու կիսաւեր շինութիւններն եւս վանք եղած լինին, քանզի ոչ մօտ գիւղատեղի կայ եւ ոչ հանգստարան»* (*Արցախ*, *էջ* 91):

Գ.

## Մեծիրանքի կամ Խաչենքի վանքերը :

*Մեծիրանքի (Մեծարանքի) կամ Խաչենոյ գաւառը Գարգար գետակին ձախ եւ Թարթառ գետին աջ ափերուն, Քիրս լեռնաշղթայի մէկ մասին վրայ կը գտնուի :*

### 1. ԱՄԵՆԱՓՐԿԻՉ ՎԱՆՔԸ

*Շինուած է Կոճողոտ գիւղի մօտ եւ Թարթառ գետի մերձ : Եկեղեցին «Ունի բոլորակաձեւ եւ բարձր շինութիւն եւ կաթուղիկէ : Քանդուած են այժմ խորանն եւ կաթուղիկէի սալկախը . . . : Ունեցած է միաբանից սենեակներ, որք կործանուած են այժմ : Ամայի է վանքս» (Արցախ, էջ 190) :*

*Յովհաննէս կրօնաւորը ՌԺԸ. թուին Աւետարան մը կը գրէ «Յերկիրս Խաչեան ի վանս Ամենափրկիչ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, ի հայրապետութեան տէր Գրիգորիսի եւ ի թագաւորութեան Շահ-Թահմազին» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Հ. Պատուրեանէն, հմմտ. Թօփճեան, Ցուց. հայ. Ձեռ. Դաղեան Վ.ի, Բ., էջ 44 ուր կայ՝ «Ի թվ. Հայոց ՌԻ, ի դուռն սուրբ*

*աթոռիս Ամենափրկչի եւ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին ի յերկիրս Խաչեան ի հայրապետութեան տեառն Գրիգորիսին որդի Մէհրապ պէկին, իշխանութեան չահ Թահ-մասխս»)* :

## 2· ԱՌԱՋԱՁՈՐԻ ԱՆԱՊԱՏԸ

*Վաճառ գիւղաքաղաքի եւ Առաջաձոր գիւղի մերձ կայ անապատ մը՝ օժտուած գոյգ եկեղեցիներով, որոնց արձանագրութիւննե-րու համաձայն սոյն եկեղեցիները հին շինու-թիւններ են* : *Այս արձանագրութիւններէն մէկը հետեւեալ կարեւոր տեղեկութիւնն ունի· «Յորժամ նկարեցան հզաւր հանքս թւին ՈՂԸ· էր, ես տէր Խաչի Նոյջալա, գրե-ցան, նկարեցան, կատարեցաք, առաք· · · տէր Եղիա շինե(ա)ց զսուրբ անապատս ի սմա յեծէ, ի սմայ թշնամին կործանեցէ» (Բար-խուդարեան, Արցախ, էջ 188—189· Էփրի-կեան Հ · Ս ·, Բնաշխ · Բառարան, Ա ·, էջ 244)* :

## 3· ԳԱՆՁԱՍԱՐԻ ՎԱՆՔԸ ԿԱՄ ԳԼԽՈՅ ՎԱՆՔԸ

*Գանձասար անուն*[1] *գիւղ մը, լեռ մը եւ գետ մը կայ Խաչէնքի մէջ* : *Անոնց մօտ բար-ձրացած է սարահարթի մը վրայ Աղուանքի կաթողիկոսանիստ վանքերէն մէկը, որ ա-*

*[1] Հ. Ինճիճեան կը գրէ թէ՝ Գանձասար «Թուի ածանցեալ յանուանէս Գանձակ եւ սար, որպէս թէ Գանձակասար, զի ըստ որում ցուցանէ այժմեան դիրք նորին է մենաստան ի վերայ լերին, ոչ այնչափ տա-*

նոնց անունովը կոչուած է Գանձասարի վանք, մինչ դուցէ եկեղեցւոյն անունովը կնքուած էր՝ Յովհաննէս Մկրտիչի վանք։ Անուանուած է նաեւ Գլխոյ վանք (Արշ. Արարատ, 1863, թ. 701)։

Գանձասարի տաճարն[2] ամբողջապէս սրբատաշ տորոնագոյն ազնիւ քարերով շինուած է։ «Ունի մի աւագ եւ ութ փոքր խորաններ, երկու խորհրդարան, մի դուռն արեւմտեան կողմից, մի հրաշագան կաթուղիկէ, ութ փոքր, երեք միջակ, չորս բոլորակ եւ չորս մեծ լուսամուտներ եւ մի աւա–

---

րակաց ի Գանձակայ, իսկ գլեառն աշխարհիկ բարբառ մեր կոչէ սար» (Սարագրութիւն, էջ 314)։ Իսկ Ջալալեան կը գրէ՝ «Ես հաւանական դատեմ զպատմութիւն բնակչացն որք ասեն թէ յայսմ լերին գտանին հանք արծաթոյ, վասն որոյ եւ կոչեցաւ Գանձասար, այն է լեառն Գանձուց, որք ի ստուգութիւն բանից իւրեանց ցուցին ինձ զտեղիս, յորոց հանեալ են երբեմն զարծաթ բազում» (Ճանապարհորդութիւն, Ա., էջ 182)։

[2] Լէօ կը գրէ «Վանքը երկու շինութիւնից է բաղկացած, տաճարը կամ զանգակատունը կամ գաւիթը։ Երկու շինութիւնները պինդ կպած են միմեանց եւ մի ամբողջութիւն են կազմում։ Որոշվում են սրանով միայն, որ տաճարի շինութեան վրայ տաճարապետը թափել է իր բոլոր հմտութիւնը, զարդարել է նրան, նաշխել, սարքել, իսկ գաւիթը դրանից պարզ շինութիւն է, թէեւ տեղ տեղ զարդարուած է։ Արեւմտեան մեծ դռները շրջապատուած են հիանալի քանդակներով. երկու անգղուխ արձիներ կանգնած են մուտքի երկու կողմից, դրան ճակատին նկարուած է լուսինը իր բոլոր փոփոխութիւններով, տեսակ տեսակ գեղեցիկ հիւսուածքները տարածուած են չորս կողմը» (Իմ յիշատակարանը, էջ 365—366)։

Գանձասարի ճարտարապետական ոճը նման է Տաթեւի, Էջմիածնի եւ Շամբի Ս. Ստեփանոսի, գլխաւորապէս գմբէթի եռանկիւնի կտրուածքներով եւ ամբողջ շէնքի ընդհանուր գծագրութեամբ (Նոր Դար, 1891, թ. 123)։

գան։ Երկարութիւնն 16 մետր 95 սանթիմ, լայնութիւն 12 մետր 25 սանթիմ» (Արցախ, էջ 173)։

Ջալալ Դօլայն է գայն կանգնողն ու Յովհաննէս Մկրտչի նուիրողը։ Աւագանին վերեւ գրուած է «Յանուն սուրբ Երրորդութեան Հաւր եւ Որդւոյ եւ սրբոյ Հոգւոյն այս գիր արձանի է, զոր ես նուաստ ծառայ Աստուծոյ Ջալալ Դաւլա Հասան որդի Վախտանգայ թոռն մեծին Հասանայ բնակաւոր ինքնակալ բարձր եւ մեծ Արցախական աշխարհի, թագաւոր եւ ի յոգնասահման նահանգի, զի հայրն իմ ի վախճան կենաց ելից իւր աստեացս անդարձ կտակաւ հաստատեաց ինձ եւ մաւր իմոյ Խորիշահի՝ որ էր դուստր մեծ իշխանաց իշխանին Սարգսի, զի շինեսցուք զեկեղեցիս ի գերեզմանատուն հարց մերոց ի Գանձասար, զոր սկսեալ մեր ի ՈԿԵ (1126) թուին Հայոց աւգնականութեամբ բարեբարին Աստուծոյ եւ ի խփել լուսամուտին արեւելից մայրն իմ կրօնաւորեալ չոգաւ յԵրուսաղէմ երկրորդ անգամ, անդէն ի դրան Յարութեան խարազնազգեաց ճգնութեամբ, բազմամեայ ժուժկալութեամբ հանգեաւ ի Քրիստոս լուսոյ վկայութեամբ եւ անդէն պահեցաւ։ Իսկ մեր զբազմածուփ կենցաղոյս ի մտի եդեալ փոյթ գործոյ արարեալ աւարտումն եղեւ շնորհաւք ողորմութեան ամենագութ Տեառն ՈՁէ (1238) թուին, դատէւօրեալ ամենազան ձեւաւք պատկերազան

յաւրինակերս գմրէթագարդ յաւրինուածովք
յաւժարութեամբ կամաց մերոց, որպէս
տեսանէ Աստուած, հոգացաք զպէտս մխա-
րանիցս գիւղաւրայս Մաչեղ, Հարչանուս
բոլորքոջն, մէկ լուծ Խաչենաձոր, Նորաչէն-
կան զետն Այգեստան, Սեղնկնի, զոր իմ
հայրն էր տուեալ Սահակայն, Փուրկատոս-
տիցն, Արծաթենիսն, որ ես տուի խաչաւք,
գրաւք, մասամբք, նշխարաւք, պատուական
ձուլածոյ ամենայն սպասուք եւ հանդերձ
երեւելի զարդուք ի փառս Քի Այ. եւ Աստու-
ծով ի մեր իշխանութեան եկեղեցիքս պատ
են կամաւ տէր Վարդանայ առաջնորդի սուրբ
ուխտիս եւ մխարանիցս գրեցաք ժամ զաւագ
խորանն բոլոր տարին մեզ եւ այլ ամեն եկե-
ղեցիքս զատիկն իւր ճրագալուցովն իմ հաւրն
է Վախտանկայ, Աստուածածնին Գ. աւրն իմ
մաւրն Խորիշահին եւ յայտնութիւնն իւր
ճրագալուցովն իմ եղբաւր Զաքարէի, զա-
ւազ սեղանն, որ իմ է, յԱստուածածնէն մին-
չեւ ի խաչն իմ պապուն Հասանայ, յխնա-
կամաէն մինչ ի յայտնութիւն Մամքանայ իմ
կենակցին, Ութօրէից եւլիցն մինչ ի առաջա-
ւորն հասարակաց անյիշատակաց, բարեկեն-
դանին Ա. չարաթն իմ եղբաւր Դաւլին,
Բ. չարաթն իմ քուերն Մարինայ, այուհա-
ցից չարաթ կիւրակէքն իմ եղբաւրն Իւա-
նէին, զատկէն մինչ ի Աստուածածինն եւ
ի խաչէն մինչ ի յխնակամուտն ինձ Հասա-
նայ: Աւրհնեցաւ եկեղեցիս ի ՈՁԹ (1240)

թուին ի հայրապետութեան Տեառն Ներսէսի Աղուանից կաթողիկոսի։ Հաստատ է գիրս կամաւն Աստուծոյ, որ հակառակի, սորին Աստուած է եւ իւր սուրբքն։ Անտաւնի տաւ–նին մի աւր ժամ Յովասափ միայնակեցին կատարի կամաւն մեծին Հասանայ» (Արցախ, էջ 173—174 · հմմտ. նաեւ Սիոն, 1867, էջ 28 · Ջալալեան, Ճանապարհորդութիւն, Ա., էջ 183 · Շահխաթունեան, Ստորագրութիւն, Բ., էջ 372)։

Գանձասարի վանքը իր արեւմտեան կողմը ունի սրբատաշ քարերով, երկու միա–պաղաղ միջնասիւներու եւ վեց պատկից սիւ–ներու վրայ շինուած սիրուն գաւիթ մը, — նաեւ եկեղեցի կոչուած — որուն վրայ կայ հետեւեալ արձանագրութիւնը՝ «Թուին ՈԺԵ (1266), կամաւն ամենակալին Աստուծոյ ես Ջալալ Դաւլաս որդի Վախտանգայ կողմանցն Արցախայ եւ ամուսին իմ Մամքան, թոռն Բաղաց թագաւորին եւ Հասանայ որդին իմ Աթաբակն յետ կատարման եկեղեցւոյս հիմ–նարկեցաք ժամատունս եւ բազում աշխա–տութեամբ աւարտեցաւ, զոր եւ հայցեմ ան–մոռաց յիշել յաղաւթս ձեր, փոքր ընծայ տուի զՄաղեղն իւր չարեքարոմն, զձորանց իւր սահմանովն։ Դարձեալ ես Աթաբակս ըն–ծայեցի յաւժարութեամբ ոսկետուփ աւետա–րան եւ պատուական սուրբ Նշան, զԲրխատա–փորն եւ զՄեր Հայրենի Հարաւակուռն զԲլրին իւր սահմանովն եւ սահմանեցին զխաչի

ութարէքն պատարագել զՔրիստոս . . .» (Արցախ, էջ 174—175) :

Սոյն գաւիթին մէջ իբրեւ իշխանական եւ վանական դամբանարան ամփոփուած են իշխանազուններ[3] ու եկեղեցականներ .

«Այս է հանգիստ մեծին Ջալալի, յաղաւթս յիշեցէք, թվ. ՊՁ»:

«Յովհաննէս կաթուղիկոս»:

«Այս է . . . Գրիգոր . . . ողիկոսին . . . նից, ի ՌՃԲ. թուին (= կաթողիկոս Աղուանից)»:

«Այս է տապան Երեմիա կաթուղիկոսին Աղուանից, որ է յազգէն Ջալալ Դօլին ՌՃԽԹ»:

«Այս է տապան Եսայի կաթուղիկոսին Աղուանից, որ է յազգէն Ջալալ Դօլին ՌՃՀԷ թուին»:

«Այս է հանգիստ Դաւիթ կաթուղիկոսի, (որ է) որդի Բաղտասար պէկին»:

«Այս է տապան Յօհաննէս Աղուանից կաթուղիկոսին, որ է յազգէն Ջալալ Դօլին թվին ՌՄԼԵ-ին»:

«Այս է տապան Սարգիս Աղուանից կաթուղիկոսին թվին ՌՄՀԷ-ին»:

«Այս է տապան Մետրապօլտին Բաղդասարայ մեծ արհին, կայսեր պատկ հովուապետին, Տանս Աղուանից Հայոց ազգին, Յազգէ Ջալալ մեծ իշխանին, Տեառն Արցախական աշխարհին, թվին ՌՅԳ, 1854, Գ. յուլիսի» (Արցախ, էջ 176) :

---

[3] Հմմտ. Կիր. Գանձակեցի, Պատմ. Հայոց, էջ 230:

Գաւիթին հիւսիսային դրան ճակատակալ քարին վրայ կայ՝ «Թվին ՉԻ (1271) կամաւն Աստուծոյ ես Յովհաննէս որդի Իւանէի առաջնորդ սուրբ ուխտիս Գանձասարայ հրամանաւ Տեառն Խաչենո Աթաբակին յիմ հալալ արդեանց գնեցի զՎարդանայ թաղս մին չորից եւ գնա եւ այլ ընծէք տվի սուրբ կաթուղիկէս, միաբանքս տվին զՈհանու, զԱկոբա տաւնին զամէն եկեղեցիքս ինձ պատարագ» (Արցախ, էջ 176—177) :

Վանքին եւ անոր գաւիթին արտաքին որմերուն վրայ կան բազմաթիւ արձանագրութիւններ, որոնք կը յայտնեն այն շինութիւնները, որոնք Գանձասարի վրայ եղած են եւ կու տան ցանկը այն նուիրատուութիւններու, որոնք անոր ընծայուած են: Զանոնք յառաջ կը բերենք, վասն զի կապ ունին Գանձասարի պատմութեան հետ եւ պայծառ ապացոյցներ են անոր վայլած համակրանքին եւ ճոխութեանը:

1. «Ես Այտինս, Խիմչէս որդիք Աթաբակին տվաք Ալմաձայտար հողն ի սուրբ ուխտս Գանձասարայ առաջնորդութեամբ տէր Ներսիսի թվ. ՉԽԴ»:

2. «Ես Սմբատ որդի Փիրհամզին տվի Բեմին հողն իմ պապեց հողուն սուրբ ուխտիս Գանձասարայ առաջնորդութեամբ տէր Ներսէսի թվ. ՉԻ»:

3. «Թվ. ՉՂԵ. ես Սարգիս կաթուղիկոս որդի Հատիր Մէլիքին, թոռն մեծին Սայ-

տունին եւ գնեցի զհայրենիքն ի Կարբայ գ· բատակն, մինակ տան դ· բատակն ու կէսն, Աստուածոյ բ· բատակն, Կոստանդայ դ· բատակն տվի սուրբ ուխտս Գանձասարայ, որ զայս հայրենիքս հանէ ի սուրբ եկեղեցոյս Գ·ՃԺԸ հայրապետացն նզոված է, սուրբ Ովանէսին կապուած է»:

4. «Կամաւն Աստուծոյ ես Սայտունս որդի պարոն Աղբատի տվի իմ հայրենեացն զՏանձաձոր ի սուրբ ուխտս Գանձասարայ առաջնորդութեամբ տէր Եղիային, որքա եսուն տարուան Գ· ժամ, որ զայս հայրենիքս հանցէ յեկեղեցոյս Գ·ՃԺԸ· հայրապետացն նզոված է թվին ԹՃԾԶ (1507)»:

5. «Թվ. ՊԺ. իշխանութեամբ մեծի Իւանէի ես տէր Կոստանդ մեծ փափագանաւք գնեցի զգանգականնիս, սուրբ ուխտս բերի»:

6. «Ես Տուրսուն թոռն մեծի Ջալալին տվի Մսերշին հողն ի սուրբ ուխտս Գանձասար առաջնորդութեամբ տէր Ներսիսի թվ. ՋԽԲ»:

7. «Ես Պաստամ որդի մեծին Ջալալին տվի Կունճի հողին կալէն վեր ի սուրբ ուխտս Գանձասարայ առաջնորդութեամբ տէր Ներսիսին, թվ. ՋԻ»:

8. «Ի թվս. ՋԻ. ես Պուտաղս ու Վախտանգս եւ այլ եղբարքս միաբանեցաք եւ տուաք Փտուռանց... ուխտս Գանձասարայ առաջնորդութեամբ տէր Ներսիսի»:

9. «Յանուն Աստուծոյ ես Սաննայս Հան–

*դարերդցի եկի մեծ յուսով ի սուրբ ուխտս Գանձասարա իշխանութեամբ Աթաբակին-գիմ հոգոյ արդիւնքն ի կաթուղիկէս ովի, միաբանքս տուին զԾառապարդն զամէն եկեղեցիքս ինձ պատարագ Բ․ ժամ իմ կողակից Մարհանին, ով խափանէ իմ մեղացս պարտական է, ՉԻ թիւ»։*

10․ *«Յուսոփն Աստուծոյ ես էսուգնաս (Ուկնաս) դուստր մեծ ամիր Հասանայ, յետ մահուան մեծին իմոյ սահմանեցի զնա սուրբ ուխտիս եւ ովի ընծայ տէր Յովաննէսին եւ միաբանքս ովին Բ․ պատարագ ի տաւնի Փա-սանից... թվ ՉԾ»։*

11․ *«ՌՄԼԹ․ Թուին կամաւն Աստուծոյ ձեռամբ Տեառն Յովհաննու կաթուղիկոսին եւ Ապաւ (Արով) ուզպաշի որդի Մէլիք Յով-սեփա Թալիշու եւ իմ կենակից Հերիքնազ եւ որդիք Մէլիք Պէկլար եւ Մէլիք Ապաւ մեր հալալ արդեանց շինեցաք սորոյ աթոռոյս Աղուանից Գանձասարու երկու եկեղեցեաց տանխին եւ խախտեալ որմունս բազում աշ-խատութեամբ յիշատակ մեզ եւ ննջեցելոց մերոց...»։*

12․ *«Կամաւն Աստուծոյ ես տէր Ներսէս Ամարասայ եպիսկոպոս եկի մեծաւ յուսով ի սուրբ ուխտս իշխանութեամբ Աթաբակին, միաբանեցայ, ովի զիմ հոգոյ արդիւնս, սո-քա ետուն Ե․ աւր ժամ... ՉԼԱ»։*

13․ *«Կամաւն ամենակալին Աստուծոյ ես Բարսեղ որդի Ապաջուր երեցու, ամուսին իմ*

*Մամաք... զնեցի զՏնկին երկիրն, տուի ի կաթուղիկէս... թուին ՉԻԷ»։*

14. *«Կամաւն Աստուծոյ ես Վէլիջան եւ եղբարքս իմ որդիք Սայտունին թոռն մեծին Աղպաստու տեարք Խաչենու տուաք Աշմանայ իւր դ. սահմանաւն ի սուրբ ուխտս Գանձասարայ առաջնորդութեամբ տէր Ներսէսի թվ. ՋԻԹ»։*

15. *«Կամաւն Աստուծոյ ես Մէլիքս որդի Սայտունին, թոռն մեծին Աղպաստու չուրջառ, սկիհ եւ այլ ընծայ Կակաչանց, Փառուանց, Ծաղկավանց Բ տակն զնեցի տուի ի սուրբ ուխտս Գանձասարայ, թուին ՋԽԸ» (Բարխուդարեան, Արցախ, էջ 172—178․ Ջալալեան, Ճամբորդութիւն, Ա., էջ 183—192․ Շահխաթունեան, Ստորագրութիւն, Բ., 371—377․ Նոտարք, էջ 25, 185, 187, 228—219)։*

16. *Տաճարին հիւսիսային կողմը ամփոփուած են՝*

*«Յովսէփ գիտնական վարժապետ–վարդապետ․ էր Աւագեանց Արցախայոյ պերճ, տապան որպէս կարես հանդուրժես, մեծ վարժապետն ի քեզ կրեալ զետեղես, զհինաւուրց երախտաւորն ամփոփես, զանխօս մանկունս ի սուրբ հօրէն որբ թողես, եկայք ընկերք, ով դուք մուզայք սիրասունք զհօրս մահ արտասուօք ողբասցուք, եթէ Յիսուս գիր Ղազարոս արտասուեաց, 1847»։*

17․ «Այս է տապան Արիստակէս եպիսկոպոսին, որ էր եղբայր Երեմիա կաթուղիկոսին ՌՃԼԳ․ թուին»։

«Մովսէս խաչակիր վարդապետ վախճանեալ 1849»։

«ՌՂԴ․ ես Ամադ կանգնեցի խաչս ի փրկութիւն»։

«Թուին ՌԾԱ․ ես Վախտանգ որդի Հասանայ կանգնեցի զխաչս ի տապանի»։

«Այս է տապան Գրիգոր վարդապետին, որ է ազգէն Ջալալ Դոլին, Թվ․ ՌՃՂԷ»։

«Յովսէփ վարդապետ Իսրայէլբէկեան Ջալալեանց, Թվ․ ՌՅԺԲ» (Արցախ, էջ 172—178․ Նոր Դար, 1893, Թ․ 17)։

18․ «Անուն Երրորդութեան եւ մի աստուածութեան Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ ես Նուաստ աղախին Քրիստոսի Մամախաթուն դուստր ինքնակալ իշխանաց իշխանին Ջալալ Դոլայ Հասանին Տեառն Խաչենու եւ բարեպաշտ մաւր իմոյ Մամքանին եւ ամուսին մեծ պարոն Ումեկլին եկի մեծ յուսով ի սուրբ ուխտս Գանձասարայ, ես եւ որդին իմ Վախտանկ եւ տուքա եւս ստացան Բ․ ժամ զՎարդավառին տաւնին զամէն եկեղեցոյ պատարագ, քանի ես կենդանի եմ զժամն իմ հաւրն եւ իմ մաւրն կատարեն եւ յետ մահուանս ինձ կատարեն․ կատարիչք աւրհնին Աստուծոյ», գրուած ՉԼԵ թուականին։

19․ «Կամաւն ամենակալին Աստուծոյ, ես տէր Եղիայ, առաջնորդ սուրբ ուխտիս Գան—

ձասարայ, տուի զիմ հողդ արդիւնս ա. այամաւուրք, ա. տարեդիրք, չուրջառ... Ադախայ գ. բատակն, ով գայս գրեանքս հայրենիքս հանէ ի սուրբ Ովհաննեսէս ՅԺԸ հայրապետացն նզոված է» (ՋԺՁ թուականին)։

20. «Ես Ուսուպ տվի Բազմատու Նովերին հողն ի սուրբ ուխտս Գանձասարայ առաջնորդութեամբ տէր Ներսէսին» (ՋԽԴ)։

21. «Կամաւն Աստուծոյ ես տէր Վարդան որդի Ջալալեան տվի Ծակ խաչին հողն ի սուրբ ուխտս Գանձասարայ իշխանութեան Աղբատոյ առաջնորդութեամբ տէր Եղիային, որքա տվին Բ. աւր ժամ» (Թվ. ՊՂԲ)։

22. «Կամաւն Աստուծոյ ես Աթարէկ որդի Սմբատայ վերին հողն իմ հայրենիք էր իմ արտով տուի ի սուրբ ուխտս Գանձասարայ» (Թվ. ՌԲ)։

23. «Ես Շահնչէս որդի Ազբուին տվի Նովերի հողն ի սուրբ ուխտս Գանձասարայ, ով հողն հանէ սուրբ Յոհաննեսէս կապած է»։

24. «Յուսուֆն Աստուծոյ ես Ապուքան եւ ամուսին իմ Մինախաթուն միաբանեցաք սուրբ ուխտիս իշխանութեամբ Ջալալեան եւ առաջնորդութեամբ տէր Յոհանին տուաք Զարեքդար եւ այլ ընծայ, տէրս եւ միաբանք եառուն դ. պատարագ Աստուած. յայտնութեան ծրագալոյցին Բ. ինձ, Բ. խաթունին» (ՉԿ. Թուին)։

25. «Կամաւն Աստուծոյ ես Աւագեր եւ ամուսին իմ Աւտարդկին միաբանեցաք սուրբ

ուխտիս տվլի ընչից իմոց, սոքա տվլին դ. ժամ կըկլին Վարդավառին...»:

26. «Յուսովն Աստուծոյ ես Սարգիս քահանայ որդի Պետրոսայ եկի ի սուրբ ուխտս իշխանութեամբ Ջալալին միաբանեցայ եւ տվլի Ե. գիրք եւ այլ ընծայ, որք տվլին Բ. ժամ սուրբ Սարգսին...»:

27. «Անուամբն Աստուծոյ ես Մամախաթուն եւ պատրոնն իմ Ճար միաբանեցաք սուրբ ուխտիս Գանձասարայ եւ սոքա տուին աւագ հինգշաբաթ աւրն զամէն եկեղեցիքս պատարագ պատրոն Ումիկին...» (Թ. ՉԽԱ):

28. «Կամաւն Աստուծոյ ես Յակոբ Միջնաշխնեցի միաբանեցայ սուրբ ուխտիս տուաք ընծայ ի սուրբ կաթուղիկէս, սոքա տուին երկու ժամ ի տարումն սուրբ Յակոբայ տաւնին»:

29. «Յուսովն անմահին Աստուծոյ ես Գրիգոր Զարաբերթեցի անարժան քահանայ, որդի Ծերամանուայ տվլի զիմ հողոյ արդիւնքն ի սուրբ ուխտս Գանձասարայ, սոքա տուին Բ. ժամ Տեառնընդառաջին»:

30. «Ես Բուռ որդի Ծամամայ միաբանեցայ սուրբ ուխտիս տուլի ընչից իմոց, սոքա տուին Բ. ժամ Ծողակաթին»:

31. «Կամաւն Աստուծոյ ես Ուլուբէկս որդի մէճլիսին տուի զիմ հայրենի հողն Ղուղտանոսի կտուրն որ ի Վարդան բերանցէ (°) իւրով սարհատովն ի սուրբ ուխտս Գանձա-

*սարայ իմ հոգւոյ յիշատակ յառաջնորդութեան Մատթէոս վարդապետին եւ իշխանութեան Ջագին... թվ. ՊԾԶ»* (*Ծահխաթունեան*, *Ստորագրութիւն*, *Բ.*, *էջ* 571—577. *Ջալալեան*, *Ճամբորդութիւն*, *Ա.*, *էջ* 186—192. *Բարխուդարեան*, *Արցախ*, *էջ* 177—179) :

*Գանձասարի հիմնարկութեան պատմութիւնը կարծուածին չափ պայծառ չէ: Չէ կարելի ըսել՝ թէ անոր առաջին հիմնադիրը Ջալալ-Դօլայ իշխանն ըլլայ: Նա անոր ընդարձակողը. վերակազմողն ու զարդարողն է: Արդէն Ժ. դարու մէջ կը յիշատակուի Գանձասարի եկեղեցապան մը* (*Օրբէլեան*, *Պատմ. Տանն Սիսական*, *հրտ. Ղուկասեան*, *էջ* 279) :

*Իսկ Անանիա կաթողիկոսը իր «Յաղագս ապստամբութեան Տանն Աղուանից» գրութեան մէջ կը յիշէ՝ «Հայր Դաւիթ՝ Փառիսայ վանական, Հայր Պետրոս Կովախեղդի վանական, Հայր Մանաճիհր Յովսէփու վանից վանական, Հայր Գրիգորէս Նորավանից վանական, Հայր Սիմէոն Խանդունկան վանից վանական, Հայր Սարգիս Գանձասարու վանական, Հայր Պօղոս Խանդէն վանից վանական, Հայր Գէորգ Ոսկեվանից վանական, Հայր Արտաւազդ Այծաքարայ վանական, Հայր Միքայէլ Ծիկաքարի վանական, տէր Յովհաննէս Մաքենացաց եպիսկոպոս»* (*Արարատ*, 1897, *էջ* 134. *հմմտ. եւ* 1896, *էջ* 23, 25, 67) :

Գանձասարի ընդարձակումին եւ անոր շինութիւններու մասին միայն քարերը չեն խօսիր (Հմմտ. արձանագրութիւններ), այլ գրիչն ալ կարեւոր տեղեկութիւններ աւանդած է: Լսենք Կիրակոս Գանձակեցին՝ «Ծնեալ (Ջալալ Դօլայ Հասան) եկեղեցի մի գեղեցկագարդ յօրինուածովք գմբեթազարդ եւ եկնանման տաճար փառաց Աստուծոյ... ի վանքն, որ կոչի Գանձասար[5] Հանդէպ Խօխանաբերդին ի տեղի շիրմի իւրեանց. եւ յոյժ ամս աշխատ եղեն ի նմա, եւ իբրեւ առ գաւարտումն, արար նաւակատիս մեծահանդէս առ ի աւրհնել զեկեղեցին... որ եղեւ այս ի վեց հարիւր ութսուն եւ ինն թուին Հայոց, յաւուր մեծի տօնին Վարդավառի: Ծնեալ եւ կին նորա Մամքան զգաւիթն հրաշալի ի դուռն եկեղեցւոյն...» (Պատմ. Հայոց, էջ 146—147): Երկար ժամանակամիջոցի մէջ կը կատարուի շինութիւնն ու աւարտումը, վասն զի քաղաքական աննենթադրելի պարագաներ արգելք կ՚ըլլան գործին յառաջադիմութեան, սակայն Հասան աննկուն է եւ իր ձեռնարկին պսակումը կը տեսնէ:

Այդ շրջաններուն Գանձասարի առաջնորդն է՝ Վարդան, որ հարկաւ եկեղեցւոյն շինութեան աջակցած է եւ ապա կատարուած

---

[5] Կը վկայէ անոր գոյութեան ու կանխաւ շինութեանը — 1270ին Գանձասար կ՚որակուի «մեծահռչակ բուարան» (Յովսէփեան Գար. արքեպ. Հաւուց Թառի Ամենափրկիչը..., Երուսաղէմ 1937, էջ 62): — Սոկէ յառաջ եւս կը յիշուի (Հմմտ. նոյն՝ Յիշատակարանք Ձեռագրաց, Ա., էջ 922 եւ 928):

հանդիսութիւններուն մասնակցած ու անոնց վրայ հսկած։

Անոր յաջորդներէն է Յովհաննէս, որ այլ եւ այլ ընծաներ կ'ընէ «ի սուրբ կաթուղիկէս»։ Արդեօք ասո՞ր օրովը 1311ին Մինախաթուն եւ Աղուքան Գանձասարի չարեքդարն եւ ուրիշ ընծաներ կու տան թէ համանուն ուրիշ առաջնորդ մը պէտք է ընդունիլ։

Գրիգոր Տաթեւացիի աշակերտներէն Մատթէոս Գանձասարի առաջնորդութեան կը հասնի եւ 1407ին Ուլուբէկի նուիրատուութիւնները կը ստանայ։ Անոր յաջորդներէն Եղիա եւս հող կը ստանայ վանքին համար եւ ինքն ալ իր կողմանէ նուէրներ կ'ընէ (1467ին)[6]։ Աւելի բախտաւոր կ'ըլլայ Ներսէս առաջնորդը (1471), վասն զի նա աւելի շատ օժանդակութիւններ եւ նպաստներ կը ստանայ (Ջալալեան, Ճամբ., Ա., էջ 186—192· Շահխաթունեան, Ստորագրութիւն, Բ., էջ 571—577· Արցախ, էջ 177—178· Նօտարք, էջ 130, 185, 187, 228)։

Տարիներ յետոյ 1502—1503 ի շրջաններուն քահանայ մը ՁԹ· դահեկանի Աւետարան մը գնելով «ետ յառաջնորդ Գանձասարու» (Արցախ, էջ 112), ուր Աթանաս 1576ին Սադ–

---

[6] 1453ին Գանձասարի մէջ Աւետարան մը կը գրուի (Ակինեան, Հաւաք. Յիշատ. Հ. Պատուբեանէն)։ Իսկ անկէ յառաջ Ազարիա Գանձասարի եպիսկոպոսը կը մասնակցի Կիրակոս Խորվիրապեցիին կաթողիկոսութեան ընտրութեան (Չամչեան, Պատմ. Հայոց, Գ., էջ 487)։

*մոսարան մը կը գրէ*[7] *(Կարենեան, Յուց. հայ. Ձեռ. էջմ. Թ. 1889)։ Այս առեններր Գանձասարի առաջնորդ կ՚ըլլայ Ղուկաս Լոռեցին, որ Յովհաննէս Տարեցիի աշակերտած է (Ակինեան, Մովսէս Գ. Տաթեւացի կաթ., էջ 375)։*

*ՌՃԹ թուին (1660ին) Մկրտիչ արեղան Գանձասար կու գայ «սակս ուսուցանելոյ գքերականութիւն» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. ժողովածուէ մը)։*

*Գանձասարի վանքը երկար ատեն Աղուաններու կաթողիկոսներու բնակավայրը կ՚ըլլայ եւ իբրեւ կաթողիկոսանիստ վանք՝ մեծ անուն կը հանէ։ Կաթողիկոսները վանքին ներքին գործերը վարելու համար իրենց հսկողութեան տակ ունէին զանազան իրաւասութիւններով ճոխացուած վստահելի անձ մը կամ ենթա(ա)ռաջնորդ մը։ Դամութիւնը դժբախտաբար այս ներքին առաջնորդներու անունները յարմար չէ նկատած կաթողիկոսներու անուան հետ մեզի տալու։ Իսկ մենք մեր նպատակէն գզալիօրէն պիտի շեղէինք, եթէ այժմ Աղուանից կաթողիկոսներու գործունէութեան վրայ ծանրանայինք։ Միայն այսքանը յիշատակենք որ՝ Յովհաննէս Թ.՝*

7 *Խորիշահի եւ Վախտանգի աւետարանին յիշատակագրութիւններէն մէկուն մէջ կայ՝ «Եւ կաթողիկոսութեան տեղիս տէր Սիմաւոնին ի սուրբ ուխտիս Գանձասարայ եւ տէր Յոհաննէս կաթողիկոս եւ տէր Գուիթ կաթողիկոս ի թվին Հայոց ՌԼԸ էր։ Մեղաւոր Մարտիրոս յիշեցէք» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. էջմ. 378)։*

Գանձասարի[8] եկեղեցին կը վերաշինէ եւ մենաստանը դժբախտաբար կ'ըլլայ վայր մը, ուր ախուր դէպքեր տեղի կ'ունենան։ Այս շրջանէն միայն քանի մը անցուդարձեր կը ներհիւսենք՝ բոլորովին անտեսած չըլլալու համար այդ խնդիրները։

Գանձասարի Եսայի[9] օրինաւոր կաթողիկոսին հանդիատն ու գործունէութիւնը կը խանգարուի եւ Աղուանից նուիրապետու-թիւնը խռովայոյզ շրջան մը կը բոլորէ, երբ Երից–մանկանց վանքի մէջ Ներսէս ինքզինքը կաթողիկոս կը հռչակէ։ Գանձասար այդ ա-տենները ծանր պարտքերու տակ կ'իյնայ։ Էջմիածնի ժամանակակից կաթողիկոսը՝ Աղեքսանդր կը ջանայ երկու հակառակորդ-ները եւ աթոռները հաշտեցնել կա՛մ հրաժա-րումով եւ կամ գոնէ համագործակցու–

---

[8] Յովհաննէսի օրով Գանձասարի մէջ կը կրթուի Մխլու վարդապետը, որ Գանձասարի եւ Հարեւան բնակչութեան ուշադրութիւնն երկար ատեն իր վրայ կը կեդրոնացնէ իր ամբոխավար գործունէութեամբը (Զաքարիա Սարկաւագ, Պատմագրութիւն, էջ 47—50. Գր. Դարանաղցի, Ժամանակագրութիւն, էջ 456—457. Ակինեան Հ. Ն., Մովսէս Տաթեւացի, էջ 73—85 եւ Աւդալբէգեան Թ., Անյայտ աղանդաւորներ Հայոց մէջ ԺԶ. եւ ԺԷ. դարերում, Վիեննա 1926, էջ 4—24: — 1658ին Պետրոս Կաթ.ի օրով Յովհաննէս «երիցուկ» կու գայ Գանձասար (Ակինեան, Հաւաք. Յիշատ. Էջմ. 2277), որ այդ ատեն՝ «գեղեցկազարդ պայծառութեամբ շքեղացեալ» էր (Թօփճեան, Ցուց. հայ. Ձեռ. Դաղեան Վ.ի, էջ 100)։ Նաեւ Եսայի կաթողիկոսը կը վկայէ թէ, Փոքր Շահարասի ժամանակ Գանձասար կը զարդանայ (Պատմութիւն համառօտ Աղուանից երկրի, Երուսա-ղէմ 1868, էջ 11)։

[9] Կը դրուատուի իբրեւ քաջ հռետոր (Կանայեանց, Ցուց. հայ. Ձեռ. Թիֆլ. Ներսէսեան Վարժ.ի, էջ 46)։

թեամբ: Եսայի աւելի բարեացակամ եւ զիջող է, մինչ Ներսէս ընդիմացող, սակայն վերջապէս համոզուելով՝ որ երկպառակութեան հետեւանքները միմիայն պարտքերու անկրելի ծանրութիւնը պիտի ըլլան՝ գլուխ կը ծռէ: Կը հաշտուին հակառակորդները եւ վանքին պարտքերու թեթեւացումին վրայ կը մտածեն, վասն զի՝ «վանքն ամայի եւ ողորմելի մնացեալ է»:

Անոնց մահերը նոր յուզումներ յառաջ կը բերեն: Եսայի Գանձասարի մէջ յաջորդ կ'ունենայ Յովհաննէս Ժ. իսկ Երից մանկանց մէջ Ներսէսի գահը կը գրաւէ Իսրայէլ: Էջմիածնի կաթողիկոսը՝ Սիմէոն երկուքն ալ էջմիածին կը հրաւիրէ: Յովհաննէս Ժ. յօժարակամ կը փութայ, իսկ Իսրայէլ հրաւէրները կ'անտեսէ ու կը մերժէ: Այդ պարագային Սիմէոն վերջինս կաթողիկոսութենէ կը զրկէ: Սակայն նա կ'անտեսէ եւ համակիրներ կ'ունենայ յանձին Եղիշէի վանքի վանահայր Մելքիսեդեկի, Հոռեկայ առաջնորդ Ազարիայի, Յորդանաշատի արքեպիսկոպոս Իսրայէլի, որոնք Սիմէոնի թուղթ մը կը գրեն եւ անոր կաթողիկոսութեան պաշտպան կ'ըլլան[10]: Սիմէոն կը մնայ իր որոշումին վրայ հաստատուն եւ Իսրայէլ կը խոնարհի: Աղուանքի

---

[10] Անոնք այդ առթիւ կը յիշատակեն թէ Աղուանից կաթողիկոսական վայրեր եղած են՝ Քիշ, Գարրանդ, Պարտաւ, Ջալալեթու, Ամենափրկչի, Եղիշէ առաքեալի, Գոշի, Փառիսոսի, Վարագի, Հաղբատի եւ Ցաղտալու վանքերը (Արձագանք, 1886, էջ 228):

կաթողիկոսներն իրարու հետ կը հաշտուին եւ անոնց վիճակները կը նշանակուին: Անկէ վերջ Յովհաննէս ողեւին՝ ուժգնօրէն կը նուիրուի Գանձասարի վերականգնումին եւ պայծառութեան: Բայց դժբախտաբար Ճուչիի մէջ կը թունաւորուի եւ վանքը կողոպուտի կ'ենթարկուի: Այս տխուր լուրը անոր եղբայրը՝ Սարգիս եպիսկոպոսը էջմիածնի Ղուկաս կաթողիկոսին կը հաղորդէ եւ ինքզինքը Գանձակի մէջ Աղուանից կաթողիկոս օծել կու տայ: Անոր այդ ընթացքը էջմիածնի կաթողիկոսին անհաճութեան կը հանդիպի, վասն զի Աղուանքի միւս կաթողիկոսը՝ Իսրայէլ կ'ապրէր եւ իրեն օգնական ու յաջորդ ընտրած էր իր Սիմէոն եղբայրը: Այսպէս՝ Աղուանք երեք կաթողիկոս կ'ունենայ: Բայց Սարգիս Հասրաթ կ'անցնի եւ բաւական ժամանակ մը երկպառակութեան հուրը յանթեղի կը մնայ, մինչեւ որ նա 1812ին Գանձակ վերադառնալով՝ Գանձասարի կաթողիկոսութեան դեկը ձեռքը կ'առնու: Երից մանկանց վանքի մէջ նստող Սիմէոն կաթողիկոսը ձայն կը բարձրացնէ եւ իրաւունք կը պահանջէ: էջմիածնի Եփրեմ կաթողիկոսը թեր ու դէմ կշռելէ յետոյ՝ Սարգիս Աղուանից տան մետրապօլիտ կ'անուանէ: Անոր յաջորդը կ'ըլլայ իր ազգականը Բաղդասար Հասան-Ջալալեան եւ ապա Աղուանից կաթողիկոսութիւնը կը դադրի (Հմմտ. Արձագանք, 1886, էջ 195—198, 211—213, 226—229,

239 – 242, 262—265. *Փորձ*, 1880, Ե., էջ 131, Ալպյեանց քհ., Դիւան Հայոց Պատմութեան, ուր շատ նիւթ կայ)։ Բաղդասար ռուսական պետութեան կարգադրութեամբը իր գահը Տուչի կը փոխադրէ եւ 1856ին հոն կը մեռնի։ Անոր մահէն յետոյ էջմիածնի կաթողիկոսն իր յարմար տեսած անձը Տուչի կը ղրկէ եւ նա անկէ Գանձասարն ու թեմը կը կառավարէ։ Բաղդասարի յաջորդ կը նշանակուի Գէորգ եպ. Վեհապետեան եւ անոր ալ ուրիշներ, որոնց մեծ մասը կարճ պաշտօնավարութիւն կ՚ունենայ։

Բաղդասարի օրով Գանձասարի մէջ կը փայլի Յովսէփ Վ. Արցախեցին[11], որ զօրեղ զարկ կու տայ գիտութեան եւ լաւ հունձք կ՚ունենայ։

Գանձասարի վանքը եւ մանաւանդ անոր առաջնորդներէն՝ Եսայի կաթողիկոսը շատ մեծ դեր կը խաղան հայ ազատագրական շարժումին մէջ (հմմտ. Լէօ, Պատմ. Հայոց, Գ. հտր., 1946. Երեւան, նոյնը՝ Հայկական տպագրութիւնը, Ա., Բ., 1901, Թիֆլիս եւն եւն, ինչպէս Կ. Եզեանի (տպ. Պետերբուրգ 1898) եւ Ա. Յովհաննիսեանի գործերը [Իսրայէլ Օրի], ռուսերէն ու գերմաներէն)։

Գանձասարի մէջ կաթողիկոսներն ու ա–

---

[11] 1735ին կը յիշուի սուրբ Գանձասարայ աւելածու Յօհան անարժան վարդապետ» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. Լալայեանցէն)։ Անկէ շատ յառաջ (1659) ի Գանձասար Յովհաննէս Քերականութիւն մը կ՚արտագրէ եւ 1760ին Դաւիթ Աղօթագիրք մը (Կարենեան, Ցուց. հայ. Ձեռ. էջմ., էջ 225 եւ էջ 2)։

ուաջնորդները շատ մը մատուռքներ եւ սրբութիւններ հաւաքած էին (St. Martin, Mémoires, II, էջ 414, 420 · Սիմէոն դպրի Լեհացւոյ Ուղեգրութիւն, էջ 114 · Արցախ, էջ 175 · Նոր Դար, 1893, Թ. 17) : Ան եղած է յաւերժական հանդստավայրը շատ կաթողիկոսներու եւ յատկապէս Ջալալեաններու դամբարանն էր : Այն տեղ կը հանգչի եկեղեցւոյ չինարարը անխոնջ ու մեծն Հասան Ջալալեան — յետ սպանութեան (հմմտ. վերը եւ Կիր. Գանձ. Պատմ., էջ 230 եւ Վարդան Արեւելցի, Պատմ., էջ 153) :

Գանձասարի վանքը՝ իբրեւ կաթողիկոսանիստ վայր եւ սիրուած ուխտատեղի՝ օժտուած էր շատ մը բնակարաններով, որոնց յուշարար մնացած են այսօր քանի մը խարխուլ սենեակներ : Ամբողջ վանքը շրջապատուած էր պարիսպով մը, որ երեք դուռ ունէր : Ան հաստ էր եւ ամուր : Անոր մէջ ներհիւսուած էին նոյն իսկ ժայռի բեկորներ :

Արձանագրութիւններու համաձայն Գանձասար շատ նուիրատուներ ունեցած է եւ շարժուն եւ անշարժ ստացուածքներու տիրացած : Շատ հարուստ էր, ունէր գիւղեր, անտառներ, հանքեր (Արձագանք, 1886, էջ 577 · Լէօ, Իմ յիշատակարանը, էջ 375 · Նոր Դար, 1887, Թ. 177—178, 1891, Թ. 123, 124, 1903, Թ. 47—48 · Արարատ, 1896, էջ 43, 1914, էջ 1119 · Արշալոյս, Արարատեան, 1863, Թ. 701 · Արցախ, էջ 180 եւն. Մշակ, 1896, Թ. 87 եւ 1913, 178—179 ·

*Թօփճեան, Յուց. Հայ. Ձեռ. Դաղեան Վ.Ի, Բ., էջ 37. Էփրիկեան Հ. Ս., Բնաշխ. Բառարան, Ա., էջ 462)։*

*Բարխուդարեան արդէն իր ժամանակները կը տեսնէր՝ թէ ի՛նչպէս դարերով կեդրոնականութիւն ցուցուցած Գանձասարը «բարոյապէս եւ նիւթապէս քայքայուած է... կաթում է չարունակ, որ խախտուած է տանեաց սալարկն, քանդուած է պարիսպն տեղ տեղ... գողցուած են այնքան ընտիր ձեռագիրներն...»* (*Արցախ*, էջ 180)։

## 4. ԽԱԹՐԱՅ ԿԱՄ ԽԱԴԱՐԻ ԿԱՄ ԽԱԴԱՅԻ ՎԱՆՔԸ ԿԱՄ ԽԹՐՈՎԱՆՔԸ

*Վաղահաս գիւղէն բաւական հեռու, Թարթառ գետի աջ կողմը սարահարթի մը վրայ կը հանդչի այս վանքը։ Տաճարը շինուած է չորս սիւներու վրայ, որոնցմէ երկուքը միապաղաղ են եւ երկուքը երկերկու կտոր։ «Վանքս ունի (այս է եկեղեցին) երկու փոքր եւ աւագ խորան մը եւ դեռ ուրիշ խորան մըն ալ հիւսիսային արեւմտեան կողմը... 17 մետր 10 սանթիմ երկարութիւն, 14 մետր լայնութիւն»* (*Արցախ*, էջ 194. *Էփրիկեան, Բնաշխ. Բառարան*, Բ., էջ 123)։

*Տաճարին արեւելեան ճակատին վրայ գրուած է՝ «Ի ՈԾԳ* (1204) (*կամ ՈՁԳ*)[12] *թուին ես տէր Յովհաննէս շինեցի զեկեղեցիս*

---

[12] *Հմմտ. Տէր Մովսէսեան Մ. արքեպ. Հայկական երեք մեծ վանքերի Տաթեւի, Հաղարծնի եւ Դադի եկեղեցիները եւ վանական շինութիւնները. Երուսաղէմ*, 1938, էջ 98։

եւ ժողովեցի զխաչս եւ զգիրս որ ի սմա եւ արկի զՁոթացն այգին եւ զՄատաղխան բա-զում աշխատութեամբ եւ ետու զվանքս իւր ամէն սահմանաւն իմ եղբարբս Հասանայ եւ իւր որդեացն Հաթերքու տեառն միջնորդու-թեամբ. ով խափանէ խափանեսցի ի կենացն Աստուծոյ»: «Յանուն Աստուծոյ այս իմ գիր է Հասանայ, որ երբ իմ աղբերս զեկեղեցիս շինեաց եւ զվանքս ինձ երետ, ես զՄնձորոյ բակս իւր սահմանով ի յեկեղեցիս տուի, ով հակառակ կայ Աստուծոյ հակառակ կայ, ով զայս գիր խափանէ չունի թողութիւն յԱս-տուծոյ»:

Վանքին ներսը՝ րեմին վրայ՝ «Շնորհիւ Քրիստոսի ես Աւփէ դուստր արքայաշուք իշ-խանին Տարսայիճի թագապարմ մաւրն իմոյ Մինախաթունին, նպաստ եղեալ քրիստոսա-պսակ զլխոյ իմոյ մեծափառ իշխանին Դրի-գորի ի շինութիւն լուսանուէր սուրբ եկե-ղեցւոյս կամեցայ ի ձեռն քահանայապետին մեծի Տեառն Յովհաննիսի զիմ յարդար ընչից կանգնեցի րեմի սեղան ի զենմանն Քրիս-տոսի, զի յամենայն կիրակէ եւ շաբաթ, տաւն Ծննդեան եւ Տեառնընդառաջին, Զատ-կին, զՎարդավառին, Աստուածածնին եւ սուրբ Խաչի ինձ կատարի պատարագ զամեն եկեղեցիքս, որ տուի զմեր խասհողն Բլրի հանդի զսեննկպան ա. բահի ջուր»:

Զախակողմեան փոքր խորանին վրայ՝

«Այս ձախակողմ խորանի սուրբ Պողո-սիոս է, զմեծ տէր Յովհաննէս շինող եկե-

*գեցոյս որդի Դաւիթին, եղբայր մեծ իշխանին Հասանայ յաղաւթս յիշեցէք։ — «Աջակող- մեան սուրբ Մինաս զՄինախաթուն զուստր մեծի իշխանին Ջալալին եւ ամուսին Տար- սայիճին յաղաւթս յիշեցէք»։*

*Հիւսիսային սիւներէն մէկուն վրայ՝ «Աս- տուծով ես Ազարիա միաբանեցայ սուրբ ուխ- տիս, տէր Յովհաննէս եւ միաբանքս տուին Ա. աւր ժամ Համբարձման»։ Ուրիշ մըն ալ Դ. պատարագ կը ստանայ։*

*Վէմ քարի վրայ կայ՝ «Աստուած ողոր- մեա Սմպատիս եղբաւր»։*

*Ջարդուած քարի մը վրայ՝ «Կամաւն Աս- տուծոյ ես Հասան եւ մայրն իմ Ծուշիկ շինե- ցաք զսուրբ կամար Պետրոս հաւր իմոյ Թվ. ՈԿԴ»։*

*Սեղանին ճակատը՝ «Շնորհիւ ամենա- զօրին Աստուծոյ մեք նուաստ ծառայքս Բրխ- տոսի Յօհան, Բարսեղ, Աթանաս, Ղազար վարդապետք շինեցաք զսուրբ տաճարս Աս- տուածածնին եւ սուրբ Առաքելոյն յաջողու- թեամբ խորանի երեք մեծ կամարօքն մին- չեւ առեանն հին էր կամար կցեալ բաղում երկամբք եւ աշխատանօք ի դառն ժամա- նակի»։*

*Սիւնի մը վրայ՝ «Կամաւքն Աստուծոյ եւ հրամանաւ Տեառն Յօհաննէսի, Աստուծով ես Ծաhանս միաբանեցայ սուրբ ուխտիս Խաղի, տվի գծառատակաց այգետեղն եւ այլ ընծայ ի սուրբ միաբանաց, ողորմութեամբ*

տաճնորդ տէր Ռուբէնի եւ ամենայն միաբանքս տուին երեք պատարագ ի տօնի Վերափոխման եւ Աղուհացից, պարտական է առաջին Աստուծոյ թվ. ՉԺԴ»: — Աստուծով ես Ծերբէրկս զիմ Վաչանց կէսն առայ Մուշայի որդւոյն ծախեցի քառն եւ հինգ դահեկանի, տէր Ռուբէն վկայ. ա. ար պատարագ» (Արցախ, էջ 193—195. Ջալալեան, Ճամբ., Ա., էջ 229—231):

Այս արձանագրութիւններու մէջ ամփոփուած է Խաթրայ վանքի պատմութիւնը: Ան հիմնարկութիւնն է Դոփեան տոհմին եւ նմանապէս դամբանարանը: Յովհաննէս եպիսկոպոս գործին հոգին եղած է եւ անոր թեւ թիկունք եղած Գրիգոր Դոփեան իր կնոջ Ասփէի[13] հետ, որ հոս ալ թաղուած է: Բիչ ծախս չէ եղած: Անոր պահպանութեան եւ զարգացումին համար եղած են նուէրներ ու նպաստներ: Այնպէս կը թուի Յովհաննէսի

---

[13] Աւետարանի մը յիշատակագրութեան մէջ կայ՝ «Սա (Ասփայ) ամենայն բարեպաշտութեամբ զարդարեալ զարդարեաց զանազան սպասուք եւ շինուածովք զեկեղեցիս Հայաստանեայց, ստացաւ զսուրբ աւետարանս յարդար ընչից իւրոց եւ ընծայեաց իւր սուրբ ուխտն խաթարի վանս (գուցէ Խաթայի), որ է գերեզմանատուն մեծ իշխանացն ազգին Դօփեանց... եւ (ինքն) դնի ի դամբա(րա)նի ի նոյն ի վերասացեալ սուրբ ուխտն» (Արցախ, էջ 390): — Աւետարան մը 1312ին յիշատակ կը տրուի Խաթարայ (Ազգր. Հանդ. 1899. Ե., էջ 341. Հմմտ. Թարգմանչաց վանքը, Անահիտ, 1911, Թ. 5—6 եւ Հակ. հայագիտական տարեգիր, Ա., 1948, էջ 8): — 1708ին Ս. Խաթէի վանքը կը գտնուէր Մովսէս վարդապետը (Արշալոյս Արարատեան, 1849. էջ 95, ուր եւ Արցախի շատ մը վանքերու առաջնորդներն ու միաբանները յիշուած են):

1204ին գրած արձանագրութենէն — ժողո-վեցի զխաչս եւ զգիրս որ է սմա — թէ կան-խաւ հոն արդէն վանք — եկեղեցի գոյութիւն ունէր:

Վանքը իր անունն առած է Թադէոս առաքելոյն Խաթ անուն աշակերտէն (Ջալալեան, Ճամբ., Բ., էջ 229 եւ Ալիշան, Քրիստոնէութեան Արշալոյս ի Հայս, էջ 23): Կը տանուի Ս. Ստեփանոսի աջը (Գարեգին կաթ. Յիշատակարանք Ձեռագրաց, Անթիլիաս 1951, Ա., էջ 960):

### 5. ԿԻՁԱՆԻ ԱՆԱՊԱՏԸ

Համանուն գիւղի արեւմտեան կողմը: «Բերդաձեւ սարին վերայ շինուած է անտաշ քարով մի եկեղեցի երկու կամարների վերայ: Բոլորովին անփուտ է եւ կանգուն: Ունի եւ միարանից համար մի քանի խուցեր, հանգստարան զարդարուած խաչարձաններով, ուր կան եւ վարդապետաց գերեզմաններ[14]» (Արցախ, էջ 167):

### 6. ԿՈՇԻԿ ԱՆԱՊԱՏԸ

«Հիմնարկուած է Քոլատակ գիւղի վերեւ համանուն գետակի ձախ կողմը» (Արցախ, էջ 168): Ունի երեք տաճար, երեքն ալ անտաշ քարով շինուած: Միջին տաճարի բեմին ժողովրդահայեաց երեսին վրայ քանդակուած է՝ «Հասանայ եւ Մամա խաթունին թոռն Գ.

[14] Խաչէնքի մէջ կայ Կարմիր վանք եկեղեցի մը, որ չեմ կարծեր՝ թէ իսկապէս վանք եղած ըլլայ (Արցախ, էջ 192):

*հետ ի դանն գնացի, յամի... իմ ազգէն Թափեցի զ... տատատատանաւ զհարկանին մեր... Խերխան, Մարծպան, Մամիկոն կամեցաք նորոգել զմեր գերեզմանատունս, ես Էրիվան ...եցի զուրբ Ստեփաննոս եւ նորոգեցի զայլ եկեղեցիքս եւ զարդարեցի Մխեթար եղբաւր իմոյ ...թ ես Մարտիրոս. ես Սեւադա ավլի զԳրիգորանանց, զՄարնդանանց, զԳելմարդանց ի սուրբ եկեղեցիս ...մն Ժ. աւր ժամ Հասանա դատկին, Բ. Մամա Խաթունին՝ Վարդավառին. Ա. Բուզու... Բ. Խերխանին յայտնութեան... կատարին. որ հակառակի կամ զրկել ջանա զայս տեղիս ի սուրբ Գէորգա, ոտին նորա Աստուած եղիցի... գրեցաւ ի Թվ. Հայոց ՁԺԴ»:*

*Ինչպէս այս արձանագրութիւնը կը վկայէ Կօշիկ անապատը իշխանազուններու գետնադամբանն եղած է: Գաւիթին մէջ կան քանի մը յաւերժօրէն ննջողներ: Անոր որմերէն մէկուն վրայ կը կարդացուի՝ «ՈՂԳ. Ցանուն Աստուծոյ ես Պռոշ որդի իշխանին Վասակայ (գրուած՝ Վակա) յուսով միաբանեցայ Կոշիկ անապատոյ, ավլի խաչ, աւետարան, (տօ)նապատճառ, միաբանքս ավլին սուրբ խաչի Զ. աւր ժամ, որչափ կենդանի եմ իմ մաւրն, յետ ելից իմոյ ինձ. կատարիչքն աւրհնին, խափանիչքն դատին յաստուծոյ»:*

*— Ես Տղել, որդի ...ոյ իմ ընչից գնեցի հող... բնակեցայ սուրբ Նշանիս, կամակցաւթեամբ եղբարց Կոշիկ անապատոյ եւ ավլին ինձ ի տարին Բ. ժամ սուրբ Գրիգորին*

աղուհացն, Ա. խմ որդի Խուչախին, Ա. իւր մաւրն, յետ ելից իմոյ ինձ»:

Այսպէս՝ նաեւ այս արձանագրութիւններէն յայտնի կ՚ըլլան տաճարներու անուններն՝ Ս. Գէորգ, Ս. Ստեփանոս եւ Ս. Նշան: Այսօր միաբաններու սենեակներն աւերակ կոյտեր են: — Կոչիկլի մէջ 1493ին Աւետարան մը կը գրուէր (Արցախ, էջ 168—169 եւ 247):

## 7. ՀԱՄԱՄԻ ՋՈՐԻ ԱՆԱՊԱՏԸ

Համամի ձորի ձախ ափին կայ եկեղեցի մը, որ անապատ կոչուած է: Գուցէ ճգնատեղի կամ շատ փոքրիկ վանք՝ եղած ըլլայ (Արցախ, էջ 183):

## 8. ՀԱԽԱՊՏՈՒԿԻ ՎԱՆՔԸ

Գանձասարի, Խոխանաբերդի եւ Խաչէն գետակի մօտ ձուաձեւ սարի մը գագաթին կանգնած է այս վանքը, որ փոքր ու թաղակապ է եւ պզտիկ գաւիթ մ՚ունի: Հետեւեալ արձանագրութիւնները կը ներկայացնեն անոր պատմութիւնը՝ «Թւին ՈԺԲ. էր յիշխանութեան Հասանա, որդո Վախտանգա եւ ամուսնո նորա Մամքանա, ես տէր Յոհան քվերորդի տէր Գրիգորո եւ Գէորգ եղբաւրորդի եւ այլ միաբանքս շինեցաք գեկեղեցիքս ի փրկութիւն հոգոց մերոց եւ յիշատակ ծնողաց մերող»: — «Յանուն Աստուծոյ ես Աթանաս, որ զԳողին երկիրն գնեցի ի Հաւուց պտուկ ավի. հայր Գէորգ եւ այլ միաբանքս ավին ի տարումն Դ. աւր պատարագ Նոր Կի-

բակէին, որ զհողն յեկեղեցւոյս հանէ ՅԺԸ հայրապետացն նզոված է»:

Հաւապտուկ դամբանարան է Ջաջու-ռեանց ցեղին. հոն ամփոփուած են Սմբատ, Արու-Սեդ եւ Հասան (Արցախ, էջ 181—182. Լէօ, Իմ յիշատակարանը, էջ 383):

Աւետարանի մը յիշատակագրութենէն են հետեւեալ տողերը, որոնք կը ցուցնեն թէ Հաւապտուկի վանքը աննշան վանք չէ եղած՝ «Ստացաւ զսյս պատուածախօս աւետարանս յիշատակ եւ փրկութիւն հօր մեր բարեպաշտ իշխանին Ջաջռոյ եւ եդ ի սուրբ մենաստանն, որ կոչի Հաւապտուկ, որ է շինեալ յանուն սրբոյ Աստուածածնի եւ բնակութիւն եւ չի-րիմ Ջաջռոյ իշխանին եւ նախնեաց մերոց...: Գրեցաւ սա... ի դերահռչակ սուրբ ուխ-տ(ի)ս Հաւապտկոյ ընդ հովանեաւ սուրբ Աս-տուածածնիս եւ սուրբ Լուսաւորչիս Գրի-գորի ձեռամբ մեղապարտ Ստեփաննոսի...» (Ջալալեան, Ճամբ, Բ., էջ 216—217. հմմտ. Բարխուդարեան, Աղուանից երկիր եւ դրա-ցիք, էջ 234. Յովսէփեան, Ոսկերչական ա-րուեստի մի նմուշ ԺԳ. դարում [Խտտակե-րաց Ս. Նշան], էջ 2, արտատպ. Գեղա-րուեստ, 1911, Թ. 4. նոյնը՝ Խաղբակեանք կամ Պռօշեանք, Վաղարշապատ 1928, էջ 29, նոյնը՝ Յիշատ. Ձեռագրաց, Ա., էջ 882):

9. ՄԵԾ-ԱՐԱՆՑ ԿԱՄ ՄԵԾ-ԻՐԱՆԱՑ ՎԱՆՔԸ

Քոլատակ եւ Թրղուն գիւղերու մօտ, բարձր լեռնաբազկի մը սեռի հարթակին վրայ

շինուած է Արցախի այս հռչակաւոր վանքը։

Տաճարը նեղ, երկար ու բարձր է։ Ղեւոնդեանց անապատին կը նմանի։ Անտաշ քարերով շինուած է եւ սիւն չունի։ Զուրկ է նաեւ փոքր խորաններէ, ուստի եւ միակ խորան մ՚ունի։ Բեմը չափազանց բարձր է։ Ունի քանի մը դուռ եւ գաւիթ մը, որուն դրան երկու կողմերը կան զոյգ խաչարձաններ արձանագրութեամբ[15]։ Այն գաւիթին մէջ քանի մը բարձր աստիճանաւորներու աճիւններն ամփոփուած են։

Այս տաճարին կից կայ միեւնոյն ոճով շինուած ուրիշ տաճար մըն ալ, իսկ ասոնց հարաւային կողմը կը գտնուի սրահ մը, ուր քանի մը կաթողիկոս թաղուած է։ Ջալալեան Ս. Յակոբ երեք սագաշէն եկեղեցիով օժտուած գիտէ (Ճանապարհ, Բ., էջ 192)։

Մեծարանց Ս. Յակոբի վանքը ունի շատ մը արձանագրութիւններ, որոնք ցիրցան հրատարակուած են ճամբորդական գրութիւններու մէջ (հմմտ. Ջալալեան, Ճամբ.,

---

15 Լէօ կը գրէ՝ «Ս. Յակոբայ վանքը հասարակ եւ անզարդ շինութիւն է։ Փոքրիկ տաճարը շրջապատուած է բազմաթիւ նեղ եւ մթին խցերով, ծակ ու ծուկերով։ Թէեւ վանքը հին է, Գանձասարից էլ հին, բայց ինչպէս երեւում է վերանորոգուած։ Նախկին շինութեան քարերը վերանորոգիչները տեղից որ եւ է յարմարութեան եւ ճաշակի դրել են պատերում...։ Ամբողջ շինութիւնը մի անշնորհք կարկատանի տպաւորութիւն է թողում։ Սա էլ հին ժամանակները հռչակաւոր վանք է եղել։ Նա կոչուելիս է եղել Մեծարանց վիճակ։ Պատերի մէջ դրած հին քարերն ունին արձանագրութիւններ։ Ժամատանը կայ Յակոբոս արքեպիսկոպոսի եւ «Մեծարանց հայրապետի գերեզմանը...» (Իմ յիշատակարանը, էջ 409—410)։

Ա., էջ 193—194. Բարխուդարեան, Արցախ, էջ 169—171)։ Զանոնք ամբողջութեամբ հրատարակած է Դաղեան վարդապետը «Բանասէր»ի մէջ (1901, էջ 135—147)։

Անոնց կարեւորները եւ այն ալ չական բովանդակութիւնները յառաջ բերելով պիտի գոհանանք՝ ծանրութենէ խուսափելու մտածութեամբ։

1. Հարաւային դուռին հարաւ-արեւմտեան սիւնին վրայ կայ՝ «Թագոր Զալալայ Դովլին հրամանով ես Սմպատ որդի Հեջրին ամլի էգատեղ Գրիգորոյ, նա ի տարումն Դ. ժամ երեւ Յայտնութեանն Բ. ինձ եւ Բ. Թամարին...»։

2. Սոյն դուռին արեւմտեան դռնատեղի պատին վրայ՝ «Ես Զաքարէ որդի վախտանգա տեառն խաչինս ամլի գխէորխաա կոռ երկիրն ի տունս մեծարեանց, տէր սարգիս եւ մեզ Ժ. ար ժամ ի տարում Ե. ինձ. Ե. ամուսնս իմո արդու խաթունին սրբո խաչի տանին...»։

3. Գաւթի հիւսիսային պատին հիւսիսարեւմտեան կողմի կամարի ներսի պատին վրայ՝ «Կամաւն աստուծոյ ես ոքան եւ պապքան որդի սարգսի հոգո որդւոյն միաբանեցաք սուրբ նշանիս ընծայիւք իշխանութեան Զալալա տաւլին տր վդ եւ միաբանքս Ժ. ժամ ամլին մեր եղբաւրն մերչս մեծի Ե. չարաթ... Թվ. ՉԱ» (հմմտ. եւ Յովսէփեան, Նիւթեր եւ ուսումնասիրութիւններ հայ արուեստի

*եւ մշակոյթի պատմութեան, Ա. Պրակ, Երուսաղէմ* 1935, *էջ* 13)։

4. «*Ցիշխանութեան Ջալալին ես խութլուբէկ որդի խոյտանա միաբանեցա սուրբ ուխտիս ընծայիւք տէր Ս. եւ միաբանքս տվին ի տարումն Բ. ււր ժամ ի տաւն զատկի... թվ. ՉԽԲ*»։

5. «*Ես ուղուլմիշս միաբանեցա սուրբ Նշանիս. ա. Ս. եւ միաբանքս Գ. ժամ տվին Վարդեվառին... թվ. ՉԽԲ*»։

6. «*Ես Խոյդան Աւշինայ որդի միաբանեցայ սուրբ Նշանիս ընծայիւք. տէր Սգ եւ միաբանքս տվին ինձ ի տարումն Ա. ււր ժամ...*»։

7. «*Ես Գրիգոր որդի Սմբատա միաբանեցա տանս Մեծաիրանց յառաջնորդութեանս տր Սարգսի եւ տր Վդ եւ տուի սուրբ Նշան եւ աւետարան եւ Ա. կխավար իւր հողովն ի Մեղրենիսն իմ հայրենաբաժնէն իմ հաւր տված վասուրսն ցհողն Ջալալա դաւլին յիշխանութեամբ իմ հոգոյս տվի Ի ժամ տվին Զատկին... թ. ՌԲ*»։

8. «*Կամաւն Աստուծոյ ես տր. Յոհաննէս կԹկս որդի Ջալալին մեծ իշխանի կանգնեցի գխաչս ի փրկութիւն հոգոյ իմոյ...*»։

9. «*Այս է հանգիստ տր Ովհաննէս կԹղս. թվ. ՋԺԹ*»։

10. «*Այս է Առըստկիս կԹղկս*»։

11. «*Սիմէոն կԹղկս*»։

12. «*Այս է հանգիստ Սիմէոն կԹղկս թվ. ՌԿԵ*»։

13. «Կամաւն Աստուծոյ ես տէր Սիմէոն կՁղկս Մեծծանիս կանգնեցի սուրբ խաչս փրկութեան հոգոյ իմոյ...»:

14. «Թվ ՉԺԴ. Կամաւն ամենակալին Աստուծոյ ես Ոզուքանս անարժան աղախին Քրիստոսի ամուսին Հասանայ դուստր մեծ իշխանին Էլիգումին պարոն մօրն Թամածի միաբանիցա տանս Մեծիրեանց ընծայիւք որ Վզ միաբանքն գ. սր. ժամ տվին Յայտնութեան»:

15. «Թ. ՌԿԱ. ես Նահանեղ Սակաարա որդի կանգնեց խաչս ի տապանես իմոյ յաղաւթս յիշեցէք»:

16. «Կամաւն Աստուծոյ ես Մաթիոս միաբանեցայ սուրբ Նշանիս. տր Սգ. միաբանքս Ա. աւր ժամ տվին... ՉԻԱ»:

17. «Ես Զաքարէ որդի Վախտանգա տվի գՋաղացն Մխիթարա հողյն Զ. ժամ տվաք»:

18. «ՌԿԱ. թիւ ես Խորիշահ ամուսին Վախտանգա տէր Խաչենոյ դուստր մեծին Սարգսի, քոյր Զաքարի եւ Իւանոյ վերատին շինեցի զեկեղեցին Մեծարանց»:

19. «Ես Մուշեղ որդի Հեջրին միաբանեցա սուրբ ուխտիս, գնեցի զսուրբ Նշանս եւ զՋեղացաւն եւ տվի վանքս. տր Ս.ին, միաբանքս խոստացան ի տարումն Բ. ժամ առաքելոց տաւնին... Թվ. ՉԽԹ»:

20. «Թիւ Զ. Ջալալին հրամանաւ ես Վարհամ Հասան որդիք Սմպատա տվաք զծովատեղին հողն մեր հաւր հոգոյն ի Մեծիրենց աթոռս, որ Վզ միաբանքս տվին Գ. ժամ

Վարդավառին։ Ս. Հասան։ Ս. Սնպատ։ Ս. Թամարի։

21. «Ես Մուշէս միաբանեցա սուրբ նշանի ընծայիւք. որ. Վդ. միաբանքս տվին տուր Բ. աւր ժամ Աւետեաց»։

22. «ՅԲ. Թուականութեան Հայս ի ժամանակս Յովանեսի աղվան... իշխանի եւ Սղոմ... եծարանց եպիսկ կանդնեցի զս...»։

23. «Ես Գրիգորիս գնեցի Տանձուտին հողն եսու ի տունս որ ադ. ետին Զ. աւր սուրբ ժամ յաւթորէքն»։

24. «Թվ. ՈՂԹ. էր. ես Ստեփաննոս, Սարգիս եւ Ներսէս Փիլիպոսէի գնեցի զԿալջադկի հողն ի Սահադին եւեւի տունս Մեծիրանց որ. Վգ. եւ միաբանքս տվին ինձ Բ. ժամ ի տաւն ի Նոր զատկին»։

25. «Թվ. ՈՀԲ. ես տր Սարգիս կանդնեցի զխաչս ի տապանի եղբաւր իմո տէր Յակովբոսի արհիեպիսկոպոսի եւ Մեծարանց հայրապետի»։

26. «Թվ. ՈՀԴ. ես տր Սարգիս եղբաւրորդի տն Գիորգա եղբայր տր Յակովբոսի առաջնորդ տանս Մեծարեանց կանդնեցի զխաչս»։

27. «Տէր Վարդան(ի) տապանս արհիեպիսկոպոսի»։

28. «Ի ՈՃԿէ Թվին. Կամաւն Աստուծոյ ես մահտեսի Յարութիւնս նորոգեցի զսուրբ եկեղեցոյս երկու դուռն յիշատակ ինձ եւ ծնողացն իմ...»։

29. «Ես Յարութիւն կրեցի չավ...»։

30. «Այս է տապան Մելքիսեդեկ վար–
դապետին
Որ է որդի Աղասարեանց Սարգիս բէկին,
Սա միաբան էր Յակոբայ սրբոյ վանքին
Բարի կրօնիւք քառսն եւ ամս լիովին
Վախճանեցաւ 18 Սեպտեմբերի 1850 ա–
մին»։

31. «Տապան տէր Գասպարին եւ տէր Գասպարեանց, սա էր միաբան սրբոյն Յակոբայ վանան»։

32. «Կամաւն Աստուծոյ ես տէր աղա...ոյ արհիեպիսկոպոս որդի մե(ծի) Աչբուղին, գնեցի ա...չփ տեղս այս սահման... ի ժաբուջրին ձորն գնաց վեր Մարկոսա...»։

33. «Կամօքն Աստուծոյ ես Առաքել Մխիթար Բարդուժան երեց միաբանեցաք տանս Մեծարանց տովք եւ միաբանք» (Բանասէր, 1905, էջ 135—147)։

Այս արձանագրութիւնները կը ցուցնեն թէ Ս. Յակոբի վանքը սիրուած է եւ եղած կաթողիկոսարան ու հանգստարան։ Նաեւ կը յիշեն առաջնորդներէն եւ միաբաններէն ոմանց անունները։

Դատեան վարդապետը այս վանքին անուան մասին կ'արտայայտուի թէ կոչուած է՝ Մեծ-արանց, վասն զի հոն մեծ այրեր՝ կաթողիկոսներ թաղուած են, եւ Ս. Յակոբ, վասն զի հոն էր Ս. Յակոբի աջը (Բանասէր, 1901, էջ 135)։ Մեկնութիւն մը որ կրնայ հաւանական թուիլ, այլ չէ համոզիչ։ Կան–

խաւ անուանուած է ոչ թէ Մեծ–արանց, այլ Մեծի արանց: Հայկական թուականին ծագումին առեն արդէն Մեծիրանց գաւառի եպիսկոպոսութիւնը կար: Այդ շրջանին անկէ Աղուաններու եպիսկոպոս կ՚ըլլայ Տէր Արաս[16] (Կաղանկատուացի Մ. Գամ. Աղուանից, էջ 391): Բայց դարեր վերջ է որ Ս. Յակոբի վանքը քաղաքական պարագաներու հետեւանքով քան թէ ուրիշ պատճառներով կ՚ըլլայ Աղուաններու կաթողիկոսներու աթոռը եւ անկէ կը կառավարէին իրենց հօտը (Վրթանէս Քերթողի առեն կ՚ապրէր Սիմոն Մեծ իրեանց [Արարատ, 1896, էջ 477]):

Շատ բնական է մտածել՝ որ Մեծարանց վանքը օժտուած ըլլայ բաւական մեծ թուով բնակարաններով: Անոնց մեծագոյն մասը այսօր աւերակոյտի վերածուած է: Պահանջուած հոգածութեան առարկայ չէ եղած, թէպէտ ունէր վանքապատկան գիւղեր եւ 452 դեսխադին հող (Արարատ, 1896, էջ 43—44· Արձագանք, 1886, էջ 578· Արշալոյս Արարատեան, 1863, Թ. 701):

Նախապէս ունէր Ս. Նշանի մասունք մը եւ յետագային կը ստանայ Ս. Յակոբի մասունք եւս, որ յարգանքի շատ առարկայ կ՚ըլլայ (Լէօ, Իմ յիշատակարանը, էջ 410, խոկ հնութիւններու մասին հմմտ. Թոփճեան, Ցուց. հայ. Ձեռ. Դաղեան Վ.ի, Բ., էջ 73):

16 Ծանօթ է Գրիգոր եպ. Մեծարանց տան եւ Հաւապտկի (հմմտ. Հաւապտկի վանքը):

Հաւանօրէն ունեցած ըլլայ նաեւ չատ մը գրչագիրներ:

Հոս կը կցեմ քանի մը յիշատակագրութիւններ, որոնք Մեծարանցի պատմութեան համար արժէքաւոր են:

«Փառք... Արդ... ցանկացող եղեալ... Գրիգոր քահանայ, որ էր սա ի տանէն Արցախայ ի մեծ նախագահ տանէն որ կոչի Մեծիրանց աթոռ եւ ըստ բերման աւուրցս Յակոբու վանք եւ հարազատ հօրեղբարք սորա ի սխն (սոյն) տեղի հանգուցեալք սուրբ եւ երջանիկն Յոհան եւ անյաղթ փիլիսոփայն Յակովբ, որ գչափ աւուրց կիսաւրեա կատարեաց ի Քրիստոս...: Բայց գրեցաւ աստուածային մատեանս ի թվկ. հայկազեան տոմարիս ՋԽՁ ձեռամբ յոգնամեղ եւ փցուն գրչի Յովհաննու ծառայի Յիսուսի Քրիստոսի ի գաւառիս Սիսակա ի գերահռչակ մայրաքաղաքիս Եղիցեաց առ ոտս Տիրամաւր Աստուածածնիս եւ սուրբ կաթուղիկէիս եւ փառաւորեալ սուրբ Նախավկայիս յառաջնորդութիւն երկրորդ Ստեփաննոսի Լուսաւորիչ Հայաստանեայց Սիւնեաց աթոռոյս եւ գրեցաւ ի յեղեռն եւ ի դառն ժամանակս, յորում տառապանք եւ նեղութիւն մաձեալ ունէին զեղկելի եւ ղաչխարելի ազգս քրիստոնէից: Զի մարմնապէս աչխատութեամբ չարչարեցեն եւ յայժմ պատուհասին խրատէ զմեզ ողորմած բնութիւնն Աստուծոյ եւ զանյաղթելի զաւրն Պարսից առաքեաց ի վերայ մեր եւ յայժմ ամի

զեկեղեցիք քանդեցին ի բազում գաւառս եւ ի քաղաքս դառն սուգ առեալ զմահ անձանց ըղձանայեաւք եւ բազումք թողեալ զմենաստանս եւ զանապատ խառնձանաչ շրջելով տարաշէմ եղեալ ատարաշխարհիկ փախստական լինէին լալով եւ կոծելով ի մեծէ մինչեւ ի փոքունս եւ այս բազմապատիկ չարեաց մերոց, զոր կրեցաք եւ ոչ գղջացաք...» (Հ. Ն. Ակինեան, Հաւաք. Յիշատ. Լալայեանցէն):

1383ին Աւետարան մը կը կազմուի «Մեծ կողմանց Խաչենոյ եպիսկոպոսարանէս մայրաքաղաքէնս» (Բարխուդարեան, Արցախ, էջ 263):

Յովհաննէս 1569ին կը գրէ ձեռագիր մը՝ «յերկիրս Խաչեան ի վանս Յակովբայ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի ի հայրապետութեան տեառն Գրիգորիսին, որդի Մէհրապ պէկին եւ յաշխարհակալութեան Շահթահմասին» (Հ. Ն. Ակինեան, Հաւաք. Յիշատ. Հ. Պատուրեանէն):

Սաղաթիէլ 1577ին կ՛աւարտէ Աւետարան մը՝ «Ի դերահոչակ եւ անուանի եւ փառաւոր սուրբ ուխտիս Յակոբայ վանք եւ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին եւ սրբանէր եւ հրեշտակակրօն միայրանիցն սորա տէր Սիմէոն արհիեպեսկոպոսին, որ եւ գրել իւր ուսին (անձին) եւ Բարսեղ եպիսկոպոսին եւ սրբասնեալ կրօնաւորացն տէր Եղիշէին եւ տէր Ոսկանին եւ միւս Բարսեղին, տէր Սարգսին... ի յերկիրս Խաչեան ի հայրապետութեան Տեառն Յովհաննէս կաթողիկոսին եւ

յաշխարհակալութեան Շահ Թահմազին» (Թահմազին: Լալայեանց, Ցուց. հայ. Ձեռ. Վասպ., էջ 686—688, ուր եւ կը յիշուին «աշխատաւոր վանիցս» Գոհար եւ Մարիան):

«Ի գաւառին Խաչենայ Արցախ նահանգի ի վանքս Մեծիրանայ Ս. Յակովբայ» 1664ին կը գրուի գարձեալ Աւետարան մը (Սմբատեան, Շամախի, էջ 243):

10. ՊՏԿԻ Ս. ԳԷՈՐԳԻ ԿԱՄ ՊՏԳԵՍՄԲԵՐԹԻ ՎԱՆՔԸ[17]

Ուլու-պապ չէնի արեւելեան կողմը՝ բարձր սարի մը գագաթին վրայ թառած է այս վանքը: «...Ունի միեւնոյն ձեւը եւ գրեթէ նոյն խակ մեծութիւնը, ինչ որ ունի Գտչայ վանքն, մինչեւ քարերի գոյնն, կառուցուածքն, ձարտարապետութեան ոճն նոյն եւ նման են միմեանց: Տարբերութիւնն այն է միայն, որ բարձր եւ սրածայր է Գտչայ կաթուղիկէն եւ ունի հին գաւիթ» (Արցախ: էջ 163. հմմտ. Լէօ, Իմ յիշատակարանը, էջ 408—409):

Եկեղեցւոյ խորանին առջեւն է Գէորգ սրբակեաց անձին գերեզմանը եւ աջակողմեան սիւնին վրայ գրուած է՝ «Ղուկաս վարդապետ ի թուին Հայոց ՌՄԼ (1781) շինեաց զմի ջրաղաց եւ ետ սմա յիշատակ» (Ջալալեան, Ճամբ., Ա., էջ 196. Ալիշան, Սիսական, էջ 270)։

Ս. Գէորգի շինութեան առեն — աւան-

---

[17] Կը ցուցուի եւ Գարդմանի մէջ (հմմտ. անդ):

դութեան համաձայն — աշխատած է նաեւ որձ արջ մը, որ սատկելէն յետոյ հոն ալ թաղուած է։ Նման աւանդութիւններ ուրիշ վանքերու համար եւս հիւսուած են։

Ծննութեան տարին անծանօթ է։ Աւետարան մը — գրուած 1490ին կը գրուի՝ «Ի դուռն Խաչենու Պտկի սուրբ Գէորգ գօրավարին (Հ. Աճառեան, Ցուց. հայ. Ձեռ. Նոր-Բայազէտի, էջ 22)։ Վանքը վերականգնած է Յովհաննէս վարդապետը (Արարատ, 1896, էջ 44), իսկ հոն նահատակուած է մահմետականի մը քրիստոնեայ եղած որդին (Հայ Նոր Վկաներ, էջ 693)։

Ս. Գէորգի վանքը թէեւ շատ կալուածի տիրացած է, սակայն խեղճ դրութեան մատնուած (Արձագանք, 1886, էջ 578. Արարատ, 1896, էջ 44—45 եւ Արշալոյս Արարատեան, 1863, Թ. 701)։

### 11. ՎԱՂԱՀԱՍԻ ԿԱՄ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻ ԿԱՄ ՏԻՐԱՄՕՐ ՎԱՆՔԸ

Թարթառ գետի աջ ափին հիմնուած է Վաղահաս կամ Վղահաս գիւղի վանքը։ Եկեղեցին կոչուած է Մայրաքաղաք կամ Տիրամայր։ «Եկեղեցու մեծութիւնից եւ գերեզմանատան ծաւալից երեւում է որ ժամանակու հռչակաւոր վանք եղած է մայրաքաղաքս» (Արցախ, էջ 191)։ Բացի այս մեծ եկեղեցիէն, որ տորոնագոյն սրբատաշ քարերով շինուած է, կայ ուրիշ նեղ ու փոքրիկ եկեղեցի մը։ Այս երկուքին մէջ մտած է դա-

ւիթը, որ քանի մը մասի բաժնուած է. մէկ մասը գրագարան է: Սոյն գաւիթին խորանին ճակատին վրայ արձանագրուած է՝ «Ամենակալ Աստուծոյ շնորհիւն ես Կոստանդին (Ա.) կաթուղիկոս ամենայն Հայոց միաբանեցայ եպիսկոպոսարանիս ի ձեռն հոգեւոր որդւոյ իմոյ տէր Մարգարէին, յիշխանութեան մեծի Ջալալ Դաւլին եւ առաջնորդութեան սորայ Տեառն Ներսիսի Աղուանից կաթուղիկոսին եւ այլ սպասաւորք սուրբ ուխտիս հաստատեցին Գ. պատարագ ի տանի Տեառնընդառաջին, Բ. ինձ, Ա. տէր Մարգարէին, կատարիչքն օրհնին յԱստուծոյ... ի թվին ՈՂԵ էր»:

Գաւիթին խորանին աջ կողմը կայ՝ «ՈԼԲ թուականութիւն Հայոց ի հայրապետութեան Տեառն Գրիգորոյ ես Հասան որդի Վասակայ շինեցի զեկեղեցիս...»:

Գաւիթին դրան ճակատին վրայ՝ «ԶԳրիգորէս եւ զմայր եւ զամուսին յաղաւթս յիշեցէք, թվ. ՁԺԷ»:

Գրագարանի պատին ստորոտը՝ «Յառաջնորդութեան Գրիգորոյ ես Սիմէոն եւ եղբարք իմ ետու շինել զփոնախուցս եւ կազմել զգրատունս եւ եղբարք ետուն Բ. պատարագ. կատարիչքն աւրհնին»:

Իսկ խաչարձանի մը վրայ՝ «Յանուն Աստուծոյ ես Յոհան գրաւէր եւ վախտանգս կանգնեցաք զխաչս ի տապանի որդւոյ իմոյ Գրիգորի, թիւն ՈԿԲ էր (Արցախ, էջ 192. Ջալալեան, Ճամբ., Բ., 231—233):

Վաղահասի վանքը եպիսկոպոսանիստ եղած է։ Առաջնորդներէն ծանօթ են՝ Գրիգոր, Յովհաննէս եւ Ներսէս։

## 12. ՎԱՃԱՌԻ ՎԱՆՔԸ

Վաճառ աւերակ քաղաքին հանգստարանին մէջ կան եկեղեցի մը եւ երկյարկանի մատուռ մը։ Անոնց շինողն է Մամքան թագուհին։ Այնպէս կը թուի՝ թէ անոնց մօտ եղած ըլլայ փոքրիկ վանք մը, վասն զի հոն գտնուած քանի մը կարեւոր արձանագրութիւններէն ոմանց մէջ կայ «մխարանքս տուին» (Արցախ, էջ 184—185), որ սակայն եկեղեցւոյ քահանայութիւնն ալ կրնայ ակնարկել։

## 13. ՕԾԿԱՅ ՎԱՆՔԸ

Պտրեցիք գիւղի մօտերը։ Աննչան։ Իր քովերը կայ քարուկիրով շինուած մատուռ մը, որ Անապատ կը կոչուի (Արցախ, էջ 157—159)։

Դ.

## ՀԱԹԵՐՔԻ ՎԱՆՔԵՐԸ

*Հաթերք կամ Ըստատկ (Ըստախական) գաւառը կը տարածուի Թարթառի, Եանչայի ձախ եւ Թըրղու աջ ափերուն միջեւ :*

### 1. ԴԱԴԻ ԿԱՄ ԽՈԹԱՑ (ԳՈԹԱՑ) ԿԱՄ ԽՈԽԹԱՑ ՎԱՆՔԸ

*Թարթառ գետի ձախ կողմը բլրակներու եւ Լաչին–Ղայեայի ժայռապարիսպներու մէջ շինուած է Դադի վանքը եւ «Կարելի է ասել ընական մի մեծ փոսի մէջ, միանգամայն զուրկ հորիզոնից . . . գետից մինչեւ վանական շինութիւնները մօտ կէս կիլոմետր է : Վանական բոլոր շէնքերը շրջափակուած են հաստարակ պարիսպներով, բայց ոչ իբրեւ բերդի պարիսպներ . . . : Վանքին կարելի է մօտենալ հիւսիսի բարձրութիւններից կամ արեւելքի բլուրներից» (Տէր–Մովսէսեան Մեսրոպ արքեպ., Հայկական երեք մեծ վանքերի Տաթեւի, Հաղարծնի եւ Դադի եկեղեցիները եւ վանական շինութիւնները, Երուսաղէմ* 1938, *էջ* 85[1]) :

---

[1] *Այս գիրքը առէպ պիտի յիշատակուի «Տահաղ» համառօտութեամբ :*

Դադի վանքը զանազան շինութիւններէ բաղկացած է:

Հնագոյն տաճարը կամ Բազիլիկը (Տահաղ, էջ 85) կը գտնուի հիւսիսային գաւիթի թեքութեան վրայ եւ անոր հիւսիսային ու արեւելեան պատերն ամբողջապէս արտաքուստ հողի մէջ ծածկուած են: Շինուած է անտաշ քարերով եւ կամարածածկ է: Թէեւ այժմ գմբէթ չունի, սակայն այնպէս կը թուի թէ ժամանակին գմբէթով օժտուած եւ կամ եթէ գմբեթէ զուրկ էր. ամէն պարագայի վերնամուտով անոր լուսաւորութեան հոգ տարուած էր: «Բաւական երկար ձգուած շինութիւնը միջում սիւներ չունի եւ տանիքի կամարները յենւում են պատերին միացած երկու կողմից երեքական կիսասիւների վերայ: Իբրեւ բազիլիկային յատակագիծ ունի միանաւ կերպարանք, իրենից ներկայացնելով մի երկար քառանկիւնի յատակագիծ, առանց որ եւ է բաժանումի» (անդ, էջ 85):

«Հիւսիսային պատին մէջ կան չորս, իսկ հարաւայինի մէջ՝ երկու որմնադարաններ, «Որոնց օրինակը եկեղեցու մէջ սովորական չէ եւ ոչ էլ նպատակը հասկանալի» (Տահաղ, էջ 85): Ունի երկու դուռ մին՝ արեւմտեան պատի մէջ տեղը եւ մէկալը՝ հարաւային եւ արեւմտեան պատերու անկիւնը: Դարձեալ ունի՝ «սեղանի ապսիս, կողքերին փոքր խցիկներ» (անդ, էջ 85):

Ինչպէս աւերակներէն կարելի է հաւաստեաւ հաստատել՝ այս եկեղեցին հին շինութիւն է եւ ստէպ նորոգութիւններ տեսած, սակայն չէ կրցած տոկալ ժամանակի հարուածներուն :

Առաջին եկեղեցւոյն կից է երկրորդ բազիլիկան՝ եկեղեցին, որ անկէ աւելի նեղ է եւ կարճ : Շինուած է անտաշ քարերով «եւ հիւսիս-հարաւ ձգուած՝ միջնորմով բաժանուած է երկու հաւասարի, արեւմտեան մասը հաւանական է յատկացրած էր ժամատան» (անդ, էջ 86) :

Այս զոյգ եկեղեցիներու շարունակութեանը — արեւելեան անկիւնը — կանգնուած է Արզու խաթունի եկեղեցի-կաթողիկէն : «Ամենահոյակապ եւ գեղեցիկ շինութիւնն է սա, սրբատաշ քարերով, ԺԳ. դարու հայկական ոճի ընդհանրացած ոճով կառուցուած : Յատակագիծը խաչաձեւ գմբէթաւոր եկեղեցիներինն է, համարեա հաւասար քառանկիւնի թեւերով, ներսում չորս պսիններ, որոնց անկիւններում գոյացած որմերը հոյակապ գմբէթի յենարաններն են : Պատերը դրսից ցցուածքներ չունին (Տաճաղ, էջ 86. Հմմտ. Ազգր. Հանդ. 1913, ԻԷ., էջ 82) :

Աւագ սեղանին կից, եկեղեցւոյ ներսը, կան ութը փոքր սեղան եւ այն՝ չորս անկիւններու եռայարկ սենեակներու կամ խորաններու մէջ : Այդ սենեակներու երկրորդ յարկը

կ՚առաջնորդեն պատերէն դուրս ցցուած աստիճանները, որոնց մէկ մասը տաշուած եւ կոտրտուած է։

Եկեղեցին ներսէն ու դրսէն միատեսակ տաշուած քարերով կառուցուած է։ Պատերը զարդարուած են նկարներով, որոնցմէ մաս մը եղծուած եւ մաս մըն ալ դեռ մնացած է, բայց ոչ՝ բոլորովին անաղարտ։

Այս եկեղեցւոյն եւ երկրորդ բազիլիկային յենուած է սրահը, որ ունի հինգ հաստ որմնաչար սիւն, որոնք աղեղնաձեւ միացած՝ իրենց վրայ կը կրեն կամարածածկ տանիքը։ Ասիկա՝ շինութեան ձեւովն ու տեղովը՝ Տաթեւի համանման շինութիւն է։

Ասոնցմէ զատ Դադի վանքն ունեցած է զանգակատուն, ժամատուն, քանի մը մատուռ, երկու «տաճար» (բնակավայր), գինետուն եւ անչուշտ հիւրանոց, գործատուն եւ մատենադարան (Տահազ, էջ 89—91· Ազգ· Հանդ· 1913, Բ·, էջ 75—84· Նոր Դար, 1892, Թ· 15)։

Այս եկեղեցիներն ու շէնքերը[2] միխանուագ չեն շինուած, այլ դարերու ընթացքին եւ իրենց ճարտարապետութեան օրինակներ ունեցած կ՚երեւան արդէն գոյութիւն ունեցող ուրիշ շինութիւններ — նուազ փոփոխութեամբ։

---

[2] Խօթայ վանքի մէջ կայ հրաշալի Խաչքար մը, որուն համար Ֆրանսայի ճամբորդ մը խոշոր գումար մը կ՚առաջարկէ զայն Փրանսա փոխադրելու ցանկութեամբ (Բիւզանդիոն, 1901, Թ· 1492)։

*Դատի վանքէն դեռ անեղծ պահուած եւ մեզի հասած են քանի մը կարեւոր արձանագրութիւններ, որոնք եթէ ոչ լրիւ, գոնէ բաւական ցայտուն, անոր պատմութիւնը մեզի կը ներկայացնեն:*

*«Տնօրհէին ամենակալին Աստուծոյ Հաւր եւ միածնի Որդոյ նորա Յիսուսի Քրիստոսի եւ պարգեւաւքն ամենասուրբ Հոգո (ւս) Արղութխաթուն նուաստ աղախին Քրիստոսի դուստր մեծի իշխանաց իշխանին Քրդին եւ ամուսին Վախտանկա Թագաւորացն տեառն Հաթերքո եւ ամենայն երկրին Խաչենո յուսով մեծաւ շին(եցի) զսուրբ կաթուղիկէ ի տեղոջ հանգստարանի առն իմո եւ զաւակաց իմոց Հասանա անդրան(կին) իմո եւ Գրիգորի եւ ի Տէրն կիսաւրեա վախճանեց(աւ), զի վասն իմ մեղաց պատժեաց զիս Աստուած եւ եարձ ի գլխո իմո զերկոսեան պսակն վայելուչ, զի անդրանիկն իմ Հասան սպանաւ ի թուրքաց պատերազմին վասն քրիստոնէական հաւատոյս եւ զկնի երից ամսոց եւ կրտսեր որդին իմ Գրիգոր ի Տէրն կոչեցեալ պարտ բնութեան հատուցանելով վճարեաց ի կենցաղս եւ փոխեցաւ ի Քրիստոս սուգ անմխիթարի... թչուառացելո մաւրս իւրեանց, այլ զի ի կենդանութեան յոյս ի մաի եղ... շինել եկեղեցի յայսմ տեղոջ եւ ոչ ժամանեցին վասն արագահաս լինելո (ի վերայ նոցա մահուն) ինձ աւանդեցին անդարձիւ կատարել զփափագ սրտից նոցա եւ իմո եւ զատերաց հայցեմ, որք երկրպագէք սրբո խորանիս յի–*

չել յաղթութիւն զվերագրեալսն ի սմա ։ Կատա-
րեցաւ սուրբ քառարանս ի թուականութեանս
Հայոց ՈԿԳ (1214) ի փառս Աստուծոյ եւ ի նո-
րոգութիւն սուրբ ուխտիս եւ սահմանեցաք
ժառանգութիւն եկեղեցւոյս գեղջս եւ ագա-
րակս իւրեանց սահմանաւքն զԱպահէն, եւ
զԵզնապարածանց եւ զԲճանց եւ զԿանանչա-
ւորն, որ ի Վայոձոր եւ երկու տուն յԱրփա
եւ հաստատեցաք կամակցութեամբ եղբարցս
զաւագ խորանի պատարագ յանուն վերագրե-
լոյս կատարել անխափան ոք այսմ վճռի հա-
կառակ խափանումն առնէ յիշխանաց կամ
յառաջնորդաց տեղւոյս կամ ո ոք եւ իցէ խա-
փանեսցի լոյս նորա առ Քրիստոս եւ դատա-
պարտեսցի յԱստուծոյ» (Տահատ, էջ 88 · Ար-
ցախ, էջ 204 եւն եւն) ։

«Կամաւն Աստուծոյ ես Սմպատ որդի
Վախտանկա շինեցի զդաւիթս եկեղեցւոյս եւ
ետու զՇինածոր իւր սահմանովն եւ զԴոփուն
տափն յեկեղեցիս» (Տահատ, էջ 88) ։

«Էին զօրութեամբ ես Աթանաս որդի Հա-
սանայ կանգնեցի զսուրբ նշանս յիշատակ
հոգո իմո, զոէր Աթանաս յիշեսջիք ի Քրիս-
տոս թիվն ՉԼԲ» (անդ, էջ 89) ։

«Տէր Գրիգորիս սնուցանող սուրբ Աթա-
նասի յիշ ·» (անդ, էջ 89) ։

«Կամաւն Աստուծոյ ես Հասան որդի
Վախտանգայ, տէր Հաթերքու եւ Հանդաբեր-
դու, Խաչէնաբերդու եւ Հաւքաղացին կայի
աւագութեանս ամս Ի · չատ պատերազմա-
յաղթեցի Թշնամեաց իմոց աւդնականու-

թեամբն Աստուծոյ եւ եղեն ինձ Զ. որդի գրերդերս եւ զգաւառս եստ Նոցա եւ ես ի վանս մօր իմ եղբայր պարոն տէր Գրիգորէս եւ եղէ կրօնաւոր եւ բերի զխաչքարս ի յԱղուայ չատ աշխատութեամբ եւ բազում հնարիւք կանգնեցի սուրբ նշան հոգւոյ իմոյ.. ՈԼԱ (1182) թուին» (Արցախ, էջ 204. Տահաղ, էջ 97):

«Ես Մամա թագուհի ամուսին Հասանայ դուստր Կիւրիկայ թագաւորին կացաք աստուածեան ամս Լ. (Խ.) ես եւ այր իմ թողեալ զհայրենիքս որդւոց մերոց եկաք ի վանքս մօտ տէր Գրիգորիս եւ որդի մեր Հոմանուն նորին եւ զգեցաք զձեւ միանձանց եւ կանգնեցի զխաչս յիշատակ հոգւոյ իմոյ...» (Տահաղ, էջ 90. Արցախ, էջ 204):

«Աւգնականութեամբն Աստուծոյ ես Մամքան (Մամա) ամուսին արխականին Հասանայ եւ որդի մեր Գրիգոր տեարք գոլով տեղոյս հայրենեաւք որ եւ մեր պարոնէքն հաստատեցին ի ՉԺԶ թվին տվաք ի սուրբ ուխտս զԾովատեղ, Զաջուռնայ, զՋոլէկանց: Ես Գրիգոր տվի զՋագունայ հողերն զմեր բաժին իւր ձորեցովն որդիք իմ տէր Սարգիսն եւ միաբանք սահմանեցին սուրբ Ստեփանոսի տաւնի ժամն, որ լինի իմ մաւրն եւ ամուսնոյ իմոյ Ասփին... Մոխրարաքս մեր բաժին եւս տվաք սուրբ ուխտս ՉԿԱ»:

«Շնորհիւն Աստուծոյ ես Աչոտ որդի Ամիր Հասանայ ...ած իշխանէն Պռաւշա եւ մայրն իմ Աճիրնի միաբանեցաք սուրբ ուխ-

տխս եւ տվաք… հողն ի Խաչենագետի գլ… սուրբ կաթուղիկէս տէր Աթանաս… տվին ինձ պատարագ զամեն եկեղեցիս թվ. ՁԻ»:

«Կամաւն Աստուծոյ ես Սմպատ իշխան որդի մեծին Լիպարտի միաբանեցայ սուրբ ուխտիս Դիզու վանաց առաջնորդութեամբ տէր Աթանասա զԹոնդաչանց այգին եւ յԵղեգիս իմ գնած Զիթահանքն եւ այլ արդիւնք ըստ կարի եւ զԿանանչաւոր ընդ Եղնայն (°) որ հաստատեցի ամեն խարջոմն անջատ եւ եսու ի սուրբ կաթողիկէս: Տէր Աթանաս եւ այլ միաբանքս սահմանեցին մեզ Զատկին յարութեան կիրակէն աւրն զամեն եկեղեցիքս մեզ ժամ… թուին ՉԺԴ» (Տահաղ, էջ 96):

«Կամաւն Աստուծոյ ես Վախտանգ որդի Սմպատա ծառայի եւ ամուսին իմ Նանա ազախին Քրիստոսի միաբանեցաք Դատէվանայ եւ տուաք ի հայրենեաց մերոց զՃեչաչորենցն եւ այգի մի ի Խոզենիկս եւ մեծածախ մասամբ խաչ մի մեծաւ յուսով եւ բնակիչքս տէր Գրիգորիս եւ միաբանք սահմանեցին մեզ Բ. ժամ զամենայն եկեղեցիքս զատւն Յովաննուն, Անաթին եւ զատւն Վարդանանց Վաղտանգա ՌՂ էր» (Տահաղ, էջ 94), Շահխաթունեան, Ստորագրութիւն, Բ., էջ 597, ուր թուականն է ՌԼԱ):

«Կամաւն Աստուծոյ ես Գոնցէս եւ որդիքս Հասան եւ Վահրամ թոռն Դափանաց տվաք ի Դաղէվանս զմեր հայրենիքն զԽուզիերս սահմանովն խաւովն» (Ջալալեանց, Ճամբ., Բ., էջ 226):

«Ծերդ այս է մահին թիւ(վ)ն ՌՃԺԶ էր, ես անարժան Սողիս գրեցի»:

«Կամաւն Աստուծոյ ես Գրիգոր տնտես հրամանաւ Տեառն Աթանասի եւ կամակցութեամբ այլ եղբարցս գնեցի իմ ընչիւք զԱխսալյարն եւ եւտու յեկեղեցիս եւ խառնեցա ընդ եղբայրութիւն սոցա եւ սահմանեցին ինձ ի տաւնի Երեւման սուրբ խաչին դ. աւր պատարագ»:

«Աստուած ողորմի տէր Եղիէին հոգոյն»:

«Կամաւն Աստուծոյ ես Սամսոն ձենաւոր միաբանեցա սուրբ ուխտիս առաջնորդութեամբ տէր Աթանասի եւտու զՄարուտանց հողն, դ. եզն եւ այլ արդիւնք ի սուրբ կաթուղիկէս եւ սահմանեցին ինձ Բ. աւր ժամ ի տաւնի Սահակայ... ՋԺ»:

«Կամաւն Աստուծոյ ես Սերոբ Ջրվշտկեցի միաբանեցա սուրբ խաչի հաւրայքն մի աւր պատարագ սահմանեցին ի տարին»:

«Աստուած ողորմի Կիրակոսի ամուսնուն, թվ. ՋԻԸ»:

«Քրիստոս Աստուած ողորմի Սարկաւագ, որ եռ ընծա եկեղեցոյս տէր Սգս եւ միաբանքս եւտն Բ. պատարագ ի տարում ի տաւնի սուրբ Թէոդորոսի...»:

«Ես Մամա դուստր Վարդանկա տեառն Հաթերքայ եւտու զիմ հայրենի պէչյգամակ եւ սպասք եկեղեցոյս յոսկո եւ յարծաթո ի սուրբ կաթուղիկէս յառաջնորդութիւն Տեառն Գրիգորիսի եւ սուրբ եղբարքս սահմանեցին

դուռն սուրբ Յակոբայ եւ զկիւրակէն զամէն եկեղեցիքս անխափան ՈՂ»։

«Զուստա Վարդնի որդի Գրիգոր կազմող սուրբ Նշանիս յիշել աղաչեմ ի Քրիստոս»։

«Նկրօղ սուրբ նշանացս զՊօղոս յիշեցէք»։

«...Իմ եղբարքն ետուն ինձ եւ ես կամաւք տուի սուրբ կաթուղիկէս ա. չորեցա հողի չինակնարան ա. ջաղաց ա... անապսիտի չուրջտո պատուական յառաջնորդութեան տէր Գրիգորիսի որդւո Վասակա եւ սորա ետուն ինձ գ. ալր զամենայն եկեղեցիքս»։

«Աստուած ողորմի Սարգսի»։

«Անուամբ Աստուծոյ ես Գրիգոր որդի Հասանա, որ մեծ յուսով տուի ի Դադի գերեզմանս դ. տուն չինակ վասն հոգո իմո յառաջնորդութեան Տեառն Գրիգորիսի եւ սորա տուին ինձ զտուն սրբոյն Գրիգորի... ՈՀԳ»։

«Ես Հասան որդի Գրիգորի... զեան իւր սահմանովն»։

«Ես Սեւադ իշխան որդի Սմպատա եւ ամուսին իմ Թաձերն տուաք ի հայրենեաց մերոց ի Դադի վանս զԿամրջատափ ա. այգեննի Խողենեկուց ի նշխարատունն մեծ յուսով Տեառն Գրիգորիսի, միաբանքս ետու մեզ ր. ժամ զամեն եկեղեցիքս զտուն Տեառնընդառաջին ինձ զԱւագ Հինգշաբաթ ալրն Թաձերին... թիւն ՈՂ»։

«Կամաւն Աստուծոյ ես տէր Ներսէս եպիսկոպոս Զարաբերդոյ միաբանեցայ Դադի վանացն, մին այգին հիւրատանն, տէր Գրի-

գրիս եւ մխարանք սահմանեցին ինձ ի տանի Տեառն Բարսղի Բ. աւր պատարագ... ՁԲ»:

«Խնդքար փաչէս դուստր պարոն Ադբուղին ետու կազմել սուրբ նշաններս»:

«Թվ. ՌԾԴ (1605) Թուղոն երեր»:

«Ես Յովանէս երէց Կոստուցի իմ հալալ արդեամբքս մխարանեցա սուրբ ուխտիս եւ սահմանեցին ինձ ի Յայտնութեան ծրագալուցին ա. պատարագ... ՁԻ» (1271):

«Թվ. ՈՀԳ (1224) ես տէր Գրիգորիս առաջնորդ սուրբ ուխտիս որդի նահատակին Վասակայ շինեցի գժամատունս յիշատակ հոգւոյ իմոյ, յաղաւ...»:

«Այս է հանգիստ Մամքանին ամուսնո դստեր Քրդին եւ Խաւրիշահի մաւր Գրիգորո աղաչեմ յիշել ար. Թվ. Չ» (1251):

«Ս. Աստուածածին Քրիստոս Աստուած ...ես Մամքան դուստր Քրդին եւ Խորիշահի, ամուսին Հասանայ կանգնեցի գխաչս»:

«...Երանեալն եւ Դաղէի եւ Խաղաի աթոռակալն տէր Յոհաննէս եղբայր քաջ զօրականին Հասանա արքայաշնորհ իշխանին հայրն գինվորին Գրիգորո աղաչեմ յիշէք ի բար. Թվ. ՉԾԴ» (1305):

«Ես Գրիգորիս որդի նահատակին Վասակայ առաջնորդ ուխտիս Դաղուի վանաց կանգնեցի գխաչս Մահանին, ընթեռնոյք յաղաւթս յիշեցէք»:

«Թիւ ՈԼ (1181) ես Սարգիս որդի Աշոտա կանգնեցի գխաչս ի փրկութիւն հոգո հանկատեան իմո...»:

«Թ. ՈԼԱ (1182) յիշեցէք. Ես Հասան կանգնեցի զխաչ եղբաւր իմո Վարհամա յադաւթ»:

«Թ. ՈԼԹ (1290) Ես Գրիգորէս որ(դի) Վախտանգա կանգնեցի զխաչս մաւր իմո Տուչկանա, որք երկրպագէք յաղաւթս յիշ.» (Տաշեան, էջ 84—91, 94—97. Ջալալեան, Ճամբ., Բ., էջ 198—205, 220—228. Արցախ, էջ 203—209. Ազգր. Հանդ., ԻԵ., էջ 80 եւն. Շահխաթունեան, Ստորագրութիւն, Բ., էջ 356—364. Նոր Դար, 1893, Թ. 17):

Ջանգակատան վրայ, զոր Դօփեանց Վահրամ իշխանին որդին Սարգիս եպիսկոպոսը շինած է, կայ հետեւեալ կարեւոր արձանագրութիւնը՝ «Կամաւն ամենակալին Աստուծոյ եւ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի այս մեր գիր է իշխանական հրամանի: Ես Տուրսունս, Սէյտխս, Պոաւչս, Գրիգորս, Հասանս, եւ եղբարքս եւ որդիքս մեր զայս հաստատ սիկկիս տուաք տէր Աւագ եպիսկոպոսի եւ իւր եղբայր Մանուէլ աբեղային, որ մեր հայրենի աթոռն զԴատի վանս, զԹաթրի վանս, զԳետամէջն, որ մեր գերեզմանատուն է ի մեր պապունցն մեզ մնացած, վասն սոցա լաւ միաբանութեան համար, զի ի վանօրայքս մարդ չկար, որ յառաջն կար եւ չէն պահէր եւ եկեղեցիքս լուսաւորէր, յայս պատճառէս երես դրաք եւ զայս սուրբ աթոռին ի նոքա ապսպրեցաք եւ զերկու իշխանութիւնն էլ հէնց ի նոցա յանձնեցաք, որպէս առաջին մեծ կաթուղիկոսն մ՛ծ տէր Զաքարիային, տէր

Աթանասին եւ տէր Սարգսին էր տուեալ զԴատի վանս, զՄաթրի վանս, զՀաղբատ իւր վիճակաւն, նոյնպէս եւ այս տէր Գրիգոր կաթուղիկոսն զայս երեք աթոռս հաստատեաց վիճակաւ եւ շրջաբերական թղթիւ»:

«Կամաւն ամենակալին Աստուծոյ ես Սէյտին, որդի պարոն Ծանչին, թոռն պարոն Հասանոյ, ես Գրիգորս, Հասանս, Պէկիս, Այթունս, որդիք պարոն Վահրամայ, թոռունք պարոն Հասանոյ, ես Այտինս որդի պարոն Տուրսունին, թոռն պարոն Աղբուլին, ես Ծահանշէս որդի Հասանոյ թոռն պարոն Ճհանչին, մեք չորս եղբարք տուաք մեր վանորէիցս զԱպահէն, զՄուժ, զՄոզենակս իւր չորս սահմանովն, ի Ջափարին հանդէն Ջաղունանց աղարակ տեղովն, Բանչի այրիւրովն, Թաղանանց գետովն Պետրոսաբակ, որ մեր պապերն տուեալ են, զՍոխանանց, զՃոխատեղն, Ջաջռանց, Ջաւլրէկանց, զՅրանոտն, զԾխմանանց, զԳրիգորաթաղս, զԴատի վանս իւր քաւլակերովն, զՀերանանց, զՀակատակարերդովն, Նաւի այրիւրովն, Բերդաքարովն, Կոտպաշտուցովն, Ողնովն, Մուղենակոյ մեծ այգին, Մանանածովն, Ծաղիկանց, Եգնարածանց, տուաք Աւագ եպիսկոպոսին, որ մեր ճոճաւոր էր, քանի որ իւր պէտքն է վարէ, տասանորդն տանու եւ այս վանքին անպատճառ: Այս եղեւ մեր ուխտ առաջի Աստուծոյ եւ սուրբ Դատի առաքելոյս...» (Արցախ էջ 209):

Յառաջ բերուած արձանագրութիւններէն

*շատ պայծառ կը տեսնուի, որ Դադի վանքը Խաչէնի իշխաններու եւ իշխանուհիներու ստեղծագործութիւնն է եւ անոնց հոգածութեան տարրկան: Այո՛ անոնց ձեռներէցութեամբը հիմնուած, պահպանուած եւ նորոգուած: Անոնց տապանաձեռնութեամբը գիրերով եւ ուրիշ կալուածներով հարստացած: Անոնք իրենց կենդանութեան ատեն դայն պատուած են իրենց այցելութեամբն ու ներկայութեամբ: Մինչեւ անգամ Հասան եւ իր կողակիցը Մամա աշխարհէ կը հրաժարին եւ անոր մէջ կ՚անցնեն գուցէ իրենց ամէնէն հանդարտ օրերը — հաւանաբար իրենց համար շինուած յատուկ կացարանի մէջ (Տահաղ, էջ 90)[3]:*

*(Դադի վանքի մանրամասն նկարագրութիւնը եւ արձանագրութիւնները տեսնել՝ Տահաղ, էջ 83—106 եւ Ազգր. Հանդ. 1913, Իէ., էջ 80—84):*

*Նկատի ունենալով Դադի վանքի գիրքը եւ անոր եկեղեցիներէն ոմանց հնութիւնն ու ոճը՝ կարելի է ըսել՝ թէ հոն արդէն կանխաւ համանուն վանք մը կար եւ ապա Խաչէնի իշխաններու հաճութեամբն ու տապանաձեռնութեամբը նոր եկեղեցի մը շինուեցաւ եւ ուրիշ շէնքեր կառուցուեցան: Այդպէսով վանքը իր խակական արժէքն առաւ: Համակարծիք ենք Մագիստրոսի թէ Արգու խաթունը — վանքի*

*[3] Զուլի՝ մեռած ՇՂԵ թուին՝ «այրեաց եւ գառաքելագիր ուխտ սրբութեանն, որ կոչի Դադուի վանք» (Հայապատում, Բ., էջ 345):*

մեծ բարերարն — անոր եկեղեցւոյն շինութեան առեն իրեն խորհրդական ունեցած ըլլայ Յովհաննէս եպիսկոպոսը, որ Հաղբատի առաջնորդն էր: Նաեւ կրնայ ըլլալ որ անոր առաջարկովը կամ ի յարգանս Հաղբատի Ս. Նշանին՝ Արղու խաթունն իր նորակերտ «Դաղի վանքի կաթուղիկէին սուրբ Խաչ կամ սուրբ Նշան անուն տուեր» է (Տաճատ, էջ 88):

Ձեռնարկու եւ առատաձեռն եղած են Արղու խաթուն[4], Հասան, Մամա, Գրիգոր, Սմբատ եւ ուրիշները (Արցախ, էջ 207) եւ անոնց վաստակութիւնը վայլած ու լաւ գործունէութիւն ունեցած են Դաղի առաջնորդները, մանաւանդ Աթանաս, Սարգիս, Գրիգորիս[5] եւ Գրիգոր[6]:

Անոնք սիրեցին այդ վանքը, անոր սպասը իրենց ուժերը եւ չատերը բախտն ունեցան անոր կամարներուն տակ հանգչելու:

Դատի վանքը եպիսկոպոսանիստ էր եւ զամբանարանը վախթանկեան ցեղին (Արցախ, էջ 205—206):

Այն վանքի մասին որքան չատ են քարի վրայ եղած յիշատակութիւնները, այնքան կարծես սակաւ են թղթի վրայ եղած տեղեկութիւնները: Պետրոս բարունապետի նկատմամբ, որ ժէ. դարուն Դաղի առաջնորդ

[4] Կիր. Գանձակեցին անոր մասին կը գրէ՝ «Եւ ոչ միայն այս եկեղեցւոյս արար ծածկոյթ այլ եւ այլոց ... եւ Դատի վանիցն» (Պատմ., էջ 11):

[5] Գրիգորիս կը ջանայ Դաւիթ Մոլորեցուցիչի խռովութիւնը բառնալ (անդ, էջ 184):

[6] Գրիգոր 1558ին զանազան շինութիւններ եւ նորոգութիւններ կ՚ընէ (Արցախ, էջ 209):

եղած է կան քանի մը յիշատակագրութիւններ (Հմմտ. Արարատ, 1888, էջ 484—485. Ալիշան, Սիսական, էջ 35 [37], Հ. Ն. Ակինեան, Հաւաք. Յիշատ. Հ. Պոտուրեանէն, 1684): Յառաջ բերենք հետեւեալ յիշատակարանը. «Արդ ի ժամանակի յորում գնեցաք զկենսաբուխ սուրբ Աւետարանս, էին կաթողիկոսք ի տանս Աղուանից երջանկափառ հայրապետք զտէր Երեմիայն եւ զտէր Սիմէօնն, զսուրբ աթոռոյն Գանձասարայ եւ զմերումս նահանգի առաջնորդութեան զԴադի վանից եւ զԽադի վանից արհի եւ պանծալի րաբունապետքն զտէր Պետրոսն եւ զտէր Յոհաննէս, զտէր Բարսեղն եւ զտէր Գրիգորն եւ զտէր Աթանասն եւ զտէր Ղազարն եւ զտէր Ստեփաննոսն... Գրեցաւ (աւետարանս) ՌՃԽԳ (1694) թուին Յունիսն ԺԹ. յամսեան ի ժամանակի յորում նորոգէաք զսուրբ աթոռս Խաչէի...» (Լալայեանց, Ցուց. հայ. Ձեռ. Վասպ., էջ 998—1000 [7]):

[7] 1411ին... յեպիսկոպոսութեան նահանգիս սուրբ աթոռոյն Աղդէի (Դադի վանից) տէր Զաքարիայի՝ Ծարի Գետամէջ վանքի մէջ ճաշոց մը կը գրուի (Նօտարք, էջ 39—40): 1684ին Ծարի մէջ ընդ հովանեաւ Դադէի Ս. Առաքելոյն... Վախվախիս Քարոզգիրք մը կը գրէ, իսկ Բարսեղ քահանային (նոյն տարւոյն մէջ) Պետրոս վարդապետը ժողովածու մը նորոգել կու տայ «ի սուրբ եւ ի գերահռչակ Դադէի վանս» (Արար. Հանդ., ԺԲ., էջ 168): Հաւանական է Արտազի Ս. Թադէի վանքը: — 1626ին Վարդան քահանան կու գայ «ի սուրբ յուխտս Դատիվանից» (Թոփճեան, Ցուց. հայ. Ձեռ. Դաղեան Վ.ի, Բ., էջ 32) եւ 1652ին կը յիշուի Ստեփաննոս արքեպիսկոպոս, որ է՝ «սպասաւոր եւ ժրաճան հովիւ ի սուրբ Դատիվանիցն եւ Մարդաղաւնեաց սուրբ Նշանին» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. էջմ. 1626):

*Խօսքի նիւթ եղող այս վանքը կոչուած է Ս. Թադէոսի վանք՝ յանուն Ս. Թադէոս Առաքեալին: Անուանուած է սովորաբար Դադի վանք անոր Դադ աշակերտին անունով: Յորջորջուած է Գոթայ կամ Խօթայ (Խոտա) վանք, վասն զի Խօթ կամ Գօթ գիւղի վանքն է (Ալիշան, Արշալոյս Քրիստոնէութեան ի Հայս, էջ 23. Հայապատում, Ա., էջ 93. Արցախ, էջ 203. Աղուանից Պատմութիւն, Ա., էջ 56 եւ 193. Արարատ, 1896, էջ 42 եւ Նոր Դար, 1893, Թ. 17, ուր կ՚ըսուի՝ «սա շինուած է Խաթայի խանումի ձեռքով. եւ հետեւաբար կոչուած Խաթայի կամ Խօթայի վանք») [8]:*

*«Խոթավանքը այժմ բոլորովին ամայի է, ինչպէս Ջարեքայ վանքը... եւ ծառայում է ուստաւկների կացարան»:*

*«Բազմաթիւ արձանագրութիւններից շատերը կոտրատուել, անհետ կորել են, բայց դարձեալ այնքան են մնացածները, որ որոշ չափով նպաստում են վանքի մոռացած պատմութիւնը վերականգնելու: Դոքա արտագրուած եւ տպագրուած են Սարգիս եպ. Ջա-*

---

*[8] «Արցախի Հաթերք գաւառի Թարթառ գետի աջ կողմը կգտնվի Խոթա վանքը: Այս վանքի սկզբնական շինության թվականը հայտնի չէ, հաճախ նորոգվեր եւ վերաշինվեր է, որով կորել են արձանագրությունները եթե կային: Առաջին անգամ արձանագրություն երեւում է 12րդ դարում: Այսպէս հաջորդաբար հետագային կարելի է այս վանքում գտնել նորոգության կամ վերաշինության արձանագրություններ» (Թորամանեան Թ., Նյութեր հայկ. ճարտարապետութեան պատմութեան, Երեւան 1948, էջ 131):*

յալեանի եւ Մակար եպ. Բարխուդարեանի ձեռքով, Թերի եւ սխալ...» (Ազգր. Հանդ. 1913, էջ 84)։

«Էջմիածնի վանքը պատերազմից առաջ ունէր Ղարաբաղում իր խոշորագոյն կալուածը Խօթավանք կամ Ջարեքդարվանք անունով, որի տարածութիւնն էր 46·000 դեսիատին» (Տաճատ, էջ 83)։ «Ամբողջ կալուածքն կոչվում էր Խոտավանք կամ Ջարեքդարվանք» (անդ, էջ 84)։

## 2. ԽՈԹԱՎԱՆՔ տես ԴԱԴԻ ՎԱՆՔ

## 3. ՁԱՐԵՔԴԱՐԻ ԿԱՄ ՄՇԱՀԱՆԻ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԸ

Դադի վանքէն բաւական հեռու, Թարթառի ձորափին, բլրակի մը վրայ։ «Բաղկացած է չորս մատուռներից, միմիանց կպած ...հասարակ շէնքեր են եւ շինարարական առանձին հետաքրքրութիւն չեն ներկայացնում» (Տաճատ, էջ 98 եւ Արարատ, 1896, էջ 42)։ Ջարեքդարի[9] եկեղեցւոյ մուտքին կանգնուած խաչին վրայ գրուած է «...էր Թւին ես Սեւադա... իմ Շահանդուխտ կանգնեցի... խաչս ի տապանի Գրիգորա իշ...նո

[9] Կոչուած է նաեւ Խօթայ վանք, սակայն լոկ անոր մերձ ըլլալուն պատճառով (Արձագանք, 1886, էջ 577)։ — Ղարաբաղի մէջ Էջմիածնի պատկան ընգարձակ կալուածը (46·000 դեսիատին) իր մէջը եւ շուրջը գտնուած վանքերու անուններովը սէպ անուանուած է եւ շփոթութեան առիթ տուած։ — Համմտ. անոր մասին տես Րաֆֆի, Խամսայի մելիքութիւնները, Վիեննա 1906, էջ 237—238։

որդւոյն հզաւր եւ յաղթող իշխ... որ բազում քաջութեամբ եհար զոտա... եւ չթողին վանից դիտ անրեր... սամէր եւ մեծ պատերազմ որ անկ... ՌՀԿ (?) տաճիկ եւ անդ նահ...»: Անոր գրքի պատին վրայ կայ՝ «Կամաւն Աստուծոյ այս գիր է Նորադինխա որ տվի զփաթլանանց ի կողթապան իմ հոգոյս, առաջնորդ սուրբ ուխտիս Յոհանէս եւ իլ միաբանքս տվին ինձ Բ. աւր ժամ սուրբ Սարգսի, ա. ինձ ու ա. աւրն Խորիշահի. ՅԺԸ հայրապետաց նզոված որ զհողն խլէ կամ հակառակ Աստուածով: Ես Արարխաթուն միաբանեցա սուրբ ուխտիս առաջնորդ Յոհաննէս եւ եղբարքս տվին ինձ Բ. ժամ Հոռոմսիմէ տաւնին»:

«Ես Մամա խաթուն միաբանեցայ սուրբ ուխտիս առաջնորդ Յովհաննէս եւ եղբարքս տուին Բ. ժամ»:

«Ես տէր Յովանէս եւ այլ եղբարքս զեկեղեցիքս ուրբաթ աւր հասարակաց հաստատեցաք ՅԺԸից նզոված ով խափանէ»:

«Կամաւն Աստուծոյ ես Խորիշահ ամուսին Զաքարո տուի զիմ աւետարան Աստուածածինս որ եւ այլ միաբանքս Բ. աւր պատարագ տուին ինձ Աւետե(այ)ց Աստուածածնի»:

«Աստուծով ես Մլեհ տուի զիմ գնած հողն եւ մի Ջափարին ի սուրբ ուխտս, միաբանքն տուին սուրբ Յակովբի երկու ժամն, մէկն ինձ, մէկ Փուփին, ով խափանէ կամ զհող խլէ, նզոված է յԱստուծոյ»:

*Թ. ՈԱ. Ես ծորճ կանդնեցի զխաչս եղ-բաւր իմ Զարբադայի բարեխաւս»* (*Ջալա-լեան, ճան., Բ., էջ* 228—229. *Արցախ, էջ* 211. *Ազգր. Հանդ.* 1913, *ԻԵ., էջ* 76—78. *Տահադ, էջ* 98):

*Տէր Մովսէսեան կը հարցնէ թէ ուսկէ՞ Ջալալեան եւ Բարխուդարեան Զարեքդարի անունը Մշահանայ վանք կնքած են* (*Տա-հադ, էջ* 98): *Արձանագրութիւնները պար-զապէս Ս. Աստուածածնի վանք կը կոչեն:*

*Զարեքդարի վանքը ԺԲ.—ԺԳ. դարու հաստատութիւն մը կը թուի ըլլալ: Վանա-հայր առաջնորդներէն արձանագրութիւնները կը յիշեն տէր Յովհաննէս:*

*Ունեցած է առատ հող* (*Արարատ*, 1896, *էջ* 42—43. *հմմտ. եւ Ազգր. Հանդ., ԻԵ., էջ* 759:

4. ՇՈԽՔԱՑ ՎԱՆՔԸ

*Աստղաբլուրի եւ Թարթառ գետի մօտերն է այս վանքը, որ թանձր անտառի մը մէջ շինուած է եւ արդէն աւերակի վերածուած* (*Արցախ, էջ* 201):

Ե.

## ՋՐԱԲԵՐԴԻ ԵՒ ԿԻԻԼԻՍՏԱՆԻ ՎԱՆՔԵՐԸ

*Ջրաբերդի գաւառը — միացած՝ կոչուած եւ Գիւլիստան (Կիւլիստան) Մեծ-կողմանք, Մեծկուանք, Ջարաբերդ, Թալիշ ու արդ՝ Ջուանշիր — կ՚իյնայ Մռաւ բարձր լեռնաշղթայի, Դաշտաբերանի, Թըղի եւ Թարթառ գետերու ձախ եւ Կուրակ գետակի աջ ափերուն մէջ:*

### 1. ԱՄԵՆԱՓՐԿԻՉ ՎԱՆՔԸ ԿԱՄ ԱՆԱՊԱՏԸ

*Կիւլիստանի վանքն է այս: Անուորայ վտակի ձախ ափին մօտ: Կառուցուած՝ անտաշ քարով: Ունի մէկ մեծ եւ երկու փոքր խորան, երկու խորհրդարան, երկու լուսամուտ եւ դուռ մը: Երկար է 23·50 մետր եւ լայն՝ 10 մետր: Ունեցած է միաբաններու յատուկ սենեակներ, որոնք արդէն գրեթէ աւերակ են: Թաղակապ սենեակի մը մուտքին սեմին վրայ գրուած է՝ «Թիւ ՌՃԿԴ յիշատակ է այս օթարս Եղիա վարդապետին»: Անապատին գաւիթին մէջ թաղուած է նաեւ Պետրոս Մեծին ներկայացած Պետրոս Իւզբաշին» (Արցախ, էջ 242. Ազգր. Հանդ., 1899, Ե., էջ 348. Լումայ, 1896, էջ 203.*

*Նոր Դար, Է. տարի, Թ. 132. Հ. Էփրիկեան Բնաշխ. Բառարան, Ա., էջ 137)։*

## 2. Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԸ

*Ծանօթ հետեւեալ յիշատակագրութենէն՝ «(Աւետարան գրեալ ի թվ. ՌՃԼԱ) ի հայրապետութեան Աղուանից Տեառն Սիմէօնի եւ Երեմիայ կաթողիկոսաց, ի թագաւորութեան կարմրագլխաց Շահ Սուլէյմանին, ի դատաւորութեան քաղաքիս Գանձու Ապագղուլոյ եւ յարքեպիսկոպոսութեան սրբոյ աթոռոյն Եղիշէի առաքելոյն Յովհաննու Մեծիգեղոյ եւ յանապատիս, որ եմք Ս. Աստուածածնի, որ է մերձ սրբոց Երից Մանկանց եւ յերկիրս Զարաբերդու։ Գրիչ՝ Յովսէփ քահանայ։ Ստացող Մարիամ կին Սարգսի, որ նուիրէ ի սուրբ անապատն Աստուածածնի, որ մերձ սրբոց Երից Մանկանց» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. Հ. Պոտուրեանէն)։*

## 3. ԴԱՏԻ-ԲԷԿԱՆՑ ՎԱՆՔԸ

*Կիսաւեր վանք մը Ինջա գետի աջ ափին եւ Կիւլատան գիւղի ներքեւ։ Եղած է դամբանարան (Արցախ, էջ 243 եւ Ազգր. Հանդ. 1899, Ե., էջ 348)։*

## 4. ԵՂԻՇԷ ԱՌԱՔԵԱԼԻ ԿԱՄ ՋՐՎՇՏԻԿԻ ԿԱՄ ՄԻՀՐ-ՆԵՐՍԷՀԵԱՑ ՎԱՆՔԸ

*«Մռաւ սարի քղանցքներից մի լեռնաբազուկ յանկարծ խոնարհուած է բարձրից երկու ձորի մէջ, ուր եւ կազմած է իւր ծայ-*

րից մի բլրակ, որի վերայ հիմնարկուած է վանքս։ Սրբավայրս շրջապատուած է աղխաղխեալ եւ բարձրագոյն լեռներով եւ անդնդախոր ձորերով եւ սոսկալի կիրճերով. վասն որոյ նեղ է եւ սեղմուած է իւր հորիզոնն» (Արցախ, էջ 234)։

Անտաշ քարերով շինուած վանք է եւ ունի հասարակ ճարտարապետութիւն, չափազանց բարձրութիւն եւ անճաշակ ոճ։ Ունի երկու դուռ, 10 մ. երկարութիւն, 5·80 մ. լայնութիւն, «ութ հատ փոքրիկ մատուռներ... մի շարքում, միմեանց շատ մօտիկ, ամէնքն ալ հասարակ աղքատ շինութիւններ են» (Լէօ, Իմ յիշատակարանը, էջ 296· Արցախ, էջ 234· հմմտ. Հ. Ս. Էփրիկեան, Բնաշխ. Բառարան, Ա., էջ 677)։

Վանքին ձեղունն եւ խորանին արեւելեան պատը խոնարհած են։ Աննախանձելի վիճակի մէջ են նմանապէս գաւիթն ու գամբանարանը։

Եղիշէի վանքին մէջ կան հետեւեալ արձանագրութիւնները՝

«Թւ. ՋԺԳ. Կամաւն Աստուծոյ ես Խաչատուր շինեցի ժամատունս յառաջնորդութեան տէր Սիմէօնի, աղաչեմ զձեզ յիշեցէք ի Քրիստոս»։

«Այս է հանգիստ տէր Սիմէօնի ՁԽԷ»։

«Այս է հանգիստ տէր Ովանէսի ի Թվ. ՊՋ»։

«Այս է հանգիստ տէր Վարդանի Ծ. Քս. ՋԽ»։

«Այս է հանգիստ Մատէոս եպիսկոպոսին, որ է առաջնորդ սուրբ ուխտիս, որ անմեղ սպանեցին Օսմանցիք, ՌԾ ։

«Այս ի հանգիստ Վաչական Թադաւորին, Աստուած ողորմի հայրապետաց եւ որք ծնողացն, որ շինեց զեկեղեցիս առաջնորդութիւն տէր Սիմէոնի, Թվ. ՉԼԵ էր»։

«Այս է հանգիստ տէր Մեսրոպին որդի որ է աւագ եղբայր Մելքիսեթ եպիսկոպոսին Թվ. ՌԾԿԲ»։

«Յանուն Աստուծոյ ես Առաքել վարդապետ, տէր Մատթէոս շինեցինք զեկեղեցիս համ բերինք»։

«Յիշատակ է զանգակս Ղազարին, որ է որդի Քիրիգորին, է Թոռն Եաւրին, Յուսեփի որդի Պապէն, որ է Պօղոս Թուլղէր, ես Ծահնա կարմրեցի. գինն է Գ. Թուման»։

«ՐԾՅԾ ես Տոնմադս բեկեցի. Թվ. ՌԾՀԷ»։

«Կամաւն Աստուծոյ ես Գրիգոր շինեցի Զուտապատոյ եկեղեցին, գնեցի զաւետարան, Քերթ հողն ընծայեցի. սուրբ ուխտիս առաջնորդ տէր Սիմէօն եւ միաբանքս երկու ժամ տուին Համբարձման»։

«Աստուծով ես Սերովբ քահանայ երեք գիրք ետու, սուրբ ուխտիս առաջնորդ տէր Սիմէօն եւ միաբանք ը. պատարագ ետուն ի տանի Բարսղի»։

«Ես Դաւիթ եւ ամուսինն իմ միաբանեցաք սուրբ ուխտիս եւ տուաք զխաչն. երեք

պատարագ առնեն մեզ ի տօնի առաքելոց»։ «Հասան, Սմբատ, Վահրամ»։

«Աստուած ողորմի հայրապետաց եւ այլ ծնողաց, որ շինեաց գեկեղեցիս առաջնորդութեամբ տէր Սիմէոնին»։

«Ես Սերուբս սարկաւագ ի սուրբ ուխտիս շինեցի զսուրբ առաքեալ ի վերայ հիման առաջնոյ. յաղաւթս ձեր յիշեցէք»։

«Աստուծով ես Առաքեալ վարդապետս եւ Թէոդորոս իշխանի որդի Ջահան շինեցաք զեկեղեցիս եւ զժամատունս յիշատակ մեզ եւ ծնողաց մերոց» (Հմմտ. վերը, Արցախ, էջ 235—237. Ջալալեան, Ճանապարհորդութիւն, Ա., էջ 176—177. Շահխաթունեան, Ստորագրութիւն, Բ., էջ 379)։

Եղիշէի վանքը Աղուանքի հին վանքերէն է։ «Աւանդութեամբ ասում են որ վանքս հիմնարկուած է նոյն բարեպաշտ Վաչական Գ. Թագաւորից» (Արցախ, էջ 428)։ Հոս կ՚ամփոփուին Եղիշէ առաքեալի մասունքները, որոնք կանխաւ Ուռեկան կամ Հիւրիկայ դրուած էին (Տաշեան Հ. Յ., Մայր Ցուց., էջ 29, 60. Կաղանկատուացի, Պատմ. Աղուանից, էջ 19. Հ. Ղ. Ինճիճեան, Ստորագրութիւն, էջ 535—536)։ Այդ ժամանակէն մենաստանը կը կոչուի Եղիշէ Առաքեալի վանք, մինչ յառաջագոյն կ՚անուանուէր Միհր Ներսէհեայ վանք (Օրբէլեան, Պատմ., էջ 159) կամ Ներսմերհայ վանք (Կաղանկատուացի, անդ, էջ 19) եւ ապա Ջրվշտիկ (անդ, էջ 19),

*գոր Ջալալեան կը ստուգաբանէ՝ «Ջուր միշտ եկ» (Ջամբ․, Ա․, էջ 175)։*

*Եղիշէ Առաքեալի վանքը սիրով կ'ընդունի Մաքենոցաց ուխտի միաբաններէն մաս մը, որ թշնամիին ապստամբութենէն տառապած՝ հոն կու գայ ապաստանելու (Օրբէլեան, անդ, էջ 119)։ Ժամանակ մը կ'ըլլայ Աղուանները կաթողիկոսներու բնակավայրն ու գահը։*

*Անոր առաջնորդներէն են[1]՝*

*Սիմէոն, որ շինարարութեամբ կը զբաղի եւ ՉԽԷ թուականին կը մեռնի[2].*

*Յովհաննէս, որ ՊՋ թուականին կը մահանայ.*

*Վարդան, որ ՋԽ թուականին կը վախճանի.*

*Մատթէոս, որ մատուռ մը կը կանգնէ ու ՋՁ թուին կը մեռնի.*

*Կարապետ եւ Դաւիթ եպիսկոպոսները, որոնց օրով Աւետարան մը կը գրուի[3].*

*Մելքիսեդ, որ ՌԾ թուականին Թրքերէն կը սպաննուի. անոր Մեսրոպ եղբայրն ալ Եղիշէի վանքի մէջ թաղուած է։*

*Կիրակոս, որ Փիլիպպոս կաթողիկոսէն կոնդակով մը առաջնորդ կը նշանակուի եւ կը*

---

[1] *Հմմտ․ ուրիշ առաջնորդներ՝ վերը եւ վարը։*
[2] *Անոր օրով Խաչատուր կը շինէ ժամատունը (Հմմտ․ վերը)։*
[3] *Հմմտ․ Սմբատեան Երնջակ, էջ 146. Հմմտ․ եւ ասա էջ 122։*

դնահատուի: Սոյն կոնդակին մէջ վանքին պատկանած հողերը կը յիշուին[4]:

Կարապետ որ (հաւանականօրէն 1644ին գրուած) Թարոգգրքի մը մէջ կը յիշուի (Conybeare, Cath. Brit. mus. էջ 193):

Եւ Յովհաննէս, 1882ին (հմմտ. աստ էջ 123):

Այս շրջանէն առաջնորդներու համար հետեւեալ կարեւոր յիշատակութիւնն ունինք՝ «Արդ յիշեցէք զնորոգող սուրբ Աւետարանիս զՅովհաննէս եպիսկոպոսն, որ ետ զսա նորոգել յիշատակ իւրն եւ հօրեղբարցն եւ ամենայն արեան մերձաւորացն Մանուէլ եպիսկոպոսին, տէր Ալէքսանոս եպիսկոպոսին, տէր Մարտիրոս եպիսկոպոսին, տէր Յովհաննէս արեղին, տէր Մարտիրոս արեղին, տէր Սար–

---

[4] «Հացէ գիր աւրհնութեան եւ նամակ աւրհնութեան... ի վերայ սուրբ Եղիշէի առաքելոյ վանից... եւ վիճակի սեպհական ժողովրդեան իւրաքանչիւր գեղջ Հաթերքու, Ականու, Ջանկաթաղու, Կուլաթաղայ, Մոխրաթաղու, Կիսապատու, Մեծշինու, Մահմնու, Մալատկանու, Զարդախին, Վերին Ծնաթաղու, Ափիտուշա, Սահլապատայ, Թըթուտին, Ուղտականկայ, Կօկթափին, Եղակերու, Ծակատաչինու Վանքին, Գետաչինու, Սլուքեցւոյ, Բաղշինու, Մրգնու, Համիշինու, Փօշկայ, Հատեսու, Խիրլօղայ, Մերգիկուայ, Ոսկանապատի, ...Ցնծահալայ, Գետամիջու, Համաարապակայ եկեղեցեաց քահանայից. ծաներուք վերոգրեալ սուրբ Եղիշէի առաքելոյ վանից առհասարակ սեպհական քահանայք եւ ժողովուրդք, զի մեր ճշմարտապէս լուեալ եւ ականատես իսկ եղեալ վանից ձերոյ խաւար եւ աւեր մնալոյն եւ մանաւանդ թէ զձեզ եւս տեսեալ այդպէս առանց հովուի եւ առաջնորդի... այսօր առ ձեզ խոստացաք տալ ձեզ հովիւ եւ առաջնորդ զհոգեւոր բաղուկ իմ եւ նեցուկ սրտիս զտէր Կիրակոս վարդապետն, հաւանութեամբ ձերով եւ խնդրուածովք...» (Արցախ, էջ 48—49):

գիս երէցին եւ տէր Թորոսին եւ պապն իմ Յոհանին եւ հայրն իմ Մարտիրոսին, մօրն իմ Մարգարիտին եւ եղբօրն իմ Յոհանին, այլ կրկին յիշեցէք գիս զՅովանէս եպիսկոպոս եւ զմերոյ գրեալքս ի սմա, որ են ազգականք իմ ստացող սուրբ Աւետարանիս եւ գրող սորա Մանուէլ արքեպիսկոպոս: Եւ գրեալքն ի հետ սորա յառաջնորդ սուրբ ուխտիս Եղիշա սուրբ Առաքելիս:

...Նորոգեցաւ ձեռամբ Կիրակոս մեղաւորի ի գաւառս Դիզակ, ի գիւղս Թիղաւխ ընդ հովանեաւ սուրբ Սարգիս եկեղեցո թվ. ՌՁԳ (1634) ի վայելումն Յովհաննէս եպիսկոպոսին. ամէն» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. Երեւան, 958):

Անկէ յառաջ՝

1554ին «...Յառաջնորդութեան սուրբ Աթոռոյն Եղիշէ Առաքելոյն Կարապետ եւ Դաւիթ եպիսկոպոսաց եւ այլ միաբանացս» կը գրուի աւետարան մը (Սմբատեան, Երնջակ, էջ 146):

«Փառք... Արդ գրեցաւ սուրբ գիրքս... ի թուականիս Հայոց ՌՃ եւ Լ ամին (1681) ամին: Եւ գրեցաւ սա (Մաշթոցս) ի յերկիրս Զարաբերդ ընդ հովանեաւ սուրբ առաքելոյս Եղիշէի եւ այլ սրբութեանցս որ աստ կան հաւաքեալ եւ եկեղեցիք յանուն նոցա շինեալ: Զսուրբ Աստուածածինն որ է աւագ եկեղեցին: Զսուրբ Կարապետն: Զսուրբ Սարգիսն: Զաւագ սուրբ Նշանն: Եւ գլխէ արեան Զաքարեայի: Ի հայրապետութեան Տեառն Երե–

մխաց սրբազան կաթուղիկոսի եւ մերոյ առաջնորդի սուրբ ուխտիս Եղիշէի առաքելոյս Ջրվիժակայ Յոհան եպիսկոպոսի Մեծչինեցոյ...» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. Ձեռ. Երեւան Թ. 476) :

1682ին «յարքեպիսկոպոսութեան սրբոյ աթոռոյն Եղիշէի առաքելոյն՝ Յովհաննու Մեծիփեցոյ» Յովսէփ քահանան Աւետարան մը կը գրէ (Հ. Ն. Ակինեան, Հաւաք. Յիշատ. Հ. Պատուրեանէ Թ. 1580—1658) :

Ասոնցմէ առաջ կը յիշուի «Կոստանդ մահդասի յուսարար Եղիշէի սուրբ Առաքելոյն (հմմտ. աստ Երից Մանկանց վանքը), իսկ «ի գաւառէն Եղիշէ Առաքելոյն Ջրվշակայ» էր Խաչատուր վարդապետը (Արցախ, էջ 268—269) :

Ինչպէս արձանագրութիւնները կը հաւաստեն Եղիշէ առաքեալի վանքը շատ սիրուած էր եւ շատերը կ՚օժանդակէին անոր մատուռներու շինութեան եւ նորոգութեան : Քանի մը ձեռագիր 1607ին «Ս. Եղիշէայ» վանքին կը տրուին (անդ, էջ 268) եւ Աւետարան մըն ալ «ձեռամբ գերիմաստ եւ յոգնահանճար եւ մեծի Աւագ քաջաջան վարդապետին» (անդ, էջ 261 եւ Արձագանք, 1886, էջ 280) : Աւագ վարդապետը, կոչուած Դալի-Մահրասայ, Եղիշէ վանքի քաջարի միաբանն է (Լումայ, 1896, էջ 216. Րաֆֆի, Խամսայի մելիքութիւնները, էջ 65 եւն) :

Այցելուած ուխտավայր էր. չէ՞ որ հոն էին Ագուանքի առաքեալին մասունքները,

*շատ մը կաթողիկոսներու աճիւնները· հոն թաղուած էին Վաչագան, մելիք Ադամ եւ ուրիշ քաջեր եւ հոն գործած էր Աւագ վարդապետը (Նոր Դար,* 1893, *թ.* 118, 1897, *թ.* 203· *Գործք,* 1882, *էջ* 82· *Րաֆֆի, Խամսայի մելիքութիւնները, էջ* 288· *Լէօ, Իմ յիշատակարանը, էջ* 298· *Մասիս,* 1889, *թ.* 3931, *էջ* 129—135· *Ծոցիկեան, Արարատ-կովկաս, Բ., Փարիզ, էջ* 286 *եւն եւն*):

*Ունեցած է շատ հող եւ ինչք* (*Արձագանք,* 1886, *էջ* 578· *Լումայ,* 1896, *էջ* 220), *սակայն անհոգութեան պատճառով անոնցմէ զրկուած եւ խեղճութեան մատնուած* (*Արարատ,* 1896, *էջ* 44· *Արշ. Արարատեան,* 1863, *թ.* 701):

*«Եղիշէի վանքը, ինչպէս տեսնում էք, եղել է մի կենդրոն, մի հռչակաւոր սրբավայր, ուր շուրջ են հաւաքուել թագաւորներ, իշխաններ, բարձրաստիճան հոգեւորականներ: Այդ մասին վկայում են նաեւ ուրիշ շինութիւններ: Վանքի հնութիւններից ուշադրութեան արժանի է հին զանգակը, որ նոր գտնուել է հողի մէջ ծածկուած»* (*Լէօ, Իմ յիշատակարանը, Շուշի,* 1890, *էջ* 299):

### 5. ԵՐԻՑ ՄԱՆԿԱՆՑ ՎԱՆՔԸ

*«Վանքս շինուած է Մռաւ սարից դէպի արեւելք խոնարհուած մի լեռնաբազկի հարաւահայեաց լանջի հարթակին վրայ, որի ստորոտով սրընթաց խոխոջում է Թողին գե-*

տակն, որ է օժանդակ Թարթառի» (Արցախ, էջ 232. Արարատ, 1871, էջ 442)։ Կուսական թանձր անտառներով շրջապատուած է եւ արեւելեան ու արեւմտեան կողմերէն կը նայի Թրդու ձորին (Լէօ, Իմ յիշատակարանը, էջ 272. Հմմտ. Էփրիկեան Հ. Ս., Բնաշխ. Բառարան, Ա., էջ 710)։

Կառուցուած է չորս սիւներու վրայ, փոքր գիրքով եւ անճաշակ ոճով։ Դրան ճակատակալ քարին վրայ գրուած է՝ «Ի թուին ՌՃԾին, ի ժամանակս Շահ Սուլէյմանին մեծի արքային Պարսից եւ Սիմէօն շնորհին Աստուծոյ կաթողիկոս Աղուանից շինեցի զեկեղեցիս ընդ հարազատ եղբաւրն իմոյ Իգնատիոս վարդապետին, որ եմք որդիք Սարգիս քահանային Մեծշինացւոյ, յաղաւթս յիշեցէք որդիք Նոր Սիոնի»,

Իսկ խորանին ճակատին վրայ կարելի է կարդալ՝ «Կերտեցաւ այս յարկ նուիրանաց տանն Աստուծոյ... շինեցաւ յերկուց հարազատաց Սիմէօնի կաթուղիկոսի եւ Իգնատիոսի բարունւոյ եւ այլ յուղունց աշխատողաց... ի թուականիս ՌՃԺԳին աւարտեցաւ սոյն եկեղեցի» (Արցախ, էջ 232. Ջալալեանց, Ճանապարհորդութիւն, Ա., էջ 178—179. Լէօ, Իմ յիշատակարանը, էջ 275)։

Աջակողմեան որմին վրայ կայ՝ «Ծինաւղ եւ վարդապետ եկեղեցւոյս ուստայ Սարգիսն յիշեցէք ի Քրիստոս» եւ ասոր մերձ՝ «Աստուածասիրաց եւ ողորմածաց ի վերայ պատուական նշխարաց սրբոյ Դանիէլի մարգա—

ըէին եւ Երից մանկանց, որք աստ կան եւ
առնեն մեծամեծ հրաշագործութիւնս, ա-
ռանոր չինեցաւ սա ի փրկութիւն մեզ...»
(Ջալալեան, Ճանապարհորդութիւն, Ա.,
էջ 179)։

Երից Մանկանց վանքը ունի երկու քա-
րուկիր եւ Թաղակապ խուց, մին՝ փոքր եւ
միւսը՝ մեծ։ Դարձեալ միաբանները սե-
նեակներ, բայց փայտաշէն (Արարատ, 1896,
էջ 44)։

Եղած է կաթողիկոսանիստ (հմմտ. Գան-
ձասարի վանքը եւ Արձագանք, 1886, էջ 96.
Արարատ, 1896, էջ 44 եւ Րաֆֆի, Խամսայի
մելիքութիւնները, էջ 91)։

Եսայի (1619ին գրուած) Լամբրոնացիին
գրութիւնները «վախմ» կու տայ Երից Ման-
կանց վանքին[5] (Աճառեան, Ցուց. հայ. Ձեռ.
Թաւրիզի, էջ 81), ուր Իգնատիոս վարդա-
պետը 1661ին Խորենացիին Հայոց պատմու-
թիւնը կը գրէր (Թօփճեան, Ցուց. հայ. Ձեռ.
Դատեան Վ.ի, էջ 100)։ Անոր 1725ին Ալլահ-
վերտի Պանազուրցին աւետարան մը, չուր-

---

[5] 1580ին գրուած Աւետարանի մը վերջը կայ՝ «Կամաւն Աստուծոյ Կոստանդ մահդասիս տուայ սուրբ Աւետարանս ի հալալ ընչից մերոց իմ կամաւորութեամբ եւ ավի իմ հոգոյ որդոյն աէր Ուստաքէսին... եւ Կոստանդ մահդասիս, լուսարար Եղիշէի սուրբ առաքելոյն եւ ավեալ իմ աւետարանիս գինն առաջի Աստուծոյ աէր Մարկոսին ԺԲ մառչիլ, ա ֆեթակ եայ տաւոյ արաւ ավի Ե խոն ըիրինձ ա չուխայ, էլ մին ֆեթակ՝ սուրբ երեք Մանկունքն. վկայ է Իգնատիոս եպիսկոպոս վկայ է, աէր Ակոբն վկայ է, Ոսկան եպիսկոպոս վկայ» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. էջմ. 2538)։

ջուր մը եւ թաղ մը «վախմ» կ՚ընէ (Արցախ, էջ 43)։

Մոլութեանց եւ Առաքինութեանց գրքին յիշատակագրութեան մէջ կայ՝ «Պաշընջաղեցի Աբրահամ վարդապետս Տեառն սրբազան Ներսէսին գրագիր էի ՌԲՃ թուին ի յայտնութեան որ եպիսկոպոս ձեռնադրեցաւ ՌԲՃԱ ի Հոգ ԺԱՆ էր Աթանաս ծայրագոյն եպիսկոպոսն եւ Սարգիս եպիսկոպոսքն վկայք են ի դրան սուրբ Երից մանկանց։ Նոյնպէս եւ ես սրբազան կաթողիկոսին Իսրայելի անարժան նոտար Ստեփաննոս վարդապետս թվին ՌՄԾԹ. յուլ. ԺԸ. ի վանս Երից սուրբ Մանկանցն ձեռամբ սրբազան վեհին խմոյ եպիսկոպոս օծայ» (Թօփճեան, անդ, էջ 70)։

Երից Մանկանց վանքը, որ նաեւ Դալի վանք կոչուած է, շատ սիրուած ուխտատեղի էր եւ ընդարձակ կալուածներու տիրացած (Լէօ, Իմ յիշատակարանը, էջ 274—275, Արձագանք, 1888, էջ 578. Արարատ, 1896, էջ 44)։

## 6. ԻՆՆ-ՄԱՍԻ ԱՆԱՊԱՏԸ

Հիմնուած է Կուսապատի հիւսիսային կողմը։ «Կառուցեալ է սրբատաշ քարով մի կամարի վերայ, որ ունի եկեղեցու եւ ոչ վանքի ձեւ» (Արցախ, էջ 217)։ Թէպէտ հիւսիսային պատին արձանագրութիւնը համաձայն «Ի 1881 ամի շինեցաւ սուրբ ուխտս Իննմասանց տրօք ժողովրդոց ի ժամանակս Յով-

սէփ վարդապետի Փինաչեանց», բայց չէնքէն դատելով աւելի հին ըլլալու է եւ այդ շրջանին վերանորոգուած :

«Անապատս ունի երեք սենեակ եւ մի աշխարհական վանահայր» (Արցախ, էջ 217) : Մէլիք–Իսրայէլեաններէն ոմանք հոն թաղուած են : Սիրուած ուխտավայր էր եւ ունէր անտառ ու հող (Րաֆֆի, Խամսայի մելիքութիւնները, Գ. տպ., էջ 15, 289· Լումայ, 1896, էջ 225· Արձագանք, 1886, էջ 578) :

## 7· ԻՐԵՔ ՄԱՆԿՈՒՆՔԻ ՎԱՆՔԸ

Աւերակ վանք մը Ներքին–Շէնի մերձ : Արեւմտեան եւ հիւսիսային պատերը միայն կանգուն (Արցախ, էջ 246) ;

## 8· ԿՈՂԵՐԻ ՎԱՆՔԸ

«Կողեր անուանեալ տեղում կայ մի աւերակ վանք, որից մնացած է միայն արեւմտեան պատն ու հիմքերը· այս տեղ կայ եւ հին հանգստարան» (Արցախ, էջ 244) :

## 9· Ս· ՄԻՆԱՍԻ ՎԱՆՔԸ

Ջրաբերդի Բողլուխ գիւղի մօտ կը գտնուի սուրբ Մինաս անուն ուխտավայր մը, որ ժամանակին կրնայ վանք եղած ըլլալ (Արցախ, էջ 251· Էփրիկեան, Բնաշխ. Բառարան, Ա., էջ 427) :

## 10· ՀԻՆ ՂԱՐԱ–ԲՈՒԼԱՂ ԳԻՒՂԻ ԱՆԱՊԱՏՆ ՈՒ ԵՐԿՈՒ ՎԱՆՔԵՐԸ

*Հին Ղարա–Բուլաղի մօտ կը ցուցուի մատուռ մը, զոր ժողովուրդը անապատ կ'անուանէ եւ Միջի ու Երի վանք կը կոչէ գիւղին մերձ գտնուած եկեղեցի մը եւ տաճար մը։ Վերջինիս մէջ թաղուած է Գանձակի Գրիգոր եպիսկոպոսը (Արցախ, էջ 254—255)։*

## 11· ՀՈՌԵԿԱՑ ԿԱՄ ՀԻՒՐԻԿԱՑ ՎԱՆՔԸ ԿԱՄ ՅՈՒՐԵԿԱՑ ՎԱՆՔԸ

*Բարձրացած է Թալիշ գիւղի արեւմտեան կողմը, լեռներու մէջ։ «Վանացս շինութիւնն ունի շատ հին ձեւ, քանզի խորանն ըստ սովորութեան կլոր չէ, այլ քառակուսի եւ շինուած է անտաշ քարերով» (Արցախ, էջ 228—229)։ Մութ եւ փոքր է։ Գաւիթն եւս անտաշ քարով շինուած է։*

*ՉԻԸ թուականին կառուցուած է՝ «ի Քահանայապետութեան Ստեփաննոսի, զշինող եկեղեցւոյս զտէր Յովհաննէս յիշեցէք ի Քրիստոս, նաեւ զծնողսն եւ զեղբարսն իւր, Թւ. ՉԻԸ»։ Գաւիթին վրայ արձանագրուած է՝ «Յաշխարհակալ տէրութեան Ապաղա խանին եւ ի հայրապետութեան տէր Ստեփաննոսին եւ ի պարոնութեան Նորադինին եւ Սրադինին եւ Գուրգուդինին, ես տէր Յովհաննէս շինեցի զգաւիթս յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց ՉԼԳ» (Արցախ, էջ 229· Ջալալեան, Ճամբ., Ա., էջ 174)։*

*Սոյն գաւիթին մէջ ամփոփուած են չատ մը եպիսկոպոսներու եւ վարդապետներու մարմինները, իսկ անոր շրջապատին մէջ գետեղուած են աճիւնները Մէլիք–Բէգլարեաններու, մխարաններու եւ Թալիշ գիւղի բնակիչներու:*

*Մխարաններու սենեակներէն քանի մը հատը դեռ կանգուն են (Արցախ, էջ 229):*

*Ծանօթ է հետեւեալ յիշատակագրութիւնը՝ «Յիշատակ է այս Քարոզգիրքս Մեծշինացի տէր Մելքիսեթի որդի Սողոմոն վարդապետին. գրեցաւ առ դրան Յուրեկայ*[6]*, աշակերտ նորին տիրացու Յովհաննէս... թվ. ՌՄԼՁ Մայիս Դ. եր» (Բարխուդարեան, Ազուանից երկիր եւ դրացիք, էջ 192):*

12. ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻ ՀԱՆԳՍՏԱՐԱՆԻ ՎԱՆՔԸ

*Մաղաւուզի արեւմտեան կողմը. Թարթառ գետի աջ լանջի բարձրութեան վրայ կայ հանգստարան մը, որ Մայրաքաղաքի հանգստարան կոչուած է: Այժմ ուխտատեղի, բայց անհաւանական չէ որ երբեմն վանք եղած ըլլայ: Առաջնորդներէն կը յիշուի տէր Սուքիաս (Արցախ, էջ 222):*

---

6 *Ջալալեան արժանահաւատ անձերէ կը տեղեկանայ թէ «անուն եկեղեցւոյս չէ Հոռեկ այլ Հիւրեկ» (Ճամբ., Ա., էջ 174): Հմմտ. ստ էջ 70՝ Հոռեկայ առաջնորդ՝ Ազարիա:*

Զ.

## ԳԱՐԴՄԱՆԻ ՎԱՆՔԵՐԸ

*Գարդմանի գաւառը — կոչուած նմանապէս Գարդմանայ ձոր, Գարթմանիկ եւ այժմ՝ Գանձակ — կ՚իյնայ Կուրակ եւ Շամքոր գետակներու, Դաշտաբերանի եւ Մռաւ լեռնաշղթայի գագաթնադծի չարունակութեանը մէջ:*

### 1. Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԸ

*Ոսկանապատ գիւղի վերի ծայրը, Գանձակ գետի ձախ ափին: Կամարաչէն: Աւելի եկեղեցւոյ ձեւ ունի քան թէ վանքի: Միաբաններու բնակարաններն՝ աւերակ (Արցախ, էջ 275, տե՛ս Ոսկանապատ): (Դասելու է Ուտիի վանքերու շարքին տակ:)*

### 2. ԴԱՍՆՈՑ ՎԱՆՔ

*Ծանօթ Մխիթ. Գօշի Դատաստանագրքէն՝*

*«. . . Բայց ձեռնարկութիւն մեզ յայսմ խրողութիւն եղեւ ի թուականութեանս Հայոց ՈԼԳ (1184) . . . ի նահանգիս որ կոչի մայրաքաղաքին Գանձակ, յանապատս եւ յեղբայ–*

բանոյս անուանեալ Դասնոյ, սկզբնաւորեալ ի լեռնակողմն մենաստանին կոչեցելոյ Հոռոմաշէն ընդ հովանեաւ սրբոց եկեղեցեաց կառուցանեալ յիշեցելոյ, ձեռնտուութեամբ հօր Յովսէփայ եւ եղբօր Պաւղոսի յորդորմամբ յառաջարկութիւնս» (Մխիթ. Գօշի Դատաստանագիրք Հայոց, էջ 69—74. հրատ. Բաստամեան, Վաղարշապատ 1880: Ալիշան, Տեղագիր Հայոց Մեծաց, Վենետիկ 1855, էջ 85, § 164. հմմտ. Հոռոմաշէնի վանքը:

### 3. ԵՂՆԱՍԱՐԻ ԿԱՄ ԵՂԻՇԷԻ ՎԱՆՔԸ

Գետաշէն աւանի մօտ: Շինուած է «Երկու սիւների վերայ համակ սրբատաշ քարով...: Դրան հարաւային սեմին վերայ (գրուած է)՝ «Թ. ՌՃԼԹ (1690) ես Նա...ս...ա Մովսէս երեց»: Հիւսիսային սեմի վերայ՝ «Ի յաւելեանն Աստուածաբանէ գ. Թուահամարէ մետասան տարեհ վեր տար (1311) ես անարժան Ղազարս գրեցի»: Երեւում է որ վանքս նորոգուած է երբեմն երբեմն: Վանքս ունեցած է շրջապարիսպ եւ թաղակապ գեղեցիկ սենեակներ, յորոց այժմ եօթն կանգուն եւ եօթն կիսակործան են» (Արցախ, էջ 266. Ազգր. Հանդ. 1899, Ե., էջ 345):

Յիշատակագրութեան մը մէջ կայ՝ «Փառք...: Արդ ես մեղանամեղ եւ անարժան Բումեցի մահտեսի Ոսկանս եւ եղբօրս որդի Մանուչարս տեսեալ էր զայս... Աւետարանս ...խախտեալ ի կազմից... ետուք զսա կազմել... նորոգեցաւ ձեռամբ... Պետրոս սար–

կաւազի ի դուռն սուրբ անապատին Եղնասարայ, նեղ եւ դառն ժամանակիս, որ եւ թագաւորն Պարսից Նատիր կոչեցելոյ պարարեալ եւ պատեալ էր լեառն Կովկասու ընդ ազգին Լեզաց եւ էր աշխարհս ի մէջ տագնապի յոյժ: ՌՃԼԳ ամսեանն ի Ի-ին» (Հ. Ն. Ակինեան, Հաւաք. Յիշատ. Լարայեանցէն. հմմտ. Արցախ, էջ 334):

## 4. ԵՂՆԱՍԱՐԻ ԿԱՄ ԳԷՏԱՇԷՆԻ ԱՆԱՊԱՏԸ

Համանուն վանքի մերձ — Մրցունխի կողմերը — կը գտնուի անապատ մը, «Որուն արեւելեան եւ արեւմտեան կողմերում եղած են խուցեր, դեռ մի քանիսն կանգուն են այժմ: Հաստատում են թէ կուսանոց եղած է այս, որոնց մէջ եղած է մի կոյս Մէլիք-Բէկլարեանի տոհմից, որի պատճառաւ Մէլիք-Թամրազին որդին նորոգել տուած է անապատս» (Արցախ, էջ 265. հմմտ. Հ. Ս. Էփրիկեան, Բնաշխ. Բառարան, Ա., էջ 685 եւ Ազգր. Հանդ., 1899, Է., էջ 318—319):

## 5. ԵՐՄՈՂԵԱՑ ՔԱՀԱՆԱՅԻ ԿԱՄ ՍՈԽԼՈՒԿԻ ՎԱՆՔԸ

Սուլուկ գիւղի մօտ բլրակի մը վրայ՝ հայկական ՉԻԸ. թուականին անտաշ քարերով շինուած մատուռ մը կայ: Թէեւ վանք կոչուած է, սակայն չէ կարելի ընդունիլ՝ թէ յատուկ իմաստով վանք եղած ըլլայ: Հոն կան բաւական թւով արձանագրութիւններ (Արցախ, էջ 270. Արձագանք, 1886, էջ 294):

*Շինուած է Բանանց գիւղի հարաւային կողմը, Արութիւն վտակի աջ եզերքը, Խաչքարակ կամ Խաչակապ գիւղի մերձ։ Ունի աւագ խորան մը եւ ուրիշ փոքրիկ խորան մը, չորս նեղկուկ պատուհան, երկու դուռ,* 15·50 *մ. երկարութիւն եւ* 9 *մետրէն քիչ մը աւելի լայնութիւն։ Դռներէն մէկուն վրայ կը կարդանք՝ «Շինե(ա)ց սուրբ եկեղեցիս Միլխաւձայ Ազիզն Թվ. ՌՀԹ». եւ «Սուրբ խաչս Ովանէսին», իսկ միւսին վրայ կայ՝ «Սուրբ խաչս Փարին, Շահումին» եւ «Սուրբ խաչս բարեխաւս Հռումսին ՌՀԸ» (Արցախ, էջ* 285· *Ազգր. Հանդ.,* 1913, *Իէ.,* 74)։

*Թարգմանչաց անապատը օծուած է գաւիթով մը, ուր կան նուիրատուներէ արձանագրութիւններ (ՌՃԺԶ, ՌՃԽԴ, ՌՄԶ տարիներէն)։ Միաբաններու համար կառուցուած են քանի մը սենեակներ (Արցախ, էջ* 285—286· *Ազգր. Հանդ.,* 1899, *Ե.,* 342· *Գանձակ գւռ., Ա., էջ* 134—135· *Ջալալեան, Ճամբ., Ա., էջ* 167)։

*Անապատէն քիչ մը հեռու է գմբէթաւոր զանգակատունը, որուն վրայ կայ՝ «Ես Պաղդասարի որդի մահտեսի Ներսէսս եւ Օսէփս տվինք սուրբ անապատիս ա. թուման վախմ, որքա տուին մեզ Դ. ժամ ՌՃԽԴ»։ Հոս է տապանը Տէրունց Յարութիւնի որդի Գաբրիէլ եպիսկոպոսին, որ* 60 *տարի վանահայրութիւն կ'ընէ (Ազգր. Հանդ.,* 1899, *Ե.,* 342)։

Այս անապատին վանահայրերէն եղած է նաեւ Սարգիս Վ. Տփխիսեցի, կոչուած Թեան-դա-գիրմազ (Արձագանք, 1886, էջ 295· հմմտ. Լումայ, 1897, Բ., էջ 187՝ Յովհաննէս Թեանդագրմազ)։

7. ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ԿԱՄ ԽԱՇԼԱՐԱԿԱՑ ՎԱՆՔԸ

Խաչակապ գիւղի հիւսիսային կողմը, անկէ քիչ մը հեռու, սարահարթի վրայ բարձրացած է Թարգմանչաց կամ Խաչլարակոյ վանքը։ «Հետաքրքիր է եկեղեցին, բաւական փոքր, հասարակ անտաշ քարերից շինուած, քառակուսի յատակագծով, ցածլիկ եւ փոքր մի դռնով» (Տահազ, էջ 91· Ազգր. Հանդ., 1913, ԻԵ., էջ 74)։ Տաճարը ունի երկու փոքր եւ մէկ աւագ խորան, կաթուղիկէ մը, տասը լուսամուտ, երկու խորհրդարան եւ դուռ մը (Արցախ, էջ 289)։ Սամուէլ եպիսկոպոսի առաջնորդութեան ժամանակ՝ 1800ին շինուած է — խաչաձեւ կամարներու վրայ բարձրացած — գաւիթը։ Վանքը անուած է ամուր շրջապարիսպի մէջ եւ օժտուած է ութը սենեակով, պարտէզով եւ մեղուանոցով (Արցախ, էջ 291· Ազգր. Հանդ. 1899, Ե., էջ 340—341)։

Նորոգուած է քանի մը անգամ, մանաւանդ Ներսէս Բէկ Աբրահամեան Տէր Ներսէսեանցի ձեռներէցութեամբ ու առատաձեռնութեամբ եւ հարուստ է զանազան արձանա–

գրութիւններով (Արձագանք, 1885, էջ 54, 135, 1886, էջ 308—309. Ծաղիկ, 1892, էջ 299 եւ 319—322. Մշակ, 1875, թ. 13)։

*Աւանդութեան համեմատ Թարգմանչաց վանքի հիմնադիրն է Ս. Մեսրոպ, բայց ետքէն ստէպ կը քանդուի եւ յաճախ կը վերանորոգուի (Արձագանք, 1886, էջ 308)։ Բարխուդարեան անոր հիմնարկութիւնը կը նշանակէ 989ին, մինչ Տէր-Մովսէսեան անոր եկեղեցին աւելի հին ժամանակի շինութիւն կը համարի (Տաշեան, էջ 91)։ Վանահայրերէն է Սամուէլ եպիսկոպոսը (հմմտ. վերը)։*

*Ունեցած է կարեւոր ձեռագիրներ (Ջալալեան, Ճամբ., Ա., էջ 167—169. Անահիտ, 1911, թ. 5—6. 1907, էջ 97. Ծաղիկ, 1892, էջ 298. Հասկ, Հայագիտ. Տարեգիրք, 1948, Ա. տարի, էջ 8)։*

*Թէոդորոս քահանան հոս վարժարան մը կը բանայ, անկէ յառաջ «ի վանս Խաչյարակայ» Յովհաննէս եպիսկոպոսը Գանձատետր մը կը կազմէ (Մշակ, 1875, թ. 13. Ազգր. Հանդ., 1904, ԺԲ., էջ 168)։*

*«ՌԼԲ թուին կազմել է (Գանձատետր մը) Յովհաննէս եպիսկոպոսը յերկիրս Գանձոյ ի վանս Խաչյարակայ» (Ազգր. Հանդ., էջ 168)։*

*Թարգմանչաց վանքը 183 դեսեատին հող ունէր (Ազգր. Հանդ., 1899, Ե., էջ 341, Գանձակ գւռ., էջ 132—133 եւ Բազմավէպ, 1900, էջ 136. Էփրիկեան, Բնաշխ. Բառարան, Բ., էջ 19)։*

### 8· ԿԵՌՍՏԱՎԱՆՔ ԲԵՐԴԻ ՎԱՆՔԸ

*Ծամքորի աջ ափին, բարձրութեան մը վրայ։*

*«Ոմանք կարծում են թէ վանք եղած է այս, իսկ այլ ոմանք՝ թէ բերդ է։ Մենք հաւանական ենք համարում վերջին կարծիքս, քանզի ժամանակաւ մեծ ճանապարհ եղած է գետակիս ձորովը Գեղամայ լճի արեւելեան ափի վերայ» (Արցախ, էջ 304—305)։*

### 9· ԿԻՐԱՆՑ ՎԱՆՔԸ

*Խաչակապի Թարգմանչաց վանքէն բաւական հեռու է Կիրանց գիւղը, որուն մօտերը կայ մատուռ մը, որ «բնակիչներն անուանում են վանք. այդ եղել է ժամանակին մի մենաստան, ուր նստել են կրօնաւորներ մինչեւ 1838 թուականը» (Արձագանք, 1886, էջ 310. հմմտ. եւ Արցախ, էջ 288)։*

### 10· ՀՈՌՈՄԱՇԷՆԻ ԿԱՄ ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔԸ

*Ծամքոր գետակի աջ ափին։*

*Տաճարն ունի գեղեցիկ եւ սրածայր կաթուղիկէ, աւագ խորան մը եւ ուրիշ խորանիկ մը։ Շինուած է կարմիր քարով եւ այս պատճառով կոչուած՝ Կարմիր եկեղեցի (Արցախ, էջ 295—296)։ Արդէն «ունի եւ բաւական խուցեր միաբանից համար եւ հանգստարան եւ քարուկիր շրջապարիսպ» (Արցախ, էջ 295)։*

*Այս այն վանքն է, ուր Մխիթար Գօշ 1184ին իր Դատաստանագիրքը գրելու կը սկսէր (Հմմտ. Դատաստանագիրք Մխիթար Գօշի, [Հրտ. Բաստամեան], էջ 47. Բարխուդարեան, Արցախ, էջ 295, 428—429. Ազգր. Հանդ. 1899, Ե., էջ 345, նաեւ Տաշեան, Ցուց. Մխիթ. Մատ., էջ 528. Հմմտ. Դաւնոյ վանքը): Սարգիս 1635ին հոս Գործք Առաքելոցի արտագրութիւնը կ'ընէ (Թօփճեան, Ցուց. Հայ. Ձեռ. Դալեան Վ.ի, Ա., էջ 11):*

*Հոռոմաշէնի այս վանքը իբրեւ թէ յունական հոգերէն հայածական եւ փախստական կրօնաւորներու հիմնարկութիւն ըլլայ (Ջալալեան, Ճամբորդութիւն, Ա., էջ 162): Յայտնի է թէ Շիրակի Հոռոմոսի վանքի պատմութիւնը մերձեցուած է այս վանքին:*

11. ՄԱԼԱԶԱԲԵՐԴԻ ԿԱՄ ՄԱԾՆԱԲԵՐԴԻ ՎԱՆՔԸ

*Հարցհանգիստ գիւղին «Հարաւ–արեւելեան հանդէպ, ոչ այնքան հեռի արձանացած է մի սար, որ բոլորովին առանձնացած է իւր չորս կողմերից եւ բարձրացած ձուաձեւ» (Արցախ, էջ 293): Ահա այդ սարին կատարը գտնուած է վանք մը, որուն տեղն ապա եկեղեցի մը շինուած է: «Վանքի չուրջը պարիսպ է եղել, ինչպէս եւ խցեր, որոնցից միայն երկուսն են այժմ կանգուն» (Ազգր. Հանդ., 1899, Ե., էջ 344): Վանքին իսկական անունն՝ անծանօթ: Մերձաւոր փայրերու անունով կոչուած է Մալազաբերդի կամ*

Մաժնաբերդի[1], նաեւ Հարցանկիսի (Հարցհանգիստի) վանք (հմմտ. Արցախ, էջ 43 կամ Ամենափրկչի վանքը եւ Արձագանք, 1886, էջ 286):

### 12. ՄԱԼԱԶՆԱԲԵՐԴԻ ԱՄԵՆԱՓՐԿԻՉ ՎԱՆՔԸ

Նոյն պէտք ըլլայ նախորդին հետ:

1666ին «յեպիսկոպոսութեան սուրբ Ամենափրկչին քաջ եւ արի բարունապետի Խաչատուր վարդապետի, ի գեօղն Հարց հանգիստ» Աւետարան մը կը գրուի (Արցախ, էջ 43 եւ Արձագանք, 1886, էջ 296):

Միեւնոյն տեղը երկու տարի յետոյ Յովհաննէս ուրիշ Աւետարան մը կը գրէ «առաջնորդութեան աթոռոյս Ամենափրկչին պարոնտէր Յովհաննիսի» (Արց., էջ 45):

Հմմտ. քիչ ետքը՝ թիւ 14:

### 13. ՄՌՈՒՏԻ ԱՆԱՊԱՏԸ

Մռուտ գիւղի մէջ եղած է անապատ մը. որուն անունն անծանօթ կը մնայ: Գանձակ փոխադրուած չիրիմաքարի մը վրայ գրուած է՝ «Այս է տապան Մռուտ անապատի առաջնորդ Յարութին վարդապետի. ՌՄԽԹ. Յունիս ԻՁ.ի (Արցախ, էջ 38 եւ 272. հմմտ. եւ Արձագանք, 1886, էջ 294):

---

[1] Անտոն 1464ին Մաշտոց մը կը գրէ՝ «ի վանքս Մալէգկէրայ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս» (Հ. Ն. Ակինեան, Հաւաք. Յիշ. Երեւան, 453):

## 14. ՆԻԿԶԱՐԻ ԱՄԵՆԱՓՐԿԻՉ ՎԱՆՔԸ

*Նիկզար գիւղի հարաւ-արեւմտեան կողմը շինուած է այս վանքը. որ այժմ աւերակ է։ Գաւիթին ծեփին վրայ կարելի է կարդալ՝ «Ես Դաւիթ եպիսկոպոս նորոգեցի զեկեղեցիս այս թվ. ՌՃԻԸ» (Արցախ, էջ 294. հմմտ. Արձագանք, 1886, էջ 307)։ Նորոգող հայրապետին մարմինը խորանին տակ ամփոփուած է։*

*Խաչքարի մը վրայ կայ՝ «Ի հայրապետութեան Աղուանից Տեառն տէր Մինաս կաթողիկոսի, ի թագաւորութեան Պարսից Շահ-բասին, եւ մեղապարտ Աբրահամ եպիսկոպոս եւ եղբարքս իմ Ներսէս կրօնաւոր եղաք» (Արձագանք, 1886, էջ 307)։ Ասո՞ր կը հայի՝*

*«Յեպիսկոպոսութեան սուրբ Ամենափրկչին քաջ եւ արի բարունապետին Խաչատուր վարդապետի... ի գեօղն Հարցհանդխտ» կը գրուի Աւետարան մը, որմէ երկու տարի վերջ ուրիշ մը կը գրէ Յովհաննէս «առաջնորդութեան սուրբ աթոռոյս Ամենափրկչին պարոն տէր Յովհաննէսին» (Արցախ, էջ 43, 45 եւ Արձագանք, 1886, էջ 296, հմմտ. Թ. 12)։*

*Ամենափրկիչ վանքը, ինչպէս կը տեսնուի եղած է եպիսկոպոսանիստ։ Ունեցած է շրջապարիսպ եւ կալուած (Ազգր. Հանդ., 1899, Ե., էջ 346)։*

## 15. ՈՍԿԱՆԱՊԱՏԻ ԿԱՄ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԸ

Ոսկանապատ գիւղի վանքն է այս: «Այդ եկեղեցեաց նոյնպէս դէպի հարաւ ձորի մէջ է Ս. Աստուածածնի քարաշէն անապատը, թաղակապ»: Արտաքին հարաւ-արեւելեան պատին ներքեւ թաղուած է եկեղեցւոյն վերանորոգողը՝ Յարութիւն Պապի, որ ՌՄՀ թուականին մեռած է: «Այս անապատը շինել է, ինչպէս պատմում են, Մելիք Ոսկանն, ուստի եւ Ոսկանա(յ) անապատ անունն է ստացել, որից եւ գիւղն Ոսկանապատ» (Արձագանք, 1886, էջ 294· Արցախ, էջ 275· տե՛ս եւ Ս. Աստուածածնի վանքը):

Յիշատակագրութեան մը մէջ կայ՝ «Ես արդ եւ Սարգսի որդի Խօջա Պատիս, առի զսուրբ աւետարանս ի ձեռաց անօրինաց եւ եդու վախմ ի դուռն Ոսկանապատու կուսանաց անապատին Աստուածածին սուրբ տաճարին... ՌՃԼԳ» (Արձագանք, 1886, էջ 294· Հմմտ. անդ եւ 1888, էջ 133):

Ինչպէս յիշատակարանը կը վկայէ՝ այս անապատը կուսաններու համար է:

## 16. ՊԱՆԴԱԼԻՈՆԻ ՎԱՆՔԸ

Սուլուկ գիւղի մերձ: Սարի մը գագաթին վրայ շինուած էր երբեմն մեծ վանք մը Պանդալիոն վկայի անունով: Այսօր հիմն ի վեր կործանած: ՌՃԻ թուին Ղազար քահանան հոս աւետարան մը կը գրէ (Արցախ, էջ 271· Ազգանից երկիր եւ դրացիք, էջ 251):

*Սիրուած ուխտատեղի է* (*Ազգր. Հանդ.*, 1899, *Ե.*, 347 *եւ Արձագանք*, 1886, *էջ* 293):

17. ՊՏԿԵՍԲԵՐԴ ԿԱՄ ՊՏԿԻ Ս. ԳԷՈՐԳԻ ԱՆԱՊԱՏԸ

*Նիւկզար գիւղի մօտ: Ուխտատեղի, մա-տուռ-անապատ* (*Արցախ*, *էջ* 294, *Համա. վերը էջ* 162):

18. Ս. ՍԱՐԳԻՍԻ ՎԱՆՔԸ

*Ոսկանապատ գիւղի մերձ: Շինուած գոյգ կամարի վրայ աւերակ* (*Արցախ*, *էջ* 275):

19. ՔԵԱՐԽԱՆԱՑ ՎԱՆՔԸ ԿԱՄ ՄԻՐՋԻԿԻ ԱՆԱՊԱՏԸ ԿԱՄ ԱՍՏՈՒԱԾՄՕՐ ՎԱՆՔԸ

*Ոսկանապատ եւ Մերգիկ գիւղերու քովերը: Շինուած է տորոնագոյն տաշուած քարերով: Ունի աւագ խորան մը եւ երկու փոքր խորան, վեց նեղ պատուհան եւ արեւմտեան կողմը դուռ մը: Երկարութիւնն է 12 մետր եւ լայնութիւնը գրեթէ 8 մետր: Ունի նաեւ գաւիթ մը, որ 7 մետր երկար եւ նոյնքան եւս լայն է: Շրջապատուած է պարիսպով, որ արդէն քանդուած է: Միաբաններու սենեակներն ալ օրէ օր կը քայքայուին:*

*Գաւիթին մէջ կան թաղուածներ՝ «Հան-գիստ հոգապատեան Տեառն Եղիազարու, յաւէտ հանգիստ է անվշտակիր նշխար սորին, որ աստ կան, հոգին գոլով միջնորդ առ Տէր ժամկան վասն իւր որդեկացս, որ եմք տատանման փորձանաց դաղտնի, որ օձտել փու-*

թան զմխարանութիւն հոգեւորական, փրկել ի փորձանաց այժմ եւ յապագայն, հանդեւտուրր հայրն մեր Թուլին Հայկազնեայ ՌՃԿԲ»:

«Այս է հանգիստ Զարեքու անապատի Մկրտիչ վարդապետին, թվ. ՌՂէ»:

«Այս է տապան տանս սպասաւոր Մահտեսի վերաձայնի, Նաւասարդ աղա անուանի, եղբայր Թամրազ Քալանթարու Զակամ մեծ Սահակ ի Ղարամուրատ գեղջէ, կոչի Արամի, մահն գիպէ վաթսուն Բ. ամի ՌՃՂ թուի եւ չամգրխս (չատ ամեայ?) մարմին է ԴԳ. ամի» (Արցախ, էջ 277):

«Վանքիս արեւելեան կողմումն է Քեանդակիրմաց մականուանեալ Սարգիս վարդապետի գերեզմանն», որ օժտուած է ընդարձակ արձանագրութեամբ (Արցախ, էջ 277. Ազգր. Հանդ., 1899, Ե., էջ 345): «Այս եկեղեցին կոչւում է Միրզիկէ անապատ՝ գիւղին մօտ լինելուն պատճառով եւ Քեարխանի վանք՝ իւր մօտակայ Պղնձահանքի անունով» (Արձագանք, 1886, էջ 295): Ջալալեան գայն կը կոչէ Աստուածամօր վանք (Ճամբ., Ա., էջ 169):

## Է.

## ՓԱՌԻՍՈՍԻ ՎԱՆՔԵՐԸ

Շամքոր գետակին միջին օժանդակին եւ Գեղամայ լեռնաշղթային գագաթնագծին չարունակութեան եւ Տաւուշ գետակի հարաւարեւելեան օժանդակին — Ախնջի — ափերուն միջեւ կը գտնուի Փառիսոս գաւառը, որ հիմայ Շամշատին կը կոչուի:

### 1· ԲԱՐՍՈՒՄԻ ՎԱՆՔԸ

Փառիսոսի Բարսում գիւղը երկու վանք ունի: Մէկուն անունն է՝ Ս. Հոփփսիմէի վանք (տե՛ս անդ) եւ միւսին անունը՝ մեզի չէ հասած: Վերջինս գիւղին արեւելեան կողմը՝ այգիներու մէջ բարձրացած է: Պատերը՝ քարուկիր, ծածկը՝ փայտաշէն եւ մեծութիւնը՝ միջակ (Արցախ, էջ 318):

### 2· ԵՐԳԵՎԱՆՔԸ

Ծանօթ է Արցախի Փառիսոս գաւառի Երգեվանք բերդը[1]: Հ. Էփրիկեան կը խորհի՝ «Անշուշտ ի հնումն Երգեվանք վանք մը եւս կար (հոն), որուն անուամբ թերեւս կոչուեր

[1] Մերձ է Խորանաշատ անուանի վանքին: Հմմտ. Կիր. Գանձակեցի, Պատմ., էջ 73, 79, 129, 184, 199 եւ Վարդան, Պատմ., էջ 145:

է բերդս» (Բնաշխ. Բառարան, Ա., էջ 692. Հմմտ. եւ Արցախ, էջ 357, գրուած Քուստի գաւառին մէջ, որ Փառիսոսի քովն է)։

### 3. ԽԱՄՇԻ ԿԱՄ ՂԱՐԱՄՈՒՐԱՏԻ ՎԱՆՔԸ

Ղարամուրատի[2] մօտ հիմնուած։ «Կառուցեալ է սրբատաշ քարով երկու սիւներու վերայ, սագաչէն» (Արցախ, էջ 309)։ Երկյարկ է զանգակատունը, որ շինուած է համակ սրբատաշ քարով։ Ունեցած է շրջապարիսպ։ Միաբաններու սենեակներն՝ արդէն աւերակ (անդ, էջ 309—310, Ազգր. Հանդ., 1899, Ե., էջ 346—347, Էփրիկեան Հ. Ս., Բնաշխ. Բառարան, Բ., էջ 129)։

Խամշիի վանքը հին հաստատութիւն է։ Իւանէ եւ Զաքարէ՝ Յովհաննէս կաթողիկոսին (Աղուաններու) հոս բնակութեան վայր կը ցուցնեն եւ նա «սկսաւ շինել անդ եկեղեցի մեծ եւ հրաշալի» (Կիր. Գանձ. Պատմ., էջ 432)։ Բաւական ժամանակ Աղուաններու կաթողիկոսները հոս կը նստին եւ դայն այլ եւ այլ շինութիւններով կ՚օժտեն (Հմմտ. եւ Մխիթար Այրիվանեցի, Պատմ., Մոսկուա 1860)։

Հոս մի անգամ ընդ միշտ ըսենք թէ ինչպէս Խամշիի վանքը նաեւ Արցախի գրեթէ բոլոր վանքերը — որոնցմէ շատերուն անունը «Արշալոյս Արարատեան» թերթը կու

---

[2] Ղարամուրատ ունի անապատ մըն ալ, դուցէ Ս. Սարգիս կոչուած (Արցախ, էջ 309)։

տայ, այսօր կա՛մ աւերակ են եւ կա՛մ հազիւ իրենց գոյութիւնը կը պահեն, թէեւ երբեմն այնքան լաւ դիրք ունէին (անդ, 1863, թ. 701)։

Յիշատակագրութեան մը մէջ կը կարդանք՝ «Եղեւ գրաւ գրչութեան (Աւետարանի) ...ձեռամբ... Աւետիս անպիտան քահանայի ի թուականութեան ՌՃ եւ Ժ (1661) թիւ աւելի ի յերկիրս վերին Զակամ ի գեօղս որ կոչի Պապճան ընդ հովանեաւ ջուխտակ եկեղեցեացս հնոյն սուրբ Աստուածածնի եւ նորոյս Ս. Գրիգորի Լուսաւորչիս եւ սուրբ Յովանէսի եւ այլ սրբոցն, որք աստ կան։ Եւ յաթոռս Աղվանից Գանձասար կոչի ի հայրապետութեան Տեառն Պետրոսի սուրբ դիտապետի երիցս երանեալ կաթողիկոսի։ Եւ յառաջնորդութիւն երկրիս մերում սրբասնունդ բարունապետի եւ կուսակրօն Սարգիս վարդապետի։ Եւ մերոյ նահանգիս յանապատն Ղարամուրատի, ի սոյն ամի հանդեաւ ի Քրիստոս սուրբ հայրն հարանց տէր Տէրուն առաջնորդ սուրբ ուխտին... եւ յետ սորին եղեւ առաջնորդ Գրիգոր պարուն տէր երջանիկ հեզահոգին հոգոյ որդի սուրբ հօրն տէրն Տէրունի...[3]» (Հ. Ն. Ակինեան, Հաւաք. Յիշատ., Երեւան, 161)։

[3] Ղարամուրատի մէջ կուսանաց անապատ մը եւս եղած է։ Աւետարան մը Եւա «վախմ» կու տայ՝ «Ի դուռն Ղարամուրատ կուսանաց անապատի սուրբ Աստուածածնի» (Արցախ, էջ. 281—282)։ Այնպէս կը թուի թէ վերնոյն հետ միացած է կամ անոր իգական բաժինն է։

## 4· ԽՈՐԱՆԱՇԱՏԻ ԿԱՄ ՎԱՆԱԿԱՆ Վ·Ի ՎԱՆՔԸ

*Ղուշալի գիւղի արեւելեան կողմը, Անինջի վտակի աջ եզերքը անտառապատ լեռան մը լանջին գեղեցիկ հովտի մը մէջ, կամ Կիրակոս Գանձակեցիի սահմանումով՝ «հանդէպ Երգէվանից բերդին եւ ի Թիկանց Գարդմանայ» (Պատմ., էջ 198) հիմնուած է Խորանաշատ վանքը՝ նուիրուած Ս. Աստուածածնի: Այդպէս կոչուած՝ «վասն յոյժ եկեղեցեացն, որ ի նմա» (Կիր. Գանձակեցի, Պատմ., էջ 199):*

*Տաճարը, որ 13 մետր երկարութիւն եւ 10·50 մետր լայնութիւն ունի եւ Գանձասարի հոյակապ տաճարէն յետոյ այդ կողմերու ամէնէն գեղեցկակերտ շինուածքն է, կառուցուած է տորոնագոյն, սրբատաշ եւ խաչաձեւ քարերով ու քանդակներով: Ունի չորս կամար (որոնց վրայ կը հանգչի սիրուն կաթուղիկէ մը) եւ մէկ աւագ խորան ու չորս փոքր խորան, երկու խորհրդարան եւ երկու դուռ: Աւագ խորանի ստորոտով՝ դասահայեաց կլոր երեսին վրայ շինուած են տասը փոքրիկ, գեղեցիկ եւ խորանաձեւ կերտուածներ (Արձագանք, 1888, էջ 87, Արցախ, էջ 322—323): Ջալալեանի համաձայն «հուշակաւոր սուրբ ուխտն Խորանաշատ (զոր Զօրաթման գիւղի մերձ կը դնէ. հմմտ. եւ Արձագանք, 1888, էջ 87) շինեալ յարդիւնական վարդապետէն Վանականայ» օծտուած էր*

*«երկոտասան խորանօք»* (*Ճամբ.*, *Ա.*, *էջ* 161—162):

*Տաճարին առջեւը՝ չորս մեծամեծ հատաքար սիւներու վրայ սրբատաշ քարերով շինուած է գաւիթը: Տաճարին ու գաւիթին շինութիւններն իրենց վայելչութեամբը եւ նրբութիւններովը մեծարարբառ քարոզիչներն են զմանոնք շինել տուողին եւ ճարտարապետին նուրբ ճաշակին:*

*Այս գաւիթը* 16·6 *մետր երկարութիւն եւ* 15·90 *մետր լայնութիւն ունի եւ մէջը հաստատուած են չորս փոքրիկ խորաններ. երկուքը հարաւային եւ միւս երկուքը հիւսիսային կողմն՝ իրարու վրայ:*

*Գաւիթին հարաւային որմին վրայ արեւի ժամացոյց մը գրուած է:*

*«Այժմ տեղ տեղ քայքայուած են վանքիս եւ գաւթիս սալկախները եւ շրջապարիսպի պատերը, մի վանք որ զարմացնում է այցելուները իր երկնանման շինութեամբ եւ լացնում իւր անցեալի փառքով եւ ներկայիս աւեր եւ ամայի դրութեամբ»* (*Արցախ*, *էջ* 323—324):

*Մենաստանն առնուած է շրջապարիսպի մէջ, ուր կան զոյգ մատուռներ, մին՝ փոքր եւ սրբատաշ քարով շինուած ու կոչուած Ս. Կիրակի, իսկ միւսն՝ անունն անծանօթ՝ կառուցուած հասարակ քարերով: Այս տեղ ամփոփուած են քանի մը ննջեցեալներ: Այժմ կիսաւեր:*

Ասոնցմէ զատ կայ երրորդ մատուռ մը, որ պարիսպէն դուրս է եւ սրբատաշ քարերով հիւսուած, բայց արդ տանիքը խոնարհած։ Հոս է Վանական վարդապետի հանգստարանը, սակայն դժբախտաբար որ եւ է արձանագրութեամբ չէ ցուցուած։ Բայց բարեբաստօրէն կան ուրիշ արձանագրութիւններ։

Տաճարին դրան ճակատին վրայ արձանագրուեր է՝ «Թվ. ՁԲ. երկրպագանէք, յաղաւթս յիշեա...» (Արձագանք, 1888, էջ 87)։

Սեղանին աջակողմեան պատին վրայ՝ «ՈԿ. Թ. ես Աւեղդատս Ուրծեցի միաբանեցա ի Խորանաշատու սուրբ Աստուածածինս, ետու գծախս այսմ խորանիս յիշատակ ծնողաց եւ եղբարց իմոց Նաւուտին եւ Ապիրատին եւ վարդապետն հաստատեց Բ. աւր այսմ խորանիս, ա. ի տաւնի Վարդավառին եւ ա. Վարագայ խաչին, անխափան հաստատ եւ կամաւն Աստուծոյ» (Արձագանք, 1887, էջ 87 եւ Արցախ, էջ 323, ուր կայ «ՈԿԹ. Ես Աւեղդատս Սրաժեցի միաբանեցայ Խորանաշատ սուրբ Աստուածածնին եւ ետու... Ծաւուրին եւ Ապիրատին...»)։

Սեղանին արեւելեան պատին վրայ՝ «ՈԿԵ. Ես Անդրէաս աւագ էրէց Գետարակուց միաբանեցայ ի սուրբ Աստուածածինս եւ վարդապետն հաստատեաց ինձ Դ. սեղան պատարագի նոյն կիւրակէին անխափան» (Արձագանք, 1888, էջ 87)։

*Ասոր հարաւակողմը՝ «Մին աւր ժամ Ծովինարին ի տաւնի սուրբ Հոգւոյն, որ կատարեալ հաւատով միաբանեցաւ եկեղեցւոյս» (անդ, էջ 87)։*

*Դարձեալ՝ արեւելեան կողմը՝ «ՈՀԱ. Մին սեղան պատարագ մատչի Յովսէփ քահանայիս յաւուրն Համբարձման Փրկչին անխափան» (անդ, էջ 87)։*

*Արեւելեան արտաքին պատի վրայ՝ «Յանուն Աստուծոյ ես Գրիգոր որդի Վասա Մխիջանեցի գնեցի զկաւշ քակերանց եւ տուաք ի սուրբ Աստուածածինս Խորանաշատու վարդապետս հաստատեց մեզ Բ. պատարագ ի տաւնի Գալստեան, ա. ինձ, ա. ամուսնո իմո... կատարիչք աւրհնին (յ)Աստուծոյ» (անդ, էջ 87)։ Սոյն արձանագրութեան կարեւոր մասերը Բարխուդարեան կը կարդայ՝ «...Ես Գրիգոր որդի Վասակա Մխիջկա չինեցի զԿաւշկակերանց» (Արցախ, էջ 323)։*

*Հիւսիսային փոքր խորանին վրայ կայ՝ «ՈԿԵ. Ես Աբրահամ Կանաչհողեցի եւ ամուսին իմ միաբանեցաք Խորանաշատու Աստուածածին, ետու զծախս խորանիս եւ վարդապետն հաստատեաց ինձ Բ. ժամ ի տաւնի սուրբ Գրիգորի անխափան» (Արցախ, էջ 323)։*

*Խորանաշատի հետ սերտիւ կապուած է Յովհ. Վանականի անունը եւ նոյն իսկ երբեմն կոչուած է Վանականի վանք, վասն զի անիկա անոր հիմնադիրն ու զարգացողն եղած*

է՝ «Եւ եղեւ վախճան նորա (Վանականի) այսպիսի օրինակաւ ի վանսն, զոր իւր իսկ էր շինեալ, որ կոչի Խորանաշատ եւ վասն յոլով եկեղեցեացն, որ ի նմա ընկալաւ զանունն... առնէր նա շինուածս երեւելիս, զաւիթ շինելով ի կոփածոյ վիմաց ի դուռն մեծ եկեղեցւոյն, զոր իւր իսկ շինեալ էր...» (Կիր. Գանձակեցի, Պատմ., էջ 198. Ալիշան, Հայապատում, Բ., էջ 513. Տաշեան, Մայր Ցուց. Մխիթ., էջ 39 եւն):

Ինչպէս նախորդ արձանագրութիւններէն կը տեսնուի Յովհ. Վանական իր գեղեցիկ ձեռնարկին յաջողութեանը համար կ՚ունենայ օգնական ձեռքեր ու սատարողներ (Հմմտ. Տեղեկ. Արմֆանի 1940, թ. 4, էջ 175):

Խորանաշատի հիմնարկէքն ու աւարտումը մեծահանդէս կը կատարուի եւ այդ առիթներուն նուէրներ տացուած են եւ փոխադարձ պարտականութիւններ դրուած:

1224ին՝ «Անէնի (Վանենի) կը վկայէ... միաբանեցայ Խորանշատոյ սուրբ Աստուածածինս... եւ ետու զծախս սուրբ Աւետարանիս ստանալ զսա ինձ զաւակ հոգեւոր... շինող եւ առաջնորդ վանիցս Վանական վարդապետն հաստատեաց ինձ աւուր մահուան իմոյ Ա. քառասունք...» (Յովսէփեան, Խաղբակեանք, էջ 34, նոյնը՝ Յիշատ. Ձեռ. Ա., էջ 839, Թորոս Աղբար, էջ 272):

Ե՞րբ կառուցուեցաւ Խորանաշատի վանքը: Ջալալեանի համաձայն 1191ին (Հմմտ. Ճամբ., Ա., էջ 162): Ժամանակին

անոր հիմնարկութեան թուականը լսած էի «կարելի պիտի ըլլայ... մերձաւորապէս 1215—1220 դնել» (Հմմտ. իմ «Յովհ. Վանական եւ իր դպրոցը», Վիեննա 1922, էջ 11): Ամէն պարագայի 1223ին արդէն շինուած էր եւ Վանական վարդապետը իր աթոռը հոն հաստատած. ինչպէս հետեւեալ յիշատակագրութիւնը կը վկայէ՝ «Ի ՈՀԲ (1223) թուականիս գրեցաւ առաքելախօսս տետրակս այս ի ձեռն Ստեփաննոսի Աղթամարեցոյ ի վանքս Խորանաշատու ի գաւառս Գարդմանայ առ ոտս ուղփաձեմ եւ աստուածարդիւնական վարդապետիս Վանականի, որ փայլէ ի ժամանակիս որպէս գասող առաւաւօտու եւ ի կողմանց հիւսիսոյ նահանգիս Թորգոմա ամպ հոգեցաւղ հանապազ՝ հոսելով զաստուածային եւ գրանաւորաց ողողանէ երկիր եւ թէպէտ կրտսեր էաք ի լսարան համահանգիսիս եւ անարուեստ գոլով պծոյ գրոց, այլ յաւժարութեամբ սրտի միայն յուսացեալ յԱստուած ի ձմեռնային յաւուրս գրեցաւ, այլ աղաչեմ չլինել մեղադիր թիւրութեան, զի զհոլովն ճրագով գրեցի եւ զայս միայն խնդրեմ յիշել զիս եւ զհայրն իմ տէր Սարգիս եւ զծնաւղսն իմ ըստ մարմնոյ եւ զեղբարսն իմ եւ զսիրելին իմ զԻգնատիոս քահանայ եւ...» (Հ. Ն. Ակինեան, Հաւաք. Յիշատ. էջմ. 2101, Ժողովածու, Հմմտ. Կարենեանց, Մայր Ցուց. հայ. Ձեռ. էջմ. 2050):

1223էն յառաջ Խորանաշատի հիմնարկութիւնը կը հաստատէ նաեւ Աբրահամ Կանաչհողեցիի արձանագրութիւնը, վասն զի ան ՈԿէ թուին (այս է 1216ին) գրուած է։ Բայց անոր հիմնարկութիւնը քանի մը տարի աւելի առաջ ալ կրնայ եղած ըլլալ, եթէ Աւելդատի արձանագրութիւնը Քաջիկեանի համեմատ փորուած ըլլայ ՈԿ. թուին, այս է՝ 1211ին (Արձագանք, 1888, էջ 87) եւ ոչ թէ Բարխուդարեանի համաձայն ՈԿԹին այս է 1220ին[4]։ Վանական վանքին ու անոր եկեղեցւոյն ճարտարապետական կառուցուածքին բծախնդիր եղած է։

Այս անիկա իր նորաշէն վանքին մէջ կը նուիրուի գրականութեան եւ ուսուցչութեան։ Հաւանականօրէն հոն անոր կ'աշակերտին Վարդան Արեւելցի, Կիրակոս Գանձակեցի, Մաղաքիա, Ստեփանոս, Յովսէփ, Սոսթենէս, Մարկոս, Գրիգորիս եւ Պօղոս։ Սակայն քաղաքական աննպաստ պարագաներու հետեւանքով ատժամապէս անկէ կը հեռանայ, բայց նորէն գալով՝ կը շարունակէ իր ազգօգուտ գործունէութիւնը։ Այս 1251ին կը մեռնի եւ «մօտ ի փոքրագոյն եկեղեցւոյն» կը թաղուի (Կիր. Գանձ. Պատմ., էջ 200 եւ Սիւրմէեան, Ցուցակ հայ. Ձեռ. Հալէպի, Ա., էջ 311)։ Խորանաշատի առաջ–

---

[4] 1223ին Ստեփանոս Աղթամարցին Խորանաշատի մէջ Ձեռագիր մը կ'արտագրէ (Արարատ, 1902, էջ 967)։

նորդութիւնը կը յանձնուի Պօղոս եւ Գրիգորիս վարդապետներու: Վերջինիս մասին կը խօսուի յետագայ յիշատակագրութեան մէջ՝

«Փառք . . . գրեցաւ . . . գիրքս այս (Ժողովածու) ի թուարեր ամանակաց Հայկազնեան ի Ձ եւ ի Ա համարին, ի նեղ եւ ի դառն ժամանակիս այսմիկ ի դարուս հետեւման եւ այս վասն մեղաց մերոց զի բազմացաւ անհնարին վիշտք եւ նեղութիւնք ի վերայ ամենայն աշխարհի ի ձեռն անաւրէն եւ այլակերպ զաւրուն Նետողաց, որով բազմացեալ են քան զամենայն աւտեղս եւ քան զաւազ ծովու: Իսկ գրեցաւ տառս Աստուածաշունչ ի վանս վարդապետի Վանականի ի Խորանաշատ կոչեցեալ ընդ հովանեաւ սրբոհոյ Աստուածածնիս, որ է յոյս եւ բարեխաւս աշխարհի: Արդ ես Ստեփաննոս քահանայս սիրող եղեալ բանին ապաստութեան վասն պատուիրանացն Աստուծոյ . . . գրել ետու զհոգէշահ բանս . . . : Արդ գրեցաւ երկակ բաներս առաքելական եւ մարգարէական ի տանս Աղուանից ի զաւառիս Երգեւանք կոչեցեալ ի վանս Խորանաշատ սուրբ Աստուածածնիս. ի գլուխ իշխանութեան երկրիս այսմ պարոն Աղպուղային եւ որդոց իւրոց Վահրամ եւ Զաքարէ եւ Իւանէ եւ ի հայրապետութեան Տեառն Ներսէս(ի) Աղուանից կաթողիկոսի: Արդ ով սուրբ մանկուն(ք) եկեղեցոյ . . . որք ակնիք եւ կամ աւրինակ առնոյք զլուսաւոր գիրքս զայս՝ յիշեցէք նախ եւ առաջին զփառաւոր

*եւ զհաստարակաց հայրն զտէր Վանական, որ լուսատու եւ բաշխիչ եղեւ ամենատառ չնորհացն Աստուծոյ, ընդ նմին եւ զձեռնասուն զաւակ իւր զԳրիգորէս վարդապետն, որ այժմիկ յաջորդէ զաթոռ վարդապետին իւրոյ լցեալ բանիւ եւ գիտութեամբ Հոգւոյն սրբոյ, ընդ նմին եւ զՍտեփաննոս եւ զԿիրակոս քահանայք եւ զծնողսն իւրեանց հանդերձ ամենայն բարեկամաւք եւ ընկերակցաւք որ են զաւառաւ Բարերդցի, ի գեղջէն, որ կոչի Խորս եւ սնեալ ի հռչակաւոր ուխտն որ կոչի Տարաւնցիք, որ կան առ ոտս եկեղեցոյն Ամենափրկիչ կոչեցեալ եւ սուրբ Աստուածածնին Մարիամու: Եւ ի վերայ այսր ամենայնի զանարժան եւ զտառապեալ զրիչս զԳրիգոր եւ զծնողսն իմ...: Արդ գրեցաւ գիրս Ստեփաննոսի գրոց աշակերտի զաւառաւ Բարերդցի, գեղջաւ Խփացի ի վանացն Տարաւնցի: Արդ... աստաջիք թէ Քրիստոս... ողորմեայ Ստեփաննոսի եւ հաւրն իմ Հայրապետ քահանայի եւ մաւրն իմ Թեկղ կոչեցեալ եւ եղբաւրն իմ Կիրակոս քահանայի եւ միւս եղբաւրն Աբրահամու...» (Հ. Ն. Ակինեան, Հաւաք. Յիշատ. Ձեռ. էջ. 2273):*

*Գուցէ Պօղոսի եւ Գրիգորիսի յաջորդն ըլլայ՝ Պետրոս վարդապետը, որուն օրով Նարեկ մը կը գրուի՝*

*«Ի ՉԼԲ (1283) թվիս գրեցաւ գիրքս Գրիգորի Նարեկացի... ի վանս Վանական վարդապետի առաջ(նորդ գո)լով Պետրոս վար–*

դապետի... ձեռամբ Մարտիրոսի բազմամեղ ծառայի ի ծերութեան ժամանակի» (Հ. Ն. Ակինեան, Հաւաք. Յիշատ. էջմ. 1563, հմմտ. եւ Յովսէփեան, Գարտէզ հայ հնագրութեան, Վաղարշապատ 1913, էջ 39):

Անկէ վերջը դարերով Խորանաշատի շուրջը լռութիւն կը տիրէ, սակայն անիկա ժամանակին յորձանքին դէմ ողորելով իր գոյութիւնը պահած է եւ զարգանալով նոյն իսկ եպիսկոպոսանիստ եղած: ԺԷ. դարէն ունինք հետեւեալ յիշատակագրութիւնները:

«Արդ գրեցաւ սաղմոսարանս եւ գիրքս ժամատեղաց ձեռամբ Եսայի դրչի... ի յաթոռս Խորանաշատի եւ Վանական վարդապետի ի հայրապետութիւն տէր Յոհան արհիեպիսկոպոսի ի թվականութիւն ՌՀԻ...» (Սարգիսեան, Մայր Ցուցակ, Ա., էջ 288):

Այս յիշատակարանին «ՌՀԻ թուականը ‘ՌՀԻ, սրբագրուած է, որ սակայն սխալ է, վասն զի Ձեռագիրը ոչ թէ Աղուանից Յովհաննէս Զ. կաթ.ի օրով գրուած է, այլ Յովհաննէս Թ.ի ժամանակ եւ Եսայի դեռ ուրիշ յիշատակագրութիւններ ունի այս վերջին շրջանէն[5]: Յամի հազար եւ ՁԸ ներորդի (1639) թուականութեանս Հայոց գրեցաւ

[5] 1637ին Եսայի՝ Աստուածատուր քահանային համար ժողովածու մը կը գրէ՝ «ընդ հովանեաւ մեծայարկ գումբեթաձեւ Խորանաշատ սուրբ Աստուածածնիս եւ Վանական Վ.ի սուրբ գերեզմանիս» (Հ. Ն. Ակինեան, Հաւաք. Յիշ. էջմ. 2116, հմմտ. Կարենեան, Ցուց. հայ. Ձեռ. էջմ. Թ. 2085):

սուրբ Աւետարանս ձեռամբ: Եւ արդ ես անպիտոյս ի բարեաց. մեղաւորս յարդարոց... եւ սուտանուն Եսայի գրիչ, որ անուամբս եմ կոչեցեալ եւ գործովս՝ ոչ, ընդ հովանեաւ սուրբ Խորանչատայ Աստուածածնիս ի գաւառս Ջաղամ, ի դառն եւ անբարբիշտ ժամանակիս, որոյ արդարութեան կողմն հակեալ էր եւ անիրաւութին եւ անկարգութինն ամենայն ուրեք զաւրացեալ եւ ուր ուրեք գտանէր ճշմարտութին վասն ծովացեալ մեղաց խմոց ի բազմանալ անաւրէնացն եւ նուազել քրիստոնէիցն, ի թագաւորութեան Պարսից Շահ Սաֆի եւ Յունաց թագաւորութեան Սուլթան Մուրատա. ի թուականութին Հայոց Ռ եւ Ձէ ամի... ժողովեցան զաւրքն Յունաց, գնացին ի վերայ Բաղդատա բերդին դէմ յանդիման, էառ զբերդն Թոփի եւ զարբաղանաւք եւ կոտորեաց զաւրս բերդին ԺԲՌ զաւրքս Պարսից, որոց փրկեսցէ զմեզ Տէր Աստուած. ի հայրապետութեան սուրբ Գանձասարայ Տեառն Գրիգորիսի. ի յաթոռակալութին սուրբ ուխտիս Խորանչատայ ի Տէր Բարսեղ արհեպիսկոպոսի եւ ի Տէր Յոհաննէսի արհեպիսկոպոսի եւ այլ եղբարցս, որ աստ կան հաւաքեալ: Դարձեալ յիշեցէք զԹումա կրաւնաւորն, որ ստ(աց)ա զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց իւրոց, յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծնողացն Աղին Գուզալ ազին եւ եղբարցն Յախումին եւ Մէլիքին...: Դարձեալ յիշեցէք զԹումա կրաւ-

նաւորն, որ փափականաւք գրել ետ զսուրբ Աւետարանս» (Արձագանք, 1888, էջ 133 եւ 163):

Յովհաննէս արքեպիսկոպոսը դեռ կը յիշուի 1668ին՝ «Փառք․․․ արդ գրեցաւ զսա (Աւետարան) ի յերկիրս Թուռուչու ի գ(ե)աւղս Համայ կոչեցեալ ի դուռն սուրբ Աստուածածնիս ընդ հովանեաւ սուրբ Մանդոոխս ի Թուին Հայկազնիս ՌՃԺԷ ի Հայրապետութեան տէր Պետրոսի ի յաթոռն Խորանաշատու ի յաթոռակայն Յովհաննէս արհեպիսկոպոսին» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. Էջմ. 365. հմմտ. Կարենեան, Ցուց. Հայ. Ձեռ. Էջմ. 294): Յաջորդ տարին 1669ին «Գրիգոր վարդապետս, անարժանս Խորանաշատու առաջնորդ էր, արքեպիսկոպոս» (Անդ, ի Հ. Պոտուրեանէ): Բայց 1683ին կը յիշուի Ովանէս եպիսկոպոս Խորանաշատու, որ Զորաթան գիւղի եկեղեցին կը շինէ (Արցախ, էջ 328): Եւ ապա Իսրայէլ՝ (հմմտ. տես էջ 70):

Խորանաշատի վանքը[6] ժամանակին շատ կարուածներ եւ ինչքեր ունեցած է, սակայն անոնց մեծ մասէն յետոյ զրկուած (Արցախ, էջ 324 հմմտ. եւ Գարեգին Կաթ. Յիշատ. Ձեռ. Ա., էջ 841):

Ճամբորդի մը խօսքերով փակենք այս հոյակապ հաստատութեան պատմութիւնը՝

[6] Այն վանքի մասին հմմտ. դեռ Բիւզանդիոն, 1900, Թ. 1103. Ինճիճեան, Ստորագրութիւն, էջ 312—313. Էփրիկեան, Բնաշխ. Բառարան, էջ 202):

«Օրը տարաժամում է, մենք չենք կամենում հեռանալ վանքից, այնքան հրապուրիչ է իւր գեղեցիկ դիրքով եւ կրօնական ջերմեռանդութիւն ազդող եւ վսեմաշուք տաճարով, վերջապէս իւր պատմական անցեալով . . . չէ՞ որ այս տեղ կացել են այնքան աստուածասէր եւ աղօթասէր կրօնաւորներ, այստեղ ուսել, դաստիարակուել են շատ աշակերտներ՝ խումբ խմբի, սերունդ սերնդի ետեւից եւ այդ բոլոր արդիւնաւոր անցեալից ի՞նչ է մնացել հայ ազգի սեպհականութիւն — լքուած, անտէր, անայցելու մենաստան» (Արձագանք, 1888, էջ 88) :

5· ԽՈՒՆԻՍԱՑ ՎԱՆՔԸ

Գետարակ վտակի ձախ ափին եւ Մօլլայու Թրքարնակ գիւղի մերձ: Փոքրիկ վանք: Ունի կաթուղիկէ եւ գեղեցիկ շինուածք: Անմարդաբնակ (Արցախ, էջ 314· Ազգր· Հանդ· 1899, էջ 347· Հ· Մ· Էփրիկեան, Բնաշխ· Բառարան, Բ·, էջ 212) :

6· ԽՐԹԻՆ ԱՆԱՊԱՏԸ

Գետարակ գիւղի մերձ: Թաւուտ անտառի մէջ: Ունէր հոյակապ եկեղեցի: Եղած է բնակավայր Յովհաննէս Մայրագոմեցիի[7]

[7] Բարխուդարեան գտնէ՝ Ս. Սարգիս ուխտատեղի մը· «Այս տեղ բնակած է Յովհան Մայրագոմեցի գիտնական վարդապետն» (Արցախ, էջ 313) :

(Արձագանք, 1888,– էջ 86· Ջալալեան, Ճամբ․, Բ․, էջ 360· Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն, էջ 31)։

7· ԾԱՂԿՈՑ ՎԱՆՔԸ ԿԱՄ ԾԱՂԿՈՑԱՑ ԱՆԱՊԱՏԸ

Բարձրացած է Գառնակեր գիւղի մերձ Ցամքոր գետակի ձախ ափին՝ ժայռի մը գլխուն։ «Մենաստանս ոչ սիւներ ունի եւ ոչ կաթուղիկէ, այլ ունի սովորականից շատ մեծ դուռն, բարձրագոյն շինուածք եւ նեղ նեղ լուսամուտներ» (Արցախ, էջ 316)։ Ունի քարաշէն գաւիթ մը։ Խաչքարի մը վրայ գրուած է՝ «Տէր Ունան պարոն Գարրիէլին քաւարան, թվ․ ՌՃԼԸ», իսկ ուրիշ խաչքարի մը վրայ կայ՝ «ՋԻԵ» թուականը (Ազգր․ Հանդ․, 1899, Ե․, էջ 343)։

Ջալալեան այս մենաստանը կը նոյնացնէ Հրեշտակապետաց վանքի հետ (Ճամբ․, Ա․, էջ 162)։ Շինութեան տարին անծանօթ է։ Գառնակերցիներու «Ասելով այս տաճարն եղել է կուսանաց անապատ եւ Ծաղիկ մայ– րապետի անունով կոչուել է Ծաղկոցայ։ Բայց եթէ արդարեւ կուսանաց մենաստան եղած լինի այս, Ծաղիկ անունից Ծաղկոցայ կոչուել չէր կարող․ գուցէ Ծաղկանոցի կրճատումն է Ծաղկոցը» (Արձագանք, 1886, էջ 308· հմմտ. Հ․ Ս․ Էփրիկեան, Բնաշխ․ Բառարան, Ա․, էջ 466)։

Յիշատակագրութեան մը մէջ նշանա– կուած է՝ «Փառք․․․ արդ եղեւ աւարտ գրչու–

*թեան սորա ի գեղաքաղաք Եղիվարդ ի կաթողիկոսութեան Տեառն Գրիգորի ի Թվ. Հայոց ՋԺԶ (1467) ի դառնութեան ճհանչահին ի խնդրոյ Մատթէոս քահանայի...: Աղաչեմ յիշել զնկարող սորա զանարժան Աղարիայ կրօնաւոր... եղեւ նկարակերտութիւն ի յերկիրս Գանձակայ ի յաթոռս Գառնակերի ի դուռն Ծաղկոցի սուրբ Աստուածածնիս... ի կաթողիկոսութեան Տեառն Տէր Յովհաննիսի եւ տեղոյս աթոռակալութեան տէր Ծերունի արքեպիսկոպոսի...: Յայսմ ամի թագաւորն Վրաց Կաւկի ձեռն... (չիք) ի Ղուրդաւրոյ քաջոյն եւ թագաւորեցաւ Բաքրատ, զոր Տէր Աստուած զօրացուսցէ»* (*Հ. Ն. Ակինեան, Հաւաք. Յիշ. Ձեռ. Տէր Աւետիսեանի Յուց. հայ. Ձեռ. Նոր Ջուղայի, Թ.* 60):

## 8. ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔԸ

*Կարմիր վանքը կամ Ղզըլ–քիլիսա կանգնուած է Աղքիլիսի հարաւային կողմը, Բաքաջան վտակի ձախ ափին, բարձր ժայռի մը վրայ: Իսկական անունն՝ անծանօթ: Կարմիր վանք յորջորջուած է, վասն զի կարմիր քարերով շինուած է* (*Արցախ, էջ* 312):

## 9. ՀԱՐԱՆՑ ՎԱՆՔԸ

*Գառնակեր գիւղի մերձ: Աւերակ: Մօտերը կան վարդապետներու եւ միաբաններու գերեզմաններ* (*Արցախ, էջ* 317):

## 10․ Ս․ ՀՌԻՓՍԻՄԷԻ ՎԱՆՔԸ

Բարսում գիւղի երկրորդ վանքն է։ Ամբողջապէս քարուկիր։

Բարխուդարեան կը գրէ՝ «Այս է Գօշ-Մխիթարի ակնարկած Հռիփսիմէի մենաստանն» (Արցախ, էջ 318—319)։

Համանուն վանք մըն ալ կայ Ալիղըրըղ գիւղի արեւմտեան կողմը։ Շինուած է կոփածոյ քարերով (Սմբատեան, Գեղարքունիք, էջ 544)։

## 11․ ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԱՑ ՎԱՆՔԸ ԿԱՄ ԳԱ(Ռ)ՆԱԿԵՐՈՑ ՎԱՆՔԸ

Գառնակեր գիւղի մօտերն է Գաբրիէլ եւ Միքայէլ Հրեշտակապետաց վանքը։ Տաճարը ունի երկու փոքր եւ մէկ աւագ խորան, 11 մետր երկարութիւն եւ 8 մետր լայնութիւն։ Քարուկիրով շինուած է գաւիթը, ուր ննջեցեալներ ամփոփուած են։ Շիրիմնաքարի մը վրայ կարելի է կարդալ՝ «Այս է հանգիստ ճգնաւոր Յովհաննէս վարդապետի. շինող վանիս՝ Մաղաքի որդի, թվ. ՌՄՀէ»։ Ուրիշ արձանագրութիւն մըն ալ շինութեան մասին կ՚արտայայտուի՝ «Շնորհիւն Աստուծոյ շինեցաւ սուրբ Միքայէլ եւ Գաբրիէլս ձեռամբ Յովհաննէս վարդապետի եւ մահտեսի Յովհաննէսի հանդերձ միաբան եղբարբք թվ. ՌՄԿԵ» (Արցախ, էջ 316․ Արձագանք, 1886, էջ 308․ Ջալալեան, Ճամբ․, Ա․, էջ 162․ Ազգր․ Հանդ․, 1899, Ե․, էջ 343․

Հ. Մ. Էփրիկեան, Բնաշխ. Բառարան, Ա., էջ 466. Հմմտ. Ծաղկոցայ վանքը):

Մխարաններու համար շինուած են ինը սենեակ:

Վերյիշեալ Յովհաննէս վարդապետ այս վանքին կա՛մ հիմնադիրն է եւ կամ վերաշինողը:

Գուցէ այս եւ կամ Ծաղկոցայ վանքը ակնարկուած ըլլայ հետեւեալ յիշատակագրութեան մէջ՝ «Գրեցաւ (Աւետարանս)... ի սուրբ ուխտս ի Գանայգեայ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս (որ Գառնակերի եկեղեցին է)... ձեռամբ Իգնատիոսի» (Թօփճեան, Յուց. հայ. Ձեռ. Դաղ. Վ.ի, Բ., էջ 46. Հմմտ. եւ Արցախ, էջ 315):

## 12. ՂԱՐԱ-ՄՈՒՐԱՏԻ ԱՆԱՊԱՏՆԵՐԸ

Մեծ Ղարա-Մուրատի մերձ վտակի մը քով կիսաւեր անապատ մը կայ: Իսկ գիւղին մէջ կայ կուսանաց անապատ մը, որուն փոքր եկեղեցւոյն դրան վրայ գրուած է՝ «Տնօրհին Աստուծոյ ես Ովանէս վարդապետս, որդի ապաշխարողի շինեցի զեկեղեցիս (անապատ կուսանաց) արդեամբ զուիք (գդյուք) ամենայն քրիստոնէից յիշատակ ինձ եւ ծնողացն իմոց եւ ամենայն աշխատողաց ի մայրապետութեան անապատիս Թագուհւոյն եւ կայինային ի ՌՃԾ. թվ.» (Արցախ, էջ 309 եւ Ազգր. Հանդ., 1899, Ե., էջ 326—327. Հմմտ. Խամշի վանքը):

Ղարա–Մուրատի այս անապատներէն մէկը, հաւանականաբար առաջինը կոչուած է Հարանց անապատ։

Յիշատակագրութեան մը մէջ կայ՝ «Գրեցաւ սուրբ Աւետարանս ի դառն ժամանակիս ի լաւ ընտիր աւրինակէ ի յերկիր Վերին Ջակամ ի Ղարամուրատի Հարանց անապատիս ձեռամբ մեղօք զառածեալ Աւետիս աբեղայի, որ եմ յերկրէն Տաւուշու ի գեղջէն Բամալու, եւ ի Թուականիս Հայոց ՌՃԻԸ» (Արցախ, էջ 284)։

Անկէ յառաջ ՌՃԻԳ թուին Յովհաննէս եպիսկոպոս առաջնորդի ժամանակ Աւետարան մը Ղարամուրատի Հարանց անապատի Ս. Աստուածածին եկեղեցւոյն վախմ կը տրուի (անդ, էջ 334. հմմտ. եւ դեռ անդ, էջ 281—282)։ Գուցէ այս Հարանց անապատ կոչուածը Խամշի վանքն ըլլայ։

Կարեւոր է եւ այս յիշատակագրութիւնը՝ «Եղեւ գրաւ գրչութեան (Աւետարանի)... ձեռամբ... Աւետիս անպիտան քահանայի ի թուականութեան ՌՃ եւ Ժ (1661) թիւ աւելի ի յերկիրս Վերին Ջակամ, ի գեօղս որ կոչի Պապճան ընդ հովանեաւ Ջուխտակ եկեղեացս հնոյն սուրբ Աստուածածնի եւ նորոյս Սուրբ Գրիգորի Լուսաւորչիս եւ սուրբ Յովանէսի եւ այլ սրբոցն որք աստ կան։ Եւ յաթոռս Աղվանից Գանձասար կոչի, ի հայրապետութեան Տեառն Պետրոսի սուրբ գլխապետի երիցս երանեալ կաթողիկոսի։ Եւ յառաջ–

նորգութիւն երկրիս մերում սրբասնունդ բարունապետի եւ կուսակրօն Սարգիս վարդապետի։ Եւ մերոյ նահանգիս յանապատն Ղարմուրատի, ի սոյն ամի հանգեաւ ի Քրիստոս սուրբ հայրն հարանց տէր Տէրուն առաջնորդ սուրբ ուխտին... եւ յետ սորին եղեւ առաջնորդ Գրիգոր պարոնտէր երջանիկ հեզահոգին՝ հոգոյ որդի սուրբ հօրն տէր Տէրունի...» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. Ձեռ. Երեւան, 161)։

## 13. Ս. ՆՇԱՆԻ ԿԱՄ ԱԽԱԳ Ս. ՆՇԱՆԻ ՎԱՆՔԸ

Բերդ գիւղի մօտ՝ մատուռ մը, զոր սակայն ժողովուրդը վանք կը կոչէ — գուցէ աւանդութեան մը վրայ յեցած (Արցախ, էջ 330. Արձագանք, 1888, էջ 88)։

## 14. ՋԱՐԵՔԱՑ ԿԱՄ ՋԱՐԵՔԱԳԵՏԻ ԱՆԱՊԱՏԸ

Այս անապատը Շամքոր գետակի ձախ ափին հիմնուած է (Տահազ, էջ 92. Արցախ, էջ 313)։ Տաճարը սագաշէն եւ փոքր է։ Շինուած է չորս սիւներու վրայ եւ ունի 17.28 մետր երկարութիւն, 9.72 մետր լայնութիւն եւ 8.64 մետր բարձրութիւն (Ազգր. Հանդ. 1899, Ե., էջ 337)[8]։ Օժտուած է տաշուած քարերով կերտուած գաւիթով մը, որուն հարաւային որմին վրայ կայ՝ «Ի թվին ՌՃԼԳ. շնորհաւք ամենակալին Աստուծոյ

[8] Հմմտ. Արտատպութիւնը՝ Գանձակի գաւառը, գրեց Ե. Լալայեան, Թիֆլիս 1900, էջ 129։

կառուցան յանուն Փրկչին վերնատուն, տեղի Հոգւոյն Ճշմարտի, եկեղեցիս սուրբ եւ գաւիթ գովելի, շինեցաւ ձեռամբ Տեառն Ներսիսի, հանդերձ եօթնանեղբարց ամենի փրկութեան»: Իսկ արեւմտեան դրան սեմին վրայ կը կարդացուի՝ «Սուրբ խաչս բարեխաւս տէր Մովսէսին Ներսէսեանց վասն փրկութեան հոգւոյ Բարխուդարին, որ բազում սիրով ետուն շինել գաւիթ սուրբ եկեղեցւոյն» (Արցախ, էջ 313—314. Արարատ, 1872, էջ 271): Զանգակատան վրայ ալ կայ՝ «Ի թուին ՌՃԼ. կամաւք Աստուծոյ շինեցաւ զանգակատունս յանուն Հրեշտակապետացն Միքայէլի եւ Գաբրիէլի ի հայրապետութեան Պետրոսի սրբազան կաթուղիկոսին տանն Աղուանից եւ յառաջնորդութեան սուրբ ուխտիս եւ անապատիս Զարէքայ Սարգիս վարդապետի ձեռնտուութեամբ եւ աղաւթիւք եօթանասուն միաբանից. կատարումն եղեւ խորանիս ի փառս Աստուծոյ. արդ ես Քրիստոսի ծառայ Սարգիս եւ աղաւթաւոր եղբարքս շինեցաք զսուրբ կաթուղիկէս ի փրկութիւն հոգւոյ մերոյ եւ ամենայն հետեւողաց, որք ընթեռնուք, յիշեցէք զմեզ ի Քրիստոս» (Արցախ, էջ 314. Նոր Դար, 1893, Թ. 35):

Զարեքայ անապատին մաս կը կազմէ նաեւ Հարանց մատուռը, որ այս արձանագրութիւնն ունի՝ «Ի թուին Հայոց ՌՃԺԶ. ի հայրապետութեան տեառն Պետրոսի կաթուղիկոսին, եւ Քրիստոսի ծառայ Սարգիս վար-

դապետս կանգնեցի զխաչս ի լուսաւորութիւն հոգւոյ իմոյ եւ ծնողաց իմոց տէր Յաւանէ- սին, Եղիսաբէթին եւ միաբանիցս, որք աստ կան հանգուցեալ եւ ամենայն ողորմածաց մերոց․․․» (Արցախ, էջ 314)։

Յառաջ բերուած արձանագրութիւններէն ցայտուն երեւան կու գայ որ Սարգիս վար- դապետը եղած է ճարպիկ եւ սիրուած ան- ձնաւորութիւն մը, որուն շուրջ համա- խմբուած են եօթանասուն միաբաններ եւ նա գտած է միջոց Զարեքայ անապատը զարդաց- նելու։

Հարանց այս մատուռին մէջ ամփո- փուած են աճիւնները Դաւիթ եպիսկոպոսի, Կիրակոս, Ներսէս, Սահակ եւ Սարգիս վար- դապետներու եւ Խաչատուրի, որոնք վան- քին համար արդիւնաւոր եղած են (Արցախ, էջ 313—314․ Արձագանք, 1886, էջ 330—331․ Տաճատ, էջ 91—92․ Ջալալեան, Ճամբ․, Ա․, էջ 164—166)։

Զարեքի մէջ կան դեռ հետեւեալ արձա- նագրութիւնները՝ «Սուրբ խաչս բարեխօս Մանուէլի, Թվ․ ՌԿՁ»։ — «Սուրբ խաչս բա- րեխօս է Դաւիթ եպիսկոպոսին հարն եւ ննջեցելոց Թվ․ ՌՀ»։ — «Սուրբ խաչս Պետ- րում բէկին, Մակասարին»։ — «Այս է տա- պան Դաւիթ վարդապետին, որ փոխեցաւ առ Քրիստոս, Թվ․ ՌՄՀԵ»։ — «Տէր հա- տի (°) զնեղութիւնս տէր Մովսէսի, Ներ- սէսի, Օսէփանին եւ Պարխուդարի, ձեզ պահէ անփորձ աշխարհի»։ — «Այս է հան-

գիտ Դաւիթ եպիսկոպոսին, Թուին ՌՂԲ» (Ազգր. Հանդ. 1899, Ե., էջ 398. Արարատ, 1872, էջ 170—171. Նոր Դար, 1893, Թ. 35—36. Բազմավէպ, 1891, էջ 39)։

Զարեքի պարիսպը 786 կանգուն երկար է եւ 9 կանգուն բարձր (Ջալալեան, Ճամբ., Ա., էջ 163)։ Անոր դրան ճակատին վրայ գրուած է «Ի Թուին ՌՃԿԳ ես Մկրտիչ վարդապետս շինեցի պարիսպս, որ եղեւ խարճ ԻԸ. Թուման. Ովանէս վարդապետն տուաւ Ժ. Թուման, շինեցաւ»։

Զարեքի մէջ ամփոփուած էին Դանիէլ մարգարէին, Պանդալէոն բժիշկին եւ Խօսրով նահատակին մասունքներէն (Արձագանք, 1886, էջ 340)։

Առաքել Դաւրիժեցին Զարեքի հիմնարկութիւնը այսպէս կ'աւանդէ՝ «Եւ Դաւիթ եպիսկոպոսն, որ Շամքօրու ձորէն եւ ի ցեղէն իշխանաց, որ Ղարամանենց կոչին, սա եւս եկեալ եկաց ի մեծ անապատս եւ ապա ելեալ գնաց ի ձորն Շամքօրու եւ անդ շինեաց անապատ, զոր կոչեն Զարագետի անապատ, որ է բազմաժողով եղբարց բնակութիւն եւ յոյժ հաստատուն ամենայն կարգօք եւ սահմանօք անապատի մինչեւ ցայսօր եւ ինքն Դաւիթ եպիսկոպոս անդէն վախճանեցաւ եւ անդէն Թաղեցաւ» (Պատմ. Հայոց, էջ 253—254)։ Մինչդեռ Կարապետ կաթողիկոսը (Ուլնեցի) վանքին ի նպաստ հանգանակութեան համար հանած կոնդակին մէջ (գրուած Պոլսէն, ուր էր 1727ին նորընտիր

*կաթողիկոսը, Չամչեան, Պատմ. Հայոց, Գ., էջ 801—803) այսպէս կ'արտայայտուի՝ «Յորոց բազմաց սրբոց Անապատաց մին է այս հռչակաւոր եւ անուանի Զարեկու անապատն, որ է աշխարհն Աղվանից Գայնճայու ի ձորն Ծամքոռու եւ է կառուցեալ եւ հաստատեալ ձեռամբ իշխանացն Սամռուտի եւ Ղարամանի որդւոց եւ թոռանց, որպէս ցուցանէ Առաքել պատմագիրն գլխակարգ պատմութիւն սուրբ անապատին Զարեկու..» (Արձագանք, 1886, էջ 340)։*

*Մինչ Կարապետ կաթողիկոսն իր խօսքը Առաքել պատմագրի վկայութեամբ կ'ուզէ համոզեցուցիչ ընել ու հաստատել, անոր էական տեղեկութիւնը չի հաստատեր։ Սա՝ հիմնադիր ու շինող Դաւիթ եպիսկոպոսը կը ճանչնայ, մինչդեռ ինքը Սամռուտ եւ Ղահրիման իշխանները։ Ջալալեան ուզելով զանոնք հաշտեցնել կը գրէ՝ «Շինեալ... ձեռամբ Դաւիթ եպիսկոպոսի եւ օգնականութեամբ Սամռուտայ եւ Ղահրամանայ իշխանաց» (Ճամբ., Ա., էջ 163)։ Քաջիկեան կ'արտայայտուի թէ Ջալալեան այսպէս կը վարկանի՝ «առանց մի պատմական հիմք ցոյց տալու» եւ կը յաւելու՝ «Մենք ընդունում ենք Առաքել վարդապետի վկայութիւնը, քանի որ նա ժամանակով յառաջ է Կարապետ կաթուղիկոսից եւ քանի որ վերջինս նորան է ցոյց տալիս։ Ղարաման եւ Սամռուտ իշխաններ եղել են արդարեւ Գարդման գաւառի այգ մասում, առաջինի գոյութիւնը հաստա-*

տում է Առաքել պատմագիր որ Դաւիթ եպիսկոպոսի մասին ասել՝ «Ի ցեղէ իշխանաց, զոր Ղարամանենց կոչեն, իսկ Մամռուտի անունը պահել է մինչեւ այսօր նրան անառիկ ամրոցն, որ դեռ մեծ մասամբ կանգուն է մնացել եւ գտնուում է Զարէքայ վանքից մէկ ժամ հեռու...։ Ժամանակակի՞ց են եղել արդեօք դոքա մէկմէկի եւ Դաւիթ եպիսկոպոսի մասնակցել, օժանդակե՞լ են յիրաւի անապատի կառուցման՝ չգիտենք։ Այս միայն հաւանական ենք կարծում, որ նրանց վերաբերեալ խօսքերը մուծել տուած պիտի լինի կոնդակների մէջ այն վանականն, որ խնդրել է ժողովարարութեան համար, զուցէ տեղական աւանդութիւնն ունենալով աչքի առաջ» (Արձագանք, 1886, էջ 331)։ Երկուքին վարկածներն ալ կրնան պատահած ըլլալ. Քանի որ Դաւիթ Ղահրամանենց տոհմէն էր. բնական է որ իր ընտանիքին անդամները փութային իր ձեռնարկին յաջողութեան եւ դարձեալ քանի որ Զարէք Մամռուտ իշխանին ամրոցին մօտ էր, նա եւս ինչո՞ւ ուրիշ շատ իշխաններու նման իր օժանդակութիւնը չտար մերձաւոր անապատի մը։

Կարապետի հետեւեալ խօսքերէն՝ «գլխակատար պատմութիւն սուրբ անապատին Զարեքու» կարելի է ենթադրել՝ թէ նա իր աչքին առջեւ ունէր սոյն վանքի մասին ընդարձակ գրութիւն մը եւ ոչ թէ Առաքելի գրութիւնը կ'ակնարկէ, վասն զի ան փոքր գեկոյց մըն է։

Կարապետ Ուլնեցին իր կոնդակին մէջ կը յիշատակէ «հեղահոգի եւ աստուածարան» Դաւիթ վարդապետը որ Երուսաղէմ կը մեկնի եւ մաս մը՝ «Ի կափարիչ վէմէն» առած կը վերադառնայ: Դարձեալ շատ գովեստով կը խօսի Զարեքի միաբաններուն մասին՝ «Անդ ժողովեալ կան բազում միաբան եղբայրք խարազնազգեստք ճգնաւորք ի դառնացեալ եւ ի նեղ ժամանակիս, որ խստակրօն ճգնութեամբ եւ աղօթիւք տքնին սաղմոսերգութեամբք, պաշտամամբք եւ պատարագօք, որ եւ տարին բոլոր միաժամ ճաշակեն, տիւ եւ գիշեր անդադար ծնրադրութեամբ չարչարեն զմարմինս...» (Արձագանք, 1886, էջ 340, հմմտ. եւ Առ. Դուրիժ. Պատմ., էջ 253. հմմտ. Դաւիթի մասին դեռ Թօփճեան, Յուց. Հայ. Ձեռ. Դաղեան Վ.ի, Բ., էջ 46):

Դաւիթ եպիսկոպոսի յաջորդներու Սարգիսի եւ Ներսէսի գործունէութիւնը արձանագրութիւններու մէջ (հմմտ. վերը) յիշուեցաւ: Անոնց օրով ծաղկուն շրջան մը կը բոլորէ Զարեք եւ բազմանդամ է: Սակայն ապա կողոպուտի կ՚ենթարկուի: Բայց Մկրտիչ վարդապետի ջանքերով դեռ ժամանակ մը կը կենդանանայ (Արձագանք, 1886, էջ 331. Ազգր. Հանդ. 1899, Ե., էջ 339 եւ Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք Հայ Երուսաղէմի, էջ 521):

Իսկ Սարգիս առաջնորդի ընտիր գործունէութեանը մասին կայ հետեւեալ ընդար-

ձակ յիշատակագրութիւնը՝ «Աստանօր կատարեցաւ... ծաչոց(ս) ի թուականութեան հայկազան տումարի ՌՃԺ եւ Դ ամին (1665) ի թագաւորութեան Պարսից Շահապասին եւ ի հայրապետութեան տանս Աղուանից Տեառն Պետրոսի սրբազան կաթուղիկոսի կրկին Լուսաւորչի ի յետինս ժամանակի ի յաթոռն Գանձասարայ ի յերկնահանգէտ եւ ի դերահռչակ ուխտս, որ կոչի Ջարէքու անապատ ընդ հովանեաւ մօրս լուսոյ սուրբ Աստուածածնիս ի հրաշափառ երկնանման սուրբ կաթուղիկէիս լուսազարդ հրեշտակապետիս եւ առաջնորդութեան տեղւոյս Տեառն տէր Սարգսի աստուածարան վարդապետի... որ վերատին ուղղեալ զկարգ սուրբ ուխտիս եւ զարդարեալ պայծառացոյց հոգեւոր հրճուանօք եւ պարապեալ ամբացոյց եւ նորոգեալ զամենայն սենեակս եղբարցն: Այլ եւ շինեաց զանգակատունս բարձր եւ պայծառ եւ ստացաւ բազում անօթս պատուականս եւ զգրեանս հոգիակեցոյցս: Եւ յետ ամենայնի փափագեաց այսմ հոգիարուղխ վայելչարանիս եւ ետ գրել եւ զարդարել ոսկով եւ երփն գունովք վասն յիշատակի հոգւոյ իւրոյ եւ ծնողացն հօրն Յովհաննէս քահանային եւ մօրն Եղիսաբեթին եւ հանգուցեալ եղբօրն Յակոբին, որ զվարձ ծաղկելոյն Բ. թուման նաետ...: Այլ եւ յիշեցէք ի Քրիստոս զհեզահոգի եւ մաքրամիտ Սարգիս բարունապետն եւ ամենայն միեղէն... մխարանք սուրբ ա-

նապատիս զտէր Ներսէս քաջ եւ ամենիմաստ վարդապետն եւ զտէր Նահապետն խոհեմ եւ սրբասէր, զսրբազնեալ հայրն արի զտէր Սահակ խոստովանողն միաբանիցս, զտէր Խաչատուրն խարազնազգեաց, զտէր Ներսէսն արի եւ փոքր, տէր Ովանէսն միամիտ, զտէր Եղիէն սրբասնունդ, զԳասպարն վերակացու ուխտիս, սիրելի եղբայրն մեր Մինասն, զմեծ Ակորն եւ զԴաւիթն, զՄեսրոպն եւ զտէր Մաթէոսն, զՄովսէսն եւ զԲ. Յովսէփն, զերկու Խաչատուրն եւ չորս Կիրակոսքն, երկու Ազարիէն եւ զԿոստանդն, զՄկրտիչն եւ զԲարսեղն, զԽաչատ Գասպարն եւ զՍիմէոն գարբինն, զՍուքասն եւ զԲ. Գրիգորն, զԱռաքելն եւ զԹումէն, զՍարգիսն եւ զՍիմէօնն, զԱւագն եւ զերկու Ովանէսն, զԱնտոնն եւ զՄարկոսն, զերկու Մարտիրոսն եւ զՅակոբն, զՂուկասն եւ զԿիրակոսն, զՀայրապետն եւ զՍահակն: Սոքա Հ. միաբանքս կան բնակեալ ի սուրբ անապատիս առեալ յանձն զխաչս Քրիստոսի...:

Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զտէր Սարգիսն զահերէց եւ զլուխ արհի վարդապետն եւ զփոքր եղբայրս զՄխիթարն եւ զկողակիցն իւր:

Արդ ես Նուաստս... զծօղս եւ զծաղկօղս սուրբ տառիս... աղաչեմ յիշեցէք... զտէր Սարգիս հայրն հարանց եւ զարդն անապատի զտէր Սահակն... (Գրիգորի հայրն է՝ Յովհաննէս, մայրը՝ Մարգարիտ, եղբայրները՝ Գրիգոր, Եղիէ, Աստուածատուր եւ Վարդա-

նան, որդիները՝ Պալատան դպիր եւ Ղազար․ հմմտ․ Հ․ Ն․ Ակինեան, Հաւաք․ Յիշատ․ Ձեռ․ էջմ․ 986․ Կարենեանց, Մայր Ցուց․ Թ․ 882)։

Բաց ի այս յիշատակագրութենէն ծանօթ են դեռ հետեւեալները։

Առաքել 1579ին Զարեքի մէջ կը գրէ Աւետարան մը (Հ․ Ն․ Ակինեան, Հաւաք․ Յիշատ․ Հ․ Պատուրեանէ, 1579), որով յայտնի կ՚ըլլայ որ Դաւիթ սոյն վանքին հիմնադիրը չէ, այլ վերականգնողն ու զարդարողը։ Նա 1637ին կը ստանայ Ձեռագիր մը (հմմտ․ Հ․ Ն․ Ակինեան, Մովսէս Տաթեւացի կաթողիկոսը, էջ 161)։

Սարգիս կրօնաւորը՝ «Ի սուրբ ուխտս Զարեքա․․․» կ՚արտագրէ Աւետարան մը (Արցախ, էջ 144․ Թօփճեան, Ցուց․ հայ․ Ձեռ․ Դաղեան Վ․ի, Բ․, էջ 146)։ Իսկ 1655ին հոն Շարակնոց մը կ՚աւարտի (Արցախ, էջ 388)։ Մինչ Ներսէս վարդապետը 1699ին կը գրէ Գիր Օրհնութեան (Conybeare, Cat. Arm. Brit., Ա․, էջ 265) եւ 1704ին Գաւազանագիրք մը (Թօփճեան, Ցուց․ հայ․ Ձեռ․ Դաղեան Վ․ի, Բ․, էջ 52)։

Զարեքայ վանքը ստացած է շատ մը նուիրատուութիւններ եւ տիրացած կալուածներու, որոնց գրաւումին դէմ դիրք բռնած է Աստուածատուր վարդապետը, որ 1902ին աւազակներէ կը սպաննուի (Լումայ, 1902, Դ․, էջ 256․ Մշակ, 1883, Թ․ 129․

*Ազգր· Հանդ·*, 1913, *ԻԵ·*, *էջ* 74—75[9], *Տա-հագ*, *էջ* 91· *Մեղու Հայաստանի*, 1883, *Թ·* 102 *եւն*) :

## 15. ՓԱՌԽՍՈՍԻ ՎԱՆՔԸ

*Համանուն գաւառի այս վանքը կանգնուած է Տանձուտէն քիչ մը վեր՝ անտառապատ սարահարթի վրայ: Ունեցած է երեք եկեղեցի, երեքն ալ միեւնոյն ոճով, միայն թէ միջինը՝ քիչ մը մեծ: Անոնցմէ մէկուն դռնագլուխ քարին վրայ կայ՝ «Մուսէս երէց» (Արցախ, էջ* 306) : *Ունեցած է կրաշէն եւ յոյնանխատ պարիսպ (Ջալալեան, Ճամբ·, Բ·, էջ* 359· *Մեղու Հայաստանի*, 1859, *էջ* 100) : *Միաբաններու սենեակներն աւերակ (Ազգր· Հանդ·* 1899, 1, *Ե·*, *էջ* 340) :

*Հին վանք: «Յառաջնորդութենէ Փառխոսոյ» էր տէր Պետրոս կաթողիկոսը*[10] : *Անոր յաջորդն ալ Մովսէս էր «Վանական Փառխոսոյ» (Կիր· Գանձ·, էջ* 101 *եւ Ալիշան Հայապատում, Բ·, էջ* 341) *ուր եւ այս ծանօթութիւնը՝ «Նշանաւոր վանք Ուտի նահանգի, Գարդման գաւառի մէջ, Սեւանայ ծովուն արեւելեան հիւսիսակողմն»:* — 1657*ին «ի վանս Փառխոսոյ» Յակոբ վար-*

---

[9] *«Ջարեքայ վանք կամ Խօթայ վանք կրկնակի անունով է յայտնի Ղարապաղի թեմում գտնուած (էջմիածնի) վանքապատկան կալուածքը, որ* 46·000 *դեսիատին տարածութիւն ունի»:*

[10] *Հմմտ· Գանձասար վանքը:*

ղապեռն Աւետարան մը կը գրէ (Սմբատեան, Երնջակ, էջ 150, նոյնը՝ Շամախի, էջ 244)։ Եղած է կաթողիկոսանիստ (Հմմտ. վերը՝ էջ 70)։ Անոր առաջնորդներէն է նաեւ «Հայր Դաւիթ» (Հմմտ. վերը էջ 65)։

Թուրքերը այս վանքը ուխտարներու փա– րախի կը վերածեն (Նոր Դար, 1893, Թ. 36)։

## Ը.

## ՔՈՒՍՏԻԻ ՎԱՆՔԵՐԸ

Քուստի — արդ Ղազախ — գաւառը Տաւուշ գետակի հարաւային օժանդակի (Ախնջի) Աղստեւ գետի եւ Գեղամեան լեռնաշղթայի ու Դաշտաբերանի միջեւ է:

### 1. ԱՆԴՐԷԻ ՎԱՆՔ

Ծանօթ Կիրակոս Պատմագրէն՝ «Եւ ինքն (Վարդան) եկեալ ի ձորն Կայենոյ ի մենարանն իւր, զոր սուրբ Անդրէն կոչէին հանդէպ անառիկ բերդին Կայենոյ» (Պատմ. Հայոց, էջ 174): Վարդան վարդապետը հոն դադարելով՝ հետամուտ կ՚ըլլայ աշակերտներու կրթութեան (անդ, էջ 174): Այժմ «բոլորովին խախտուած, միայն հիմնապատերը կ՚երեւան» (Ազգր. Հանդ. 1898, էջ 324. հմմտ. եւ Լումայ, 1901, էջ 155): (Գուգարքի վանքերու շարքէն է:)

### 2. ԳԵՏԱԿԻՑ ՎԱՆՔԸ[1] տես ՇԽՄՈՒՐԱՏԱՑ ՎԱՆՔԸ ԵՒ ԳԵՏԿԱՑ ՎԱՆՔԸ

### եւ

### ԳԵՏԱՄԻՋԻ ՎԱՆՔ տե՛ս ԾԱՐԻ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ

---

[1] Կիրակոս կը յիշէ Գետակից վանքը (Պատ., էջ 73): Ինճիճեան գիտել կու տայ որ այս թէեւ Գե–

Ղօշավանք չէնի մէջ է, Դիլիջան աւանէն դէպի Արեւելք. մօտ 14—15 վերստ հեռաւորութեամբ... Տանձուտ կոչուած ձորի մէջ գեղեցիկ հարթավայրի վրայ բարձրացած է Գետիկ վանքը կամ միայնարանը (Յովսէփեան Գար. արքեպ. Հաւուց Թառի Ամենափրկիչը..., էջ 62. Ազգր. Հանդ. 1903, Ժ., էջ 17), որ իր երկրորդ հիմնադրին — Մխիթար Գօշի — անունովը կնքուած է նմանապէս Գօշ Մխիթարի կամ Գօշայ վանք[2]:

Գետիկ վանքը երեք կողմէ բարձր եւ անտառապատ լեռներով շրջափակուած է եւ միայն արեւելեան կողմը ազատ է: Քանի մը եկեղեցիով օժտուած է: Առաջին եկեղեցին — Ս. Աստուածածին — շինուած է տորոնագոյն՝ տաշուած քարերով եւ Գանձասարի ոճով: Ունի չորս աւագ խորան, երկու խորհրդարան, տասնուերեք լուսամուտ, վեգարաձեւ կաթուղիկէ մը, երկու դուռ, 15·75 մետր երկարութիւն եւ 11·50 մետր լայնութիւն: Յատակը սալաքարերով ծածկուած է: Սեղանը սրբատաշ քարերով շինուած է եւ աջ ու ձախ կողմերը երկյարկանի խորաններ ունի (Ազգր. Հանդ. 1903, Ժ., էջ 21):

---

տիկի հետ նոյն չէ, սակայն անոր քովերը կը գտնուի (Ստորագրութիւն, էջ 514), մինչ Բարխուդարեան կը միտի զայն Ծիմուրատի հետ միացնել (հմմտ. սոտ վարը կամ Արցախ, էջ 335):

[2] Ծանօթ է Գօշայ կամ Կոշայ վանքը Արագածոտնի մէջ (Ալիշան, Այրարատ, էջ 145—146):

Աջակողմեան դասի Բ. խորանին ճակատին վրայ կը կարդացուի՝ «Ի ՌԽ. թուին զկնի չորս ամաց առնլոյ զՆրուսաղէմ Սալահադինին սկսեալ եկեղեցիս սուրբ ի Նորս Գետիկ եւ կատարի ամս է ի խանդար Ջատկին Յունաց ձեռամբ վարդապետին Մխիթարայ ի հայրութեան Վարդանայ, ձեռնտուութեամբ բարեպաշտ իշխանին Վախտանկայ եւ նորին զուգակցին Արզուխաթունին եւ նորին եղբարցն Սմբատայ, Վասակայ եւ խորթն Գրիգորոյ եւ նոցին զաւակացն։ Լիցի նոցա պատարագ յեկեղեցիս ի տանի սուրբ Աստուածածնին Գ. աւուրն, բայց Զ. Հասանայ հաւրն Վախտանկայ, Ա. մաւրն նոցին Մամին եւ Ա. հաւրն Արզուխաթունին Քրտին բարեպաշտի անխափան» (Արցախ, էջ 350. Շահխաթունեան, Ստորագրութիւն, Բ., էջ 367. Հմմտ. եւ Ջալալեան, Ճանապարհորդութիւն, Ա., էջ 14. Սմբատեան, Գեղարքունիք, էջ 173)։

Աւագ խորանին վրայ կայ՝ «Յուսով ողորմութեան Աստուծոյ ես Ճարս որդի պարոն Ումեկին, թոռն Ճարին, աշխարհաւ Մանածկերտացի, յաշխարհակալութեան Ղարա Նուին ի թագաւորութեան Վրաց Դեմետրէ Բագրատունոյ, իմ հայրն Ումեկ գնեալ էր զԳետիկ ի ԽՌ կարմիր տուգատի, ես Ճարս դրեցի զՀովս իւր ամեն սահմանաւք ի դառն ժամանակի, որ հայրենիքն աժան էր, եւ ուկին թանկ, ԴՌ կարմիր տուգատ տուի Գետ–

կայ Աստուածածնին իմ հոգոյ տանս յիշատակ անջնջելի իմ ծնողացն Ումիկին եւ Թագուհւոյ, ինձ եւ իմ որդեանցն Արղութին եւ իւր եղբարցն Ղասապ վարդապետին եւ միաբանքս սահմանեցին զաւագ Ե. շաբաթ աւրն եւ Զատկի աւրն զամէն եկեղեցիքս՝ պատարագ որչափ մեք կենդանի եմք մեր ծնողացն լինի եւ յետ ելից մերոց յաշխարհէս մեզ լինի...» (Արցախ, էջ 350. Շահխաթունեան, Ստորագրութիւն, Բ., էջ 367. Արձագանք, 1903, Ժ., էջ 28. Յովսէփեան Գ. Նիւթեր եւ ուսումնասիրութիւններ հայ արուեստի եւ մշակոյթի պատմութեան, Ա. Պրակ, Երուսաղէմ 1935, էջ 9): — Ծառ 1287ին հոս կը թաղուի:

Ս. Աստուածածնի տաճարը ունի չորս միապաղաղ եւ բոլորակ սիւներու եւ ութը կիսասիւներու վրայ սրբատաշ քարերով շինուած գաւիթ մը, որ երկու մուտք ունի: Անոր յատակը սալաքարով ծածկուած է, իսկ արեւմտեան դրան վրայ գրուած է՝ «...եցի... ես որդի Գայլաձագին միաբանեցայ սուրբ Աստուածածնիս, հաստատեցին մեզ Դ. պատարագ ի տանի Յովհաննու Կարապետին զկնի Յայտնութեան, զԱ. իմ հաւրն Գայլածագին, զԱ. իմ մաւրն Մամաքին եւ զԲ. եղբարցն Բուսլանին եւ զԱղբերկանն... ի թվ. ՉԽԲ» (Արցախ, էջ 351. Արձագանք, 1888, էջ 117, ուր այս արձանագրութիւնը կը

սկսի «Կամաւն Աստուծոյ Եզր որդի Գայլաձագին», իսկ «Ազգր. Հանդէս»ի մէջ կ'ըսուի թէ թուականը «կարող է եւ ՋԽԵ լինել», 1903, Ժ., էջ 20):

Դեռ մինչեւ 1892—1896 թուականը այս եկեղեցւոյ մէջ ժամերգութիւն կ'ըլլար (Արարս, 1892, էջ 42. Սմբատեան, Գեղարքունիք, էջ 172, 175):

Երկրորդ եկեղեցին առաջինին պատկից է եւ կոչուած Ս. Գր. Լուսաւորիչ[3]: Շինուած է միւսին չափ եւ նման: Աւագ խորանին վրայ արձանագրուած է՝ «Շնորհիւն Աստուծոյ եւ կամակցութեամբ եղբարցս եւ միջնորդութեամբ ամէր Գրիգորիսի գրեցաւ յիշատակ եղբայրս մերոյ Պետրոսի Արտաւազդայ, մխարանք սուրբ ուխտիս սահմանեցաք ի տանի Դաւթի եւ Յակոբայ մատուցանել պատարագ ամենայն եկեղեցիքս զկէսն Արտաւազդայ եւ զկէսն ամուսնոյն իւրոյ Աւթայլին, որ խափանէ դատի ի Տեառնէ»: Իսկ հիւսիսային խորանին վրայ՝ «Ի տանի սուրբ Խաչին Ա. աւրն պատարագ Խաչատուր վարդապետին եւ եղբարց իւրոց եւ ծնողացն, զի նոցա ընչիւք շինեցաւ խորանս»: Եւ հարաւային

[3] Ս. Գրիգորի գրանը կան մարդահասակ երկու Խաչքարեր, որոնք առուգիւ հիացումի առարկայ կ'ըլլան իրենց նրբին արուեստովը (Արձագանք, 1888, էջ 117. Համմտ. եւ Արարս, 1892., էջ 41, ուր եւ վանքին նկարագրութիւնը, ինչպէս Համմտ. եւ Ջալալեան, Ճանապարհորդութիւն, Բ., էջ 357—360 եւ Սմբատեան, Գեղարքունիք, էջ 172—179):

փոքր խորանին դրան վրայ՝ «Ծառայն Աստուծոյ Գերգ եւ ամուսին իւր Կատայ եւ զաւակունք նոցին շինեցին իւրեանց ընչիւք զխորանս, Բ. ուր պատարագն նոցա է ի տանի սրբոյն Գէորգայ, խափանողքն դատին ի Տեառնէ»:

Տաճարին ճակատակալ քարին վրայ կը կարդացուի՝ «Յուսովն Աստուծոյ Բ. եղբարքս Մարտիրոս եւ Գրիգոր եւ ամուսին Թամար միաբանեալ Եփրեմաւ շինեցաք զեկեղեցիս, վասն որոյ տնկեցաք եւ զայգիսն, ուէր Յովհաննէս եւ միաբանքս եառուն նոցա պատարագ զեկեղեցիս Բ. տաւնն սրբոյն Գրիգորի զԵ. խորանս Մարտիրոսի, Գրիգորի, Փիրաժի, Թամարին, Նազխաթունին եւ Մաւթէոսի, անխափան» (Արցախ, էջ 352):

Երրորդ տաճարը նուիրուած է Ս. Կարապետի եւ երկրորդէն աւելի փոքր է: Շինուած է սրբատաշ քարերով եւ քանդակազարդ են բեմն եւ խորհրդարանները: Անոր հարաւային որմին վրայ (արտաքուստ) գրուած է՝ «Ի ՈՋՁ ես Գրիգոր որդի Ս... միաբանքս եառուն զաւագ խորան եկեղեցւոյս ինձ պատարագ»:

Նկատողութեան արժանի է Գետիկի զանգակատունը, որ եռայարկ եւ բարձր շէնք է,

---

[4] Ի. Ցարութիւնեան կը կարծէ թէ այս զանգակատունը այն ժամենադարանն է, զոր Կիրակոսի աւանդութեան համաձայն Մարտիրոս առաջնորդը շինած է (Ազգր. Հանդ., Ժ., 1903, էջ 34—35):

գրեթէ պատկից մեծ տաճարի գաւթին հիւսիսային կողմին: Գետնայարկը մառան է, որ ունի մեծ լուսամուտ մը եւ դուռ մը: Միջնայարկը դադանի պահարան է: Իսկ վերնայարկը խաչաձեւ շինուած է եւ ունի երկու սեղան՝ Գաբրիէլ ու Միքայէլ հրեշտակապետներու անունով: Զանգատան կաթուղիկէն շատոնց խոնարհած է: Անոր շինութեան պատմութիւնը արձանագրութիւն մը կը հաղորդէ: «Կամաւն Աստուծոյ ամենակալին ի թվիս ՉԾ· մենք երկու եղբարքս Դասապետ վարդապետ եւ Կարապետ եղաք հիմն եւ ի վերայ եղաք գանգակատուն եւ եկեղեցի յանուն Հրեշտակապետացն Գաբրիէլի եւ Միքայէլի սակս ընչիւք մերովք եւ քեռոյն մերոյ Իգնատիոսի, արդեամբք բազմօք եղաք եւ պարիսպ շուրջ եկեղեցեաւքս եւ այլ աշխատութիւնս ըստ մերում կարի, Սարգիս վարդապետ հայր վանիցս եւ միաբանքս հաստատեցին Զատկին եւ Ծրագալոյցին պատարագ, յոր եկեղեցին Դասապետ վարդապետին եւ Կարապետին սահմանեցին: Արդ աղաչեմ զամենայն ժառանգաւորսդ յիշման արժանի արարէք զամենայն աշխատեալսն ի սմա, եւս առաւել Զաքէոսն եւ Գրիգորն» (Արցախ, էջ 353· Շահխաթունեան, Ստորագրութիւն, Բ·, էջ 367):

Այս եկեղեցիներէն զատ Գետիկ վանք ունի քանի մը մատուռ՝ նուիրուած Ամենա-

սուրբ Հոգւոյն, Ս. Կարապետի, Ս. Առաքելոց ու Ս. Հռիփսիմեանց[5]:

Հաւանականօրէն առաջին մատուռին մէջ Մխիթար Գօշ թաղուած ըլլայ, իսկ չորրորդ մատուռին կաթուղիկէին վրայ գրուած է. «Զ. Տէր Աստուած ողորմեա Խաչատուր վարդապետին եւ Բարսղին շինողաց եկեղեցւոյս եւ ամենայն աշխատողացն ի սմա» (Արցախ, էջ 354):

Գետիկի մէջ կան դեռ ուրիշ արձանագրութիւններ՝

«Կամաւն Աստուծոյ ես Գրիգոր Հիջուր ամիր սպասալար Աւագին որդի Սմբատա որդւոց մեծին Վախտանգա... պետաց աշխարհին Արցախոյ առեալ Աթաբակի Իվանէի սնոյց զիմ եւ իւր տանն Աւագին առաջնորդ կացոյց, զի ոչ ունէին զաւակ յուսով խնդրեցի զայս եկեղեցին շիրմիս հանգստեան, Աւագն ինձ երետ եւ միաբանքս սահմանեցին զայս խորանս պատարագել ինձ զՔրիստոս հանապազ, որ կարդայք Աւագին երկար կենդանութեամբ խնդրեցէք եւ Գրիգորոյս մեղաց թողութիւն...»:

«Կամաւն Աստուծոյ ես մեղուցեալ ծառայ Մելքներքս որդի Վասակայ եւ Սարգիս աւագ պարոն միաբանեցաք Աստուածածնիս,

---

[5] Մխիթար Գօշ կը յիշէ նաեւ Ս. Գողգոթա՝ «Գրեցաւ յանապատիս Գետկոյ ընդ հովանեաւ սրբոյն Գողգոթայի եւ Լուսաւորչին Գրիգորի...» (Հ. Հ. Ոսկեան, Մատենագրական քննութիւններ, Վիեննա 1926, էջ 186):

*յիմ հայալ ընչից գնեցի յԱռինճք մի այգի ի Ռ. սպիտակ նաչար տուի սուրբ Աստուածածնիս, որ չէն պահեն. մխարանքս տուին ինձ է պատարագ Ծառզադար աւրն...»:*

*Գոհար կը միարանի եւ մէկ պատարագ կը ստանայ Ս. Կուսի Աւետումի օրը:*

*Մխիթար վարդապետը կը միանայ եւ երկու պատարագ կ'ընդունի Խաթունին ու Սարգսին:*

*Խարդաւր միանալով երկու պատարագ կ'առնու:*

*Մխիթար քահանան միարանելով մէկ պատարագ կը ստանայ:*

*Ս. Սարգսին տօնին երկու պատարագ կը տրուի Սարգսին, Մարտիրոսին եւ Թորոսին:*

*Մխիթարին ու Մայրախաթունին Ս. Սարգսի տօնին պատարագ մը կը յատկացուի:*

*Ս. Յակոբի տօնին Մարգարէին պատարագ մը կը նշանակուի:*

*Ս. Գէորգի (Ս. Գրիգորի) տօնին մէկ պատարագ «Աստուածատուր քահանային է անխափան»:*

*Ս. Հոգւոյ գալստեան տօնի պատարագը Հայերթին ու Վահրամին համար կը գրուի:*

*Փիլիպպոս Առաքեալի տօնի պատարագը Սարգիս սարկաւագին համար կ'արձանագրուի:*

*Անդրէաս Առաքեալի տօնի պատարագը Յովհաննէս Վանակ(ան)ին կը խոստացուի:*

*«Ես Մխիթար հիւսն միայրան եւ աշխատողս եկեղեցւոյս... եւ մինչ ծերութիւն չինեցի գդրունս աղաւթից»։*

*Կիրակոս վարդապետ (ցուցէ Գանձակեցին, Հմմտ. Ազգր. Հանդ. 1903, Ժ., էջ 20) իր նպաստներու փոխարէն Թադէոս առաքելոյն օրը երկու պատարագ կ՚ընդունի, իսկ Հարր Ս. Աստուածածնի տօնին մէկ պատարագ։*

*«Ի տաւնի սրբոյն Գէորգայ ա. պատարագ Շէհանշահի է անխափան»։*

*«Այս է հանգիստ Մկրտիչ տէր ի ՌՃԻԴ* (1675)»։

*«Սարգիս սարկաւագ կէսօրեայ փոխեցաւ ի սուրբս յիշեցէք»։*

*Բարակէս եւ Վրթանէս եղբայրներու երկու պատարագ, Խաչատուրին՝ Ս. Բարսեղի տօնին երկու պատարագ, Խաչգիւտի տօնին Սրբէկի եւ Ապանայի մէկ պատարագ, Ս. Կիրակոսի տօնին Ստեփանոսին մէկ պատարագ, Հայրապետին Ժ. պատարագ, Ս. Բարսեղի տօնին Բարսեղին մէկ պատարագ, Ծաղազարդին՝ Եղիսաբէթին մէկ պատարագ, Աստուածածնի տօնին՝ Սմբատ Զառնամսի երկու պատարագ կը նշանակուի։*

*Ս. Ստեփանոսի տօնին՝ Ստեփանոսի, Ս. Սարգսի տօնին՝ Սարգսի, Աւագ հինգշաբթին՝ Բջնեցի Գինէի, Ս. Հոգւոյն տօնին՝ Մխիթարի, Գայլին եւ Աւագդուխտին երկու պատարագ կը նշանակուի։*

Խոցադեղ Համբարձման տօնին մէկ պատարագ կը ստանայ:

Խաչի տօնին Ենոքի երկու պատարագ կը տրուի:

Նոյն օրը Խաչատուր վարդապետն ալ պատարագ մը կ՚առնու:

Փիլիպպոս Առաքեալի տօնին մէկ պատարագ ունի Սարկաւագ:

«Յիշեալ լիցին ի Տէր առաջին միաբանքն մեր Ալփասլան եւ Գոհար խաթուն եւ աւուր մեծի հինգշաբթի նոցա լիցի պատարագ»:

ՈԿԵ (1216) թուին Գոհար այգի մը տալով Գալստեան տօնին (Ս. Հոգւոյն) երկու պատարագ կը ստանայ:

Սարգիս եւ Ապուղամր մէկական պատարագ կ՚ընդունին:

«ՉԳ (1254) թվ. Տէր Աստուած ողորմեա Խաչատուր վարդապետի եւ Բարսեղին, չինողաց եկեղեցւոյս եւ ամենայն աշխատողացն ի սմա, ամէն»:

Ս. Անդրէասի տօնին՝ Անդրէասի, Հոփիսիմեանց տօնին՝ Աղիղին, Ծաղակաթի տօնին՝ Անդուրին եւ Թադէի ու Մանքուի, Ս. Սարգիսի տօնին՝ Գադիկլին եւ Ասլանին, Երեւման տօնին՝ Ացեւարէգի, Մխիթարի եւ Զաքէոսի մէկական կամ քանի մը պատարագ կը տրուի:

«Ես Մարգպան իշխան եւ որդիք իմ Ասլան բէկ եւ Գրիգոր միաբանեցաք սուրբ Աստուածածնիս եւ տուաք ի մեր հայրենեաց

*Յողջաբերդ այգի մի եւ ա. դուլթան ի հող յարոն ազատ յամէն հարկէ եւ ստացաք Բ. պատարագ զեկեղեցիքս ի տունի...»:*

«*Թվ. ՈԿ* (1211) *ես Յովհաննէս միաբանեցի ազատ... զԳետկայ ժողովուրդ ի հարկէ եւ տուի յաթոռն յիշխանութեան Գոնցա խաթունին խնդրօք Կիրակոս վարդապետի ի հայրութեան Աբրահամ վարդապետի, որ զայս խափանէ յԱստուծոյ եւ յամէն սրբոց նզովեալ եղիցի եւ կատարողքն աւրհնեալ, միաբանքս տուաք նմա Բ. պատարագ զմեծ եկեղեցիս ի տունի Յովհաննու ի Զատկին անխափան... Թւիս վկայութեամբ Յովհաննիսի արար ի կենաց Վարդան վարդապետի*»:

«*Շնորհիւն Աստուծոյ եւ կամակցութեամբ եղբարցս եւ միջնորդութեամբ տէր Գրիգորիսի յիշատակ եղբաւրս մերոյ պարոն Արտաւազայ միաբան սուրբ ուխտիս եւ սահմանեցաք ի տունի Դաւթի եւ Յակոբայ մատուցեն պատարագ յամենայն եկեղեցիս զկէսն Արտաւազայ եւ զկէսն ամուսնոյ իւրոյ Աւթային...*»:

«*Թվ. ՈԾԷ. շինեցաք եկեղեցիս Սերոբս եւ Ովասարս ի ձեռն սուրբ... Մխիթարա ի բարեխաւսութիւն մեզ եւ ծնողաց մերոց եւ ետուն ա. պատարագ ի տունի Ս. Սարգսի...*»:

«*Ես Գրիգոր միաբանեցայ սուրբ Աստուածածնիս յաւուր Գալստեան Հոգւոյն* (*սրբոյ*) *ի սուրբ սեղանն պատարագն հի–*

*սանն է Մխիթարայ. խափանողքն դատապարտին տալ ի տանջանսն»։*

*«Ես Աւտաաէրս միաբանեցայ ի սուրբ Աստուածածինս եւ տուի զԹագաւորակային կէսն այգատեղ վանիցս ի հայրութեան Մարտիրոսին. վարդապետքս եւ միաբանքս գրեցին զՅովհաննու եւ զԱկորայ տաւնն պատարագ ի ծնողացն Հարքայ եւ տիկնոջ զամէն եկեղեցիքս. որ խափանէ դատի ի Տեառնէ եւ ՅԺԸ հայրապետացն ընդ նզովս իցէ»։*

*«Աստուած ողորմեսցի Նազար Շահին եւ ծնողաց նորին»։*

*«Պարոնութեան Արղութին եւ Խորիշ խաթունին ես Պետրոս վարդապետ կանգնեցի զխաչս բարեխաւս... ի թուին ՉՂԴ»։*

*«Մեք եղբարքս Սրումայ (?) եւ Արուզմար (?) եւ Հայրապետ մեր հոգւոյ արդինք յեկեղեցւոյս չինութեան տուաք, յուսով մի ուր պատարագ սրբոյն Սարգսի մեզ հատուցեն...»։*

*Դեռ կան բաւական թւով արձանագրութիններ (հմմտ. Ազգր. Հանդ., Ժ., էջ 18—38. Արարս, 1892, էջ 41—42. Ջալալեան, Ճամբ., Բ., էջ 138—145. Սմբատեան, Գեղարքունիք, էջ 173—138. Արձագանք, 1888, էջ 117—118. Բարխուդարեան, Արցախ, էջ 349—356)։*

*Անցնինք Գետիկ վանքի պատմութեան։ Կը զանազանենք Հին-Գետիկ եւ Նոր-Գետիկ։ Մին՝ ապա միւսին պակասը լրացուցած։ Հին*

Գետիկի (գրուած նաեւ Կետիկ, հմմտ. Տաշեան, Մայր Ցուց., էջ 182) հիմնարկութեան պարագաներն անծանօթ կը մնան: ԺԲ. դարուն արդէն ծաղկած վանք էր եւ առաջնորդն էր Մխիթար Գօշի աշակերտը Սարկաւագ վարդապետը: Ուսուցիչ եւ աշակերտ բաւական երկար ժամանակ իրարմէ բաժնուած կը մնան: Հետեւաբար շատ հաճելի եղաւ եւ ուրախութեան առիթ, երբ Մխիթար Սարկաւագի մօտ եկաւ եւ Գետիկի[6] մէջ հաստատուեցաւ: Գետիկ շինուած էր «ի դաւառին Կայենոյ, որ ի վերայ գետոյն մեծագունի, զոր անուանեն Աղստեւոյ գետ, յաջմէ կողմանէ գետոյն» (Կիր. Գանձ. Պատմութիւն, էջ 107): Մխիթար այդ հաճելի եւ օգտաւէտ վայրը «յոլով ժամանակս» կը դադարի, մինչեւ որ սաստիկ երկրաշարժ մը կը տապալէ անկէ մագապուր հեռանալ՝ «Այս եղեւ շարժ սաստիկ, որ գրագում տեղիս կործանեաց եւ տապալեաց գրարձրաբերձ շինուածս, ընդ որս խախտեցաւ եկեղեցին Գետկայ սաստիկ յոյժ, մինչ գի ոչ լինել հնար վերստին նորոգելոյ» (անդ, էջ 107): Երկրաշարժին երկխղալի աղդեցութիւնը, եկեղեցւոյն փլուզումը, բայց մանաւանդ այն պարագան, որ Գետիկի միաբանները շատ կը նեղուէին մերձակայ նորաշէն գիւղէն, վանքին անդամները հնուանալու

---

[6] Հոս՝ 1187ին Մխիթար Երեմիայի մեկնութիւնը կը գրէ (հմմտ. Հ. Հ. Ոսկեան, Մատենագրական քննութիւններ, Վիեննա 1926, էջ 186. հմմտ. Հայաստան, 1851, Թ. 98):

— ցրուելու — մտածութեան կ'առաջնորդեն (Կիր., էջ 108)։ Թէ այս պարագաներուն Սարկաւագ ի՛նչ դիրք բռնած է, չենք գիտեր, սակայն այն գիտենք՝ որ Մխիթար ամէն միջոց ձեռք կ'առնու, որ հօտը չցրուի եւ կը յորդորէ զամէնքը՝ միասին «կեալ եւ խնդրել իւրեանց բնակութիւն»։ Անոր խօսքն ու օրինակը կ'ազդեն։ Ամէնքը համաձայն եւ համախորհ ներկայանալով՝ Զաքարէ Սպասալարի Իւանէ եղբօրը՝ «ցուցին նմա զխնդիրս, զի տացէ նոցա տեղի, ուր զվանքն իւրեանց փոխեսցեն։ Իւանէ տեղւոյն ընտրութիւնը բարեացակամօրէն անոնց կը թողու։ Եւ անոնք «շրջեալ գտին տեղի վայելուչ եւ զօգաձեւ առ ստորոտով երկուց լերանց, որ կայ ի գլխոյ նորա, զոր անուանեն զտեղին Տանձուկաձոր (սրբագրել՝ «Տանձուտայ ձոր») եւ էր ի նմա գիւղ եւ ձորակ մի փոքրագոյն, անցանէր ընդ մէջ նորա եւ միւս եւս յորդագոյն յաջմէ կողմանէ, տեղի փայտաւէտ եւ ջրաւէտ, անդր համարեցան, թէ պատշաճ իցէ զետեղիլ» (անդ, էջ 108)։ Այդ ընտրութիւնը կ'ըլլար ճաշակագիտական, նկատողական, քաղաքական եւ տնտեսագիտական նկատումներով։ Իւանէ իր հաւանութիւնը կու տայ եւ Մխիթար գործի կը ձեռնարկէ. «Սկսաւ այնուհետեւ վարդապետն սքանչելի՝ հանդերձ միաբանօք իւրովք ձեռն ի գործ արկանել շինութեան վանից եւ եկեղեցւոյ ի վերաստացեալ ձորն Տանձուտայ՝

*հրամանաւ մեծ իշխանին Իւանէի եւ շինեցին եկեղեցի մի գեղեցկաշէն փայտակերտ եւ օծեալ կնքեցաւ յանուն սուրբ Լուսաւորչին Գրիգորի»* (անդ, էջ 108)։ *Այս առաջին եկեղեցին էր։ Բնական էր՝ որ եկեղեցին գրկուած միաբանները՝ մեծահանդէս տօնախմբէին անոր աւարտումը։ Այդ հանդէսին իր մասնակցութիւնը կը բերէ նաեւ Հաղարծնի առաջնորդը՝ Խաչատուր Տարօնեցին, որ «երեր գխաղն ի կողմանս արեւելից»* (անդ, էջ 108—109)։

*Առաջին եկեղեցւոյն կը կցուի երկրորդ եկեղեցւոյն շինութիւնը՝ «Ի գլուխ վանիցն ... յանուն սուրբ Կարապետին Յովհաննու»*, *որ փոքրիկ եկեղեցի մը կամ մատուռ մը կ'ըլլայ։ Այս երկուքով առժամանակեայ բաւարարութիւն կը տրուէր անհրաժեշտ բաներու։ Ապա՝ «Ի վեց հարիւր քառասուն թուին Հայոց կը սկսի աւագ կամ մեծ եկեղեցւոյ շինութիւնը՝ «սկսան հիմն արկանել մեծափառ եկեղեցւոյն կոփածոյ վիմօք եւ գեղեցկաշէն արուեստիւ գմբեթայարդ երկնանման»* (Կիր., էջ 79—80 եւ 109)։

*«Հոչակաւոր եւ խնդատես» եկեղեցւոյն կառուցումին եւ բարեզարդութեան իրենց մասնակցութիւնն ու աջակցութիւնը կը բերեն, բաց ի ձեռներէց առաջնորդէն եւ միաբաններէ, դեռ ուրիշ մեծամեծ անձնաւորութիւններ՝ «ձեռնտուութեամբ Վախթանկայ Խաչէնեցւոյ Տեառն Հաթերքոյ եւ եղբարց*

*իւրոց Գրիգորոյ եւ Գրիգորիսի եւ Խոյդանայ եւ Վասակայ եւ այլոց իշխանաց բարեպաշտաց որդւոց Քրդին՝ Դաւթի եւ Սադունին, նաեւ քոյր սոցա Արզու-խաթուն, կին Վաղթանկայ Հաթերքոյ» (անդ, էջ 111)։ Վերջինիս օգնութիւնը մեծ է եւ համակրանքը անկեղծ՝ «Սա բազում ինչ յօժանդակ եղեւ, արար եւ վարագոյր գեղեցիկ դասերովք իւրովք՝ ծածկոյթ սուրբ խորանին, զարմանալի տեսողաց, ի մազոյ այծիցն կակղագունից, ներկեալ պէսպէս եւ զանազան գործ գնդակերպ եւ նկարեալ պատկերօք ճշգրտագոյն հանուածովք տնօրինկանօք Փրկչին եւ այլ սրբոց, որ հիացուցանէր զտեսողսն*[7]*» (անդ, էջ 111․ հմմտ․ եւ Ինճիճեան, Ստորագրութիւն, էջ 357—360)։*

*Նորակերտ գեղեցկաշէն եկեղեցին կը կնքուի «յանուն սրբոյ Աստուածածնին» եւ անոր օծումն աննկարագրելի փառաւորութեամբ եւ հոծ բազմութեան մը ներկայութեանը տեղի կ'ունենայ։ Հաւանականօրէն օծումը Հաղբատի Յովհաննէս եպիսկոպոսը կը կատարէ։*

---

*[7] Կիրակոսի պատմութեան համաձայն այս եկեղեցւոյ հիմնարկութիւնը կը սկսի 1191ին, Երուսաղէմի գրաւումէն (1187) չորս տարի ետքը եւ կ'աւարտի հինգ տարի յետոյ, մինչդեռ անոր աջակողմեան դասին Բ․ խորանին ճակատին արձանագրութեան համեմատ՝ «եւ կատարի ամս է․ ի խանդար Զատկին Յունաց, այս է 1198։ Այս թուականը կը հաստատեն նաեւ Յայսմաւուրքները (հմմտ․ Տաշեան, Մայր Ցուց․, էջ 182․ հմմտ․ եւ Պատմութիւն Մխիթարայ, յաւելուածք Կ․ Գանձակեցւոյ Պատմութեան, էջ 237)։*

Եկեղեցւոյն շինութեան կը յաջորդէ «գեղեցկագարդ եւ կոփածոյ վիմօք» զանգակատան բարձրացումն եւ մատուռներու կանգնումը:

Մխիթար սիրելով՝ «զանապատ եւ զամայութիւն, արար իւր տուն բնակութեան բացագոյն ի վանացն, շինեաց եւ անդ բացագոյն եկեղեցի մի փայտակերտ յանուն սուրբ Հոգւոյն եւ ի ժամանակի ծերութեան ի գլուխ վանիցն յաջմէ կողմանէ շինեաց եկեղեցի մի շիրիմ գերեզմանի իւրոյ կրով եւ վիմօք մածուցեալ սրբագործ յանուն Համբարձմանն Քրիստոսի» (Կիր., էջ 112):

Վարդան պատմագիրը Գետիկի շինութեան նկատմամբ շատ կուռ տողեր ունի՝ «Եւ զկնի միոյ ամի կատարեցաւ սուրբ եւ սքանչելի վարդապետն Մխիթար մականուն Գօշ Գանձակեցին եւ թաղեցաւ յիւրում ձեռակերտին ի Գետիկ, զոր շինեաց հրամանաւ Իւանէի...» (Պատմ., էջ 140):

Մխիթարի օրով եւ անոր յաջորդներուն ժամանակ՝ Գետիկի կ'ըլլան շատ մը նպաստներ ու նուիրատուութիւններ՝ առանց պայմանի կամ փոխադարձ պարտականութեան: «Շինեցաւ եւ զաւիթն եկեղեցւոյն գեղեցկագարդ եւ կոփածոյ վիմօք եւ յոլովք ձեռնտու եղեն. մեծ զօրավարն Զաքարէ եւ եղբայր Իւանէ, քանզի նոքա ունէին զիշխանութիւն գաւառին եւ յոյժ սիրէին զվարդապետն... եւ ընծայեցին եկեղեցւոյն սահման ջրադար–

*ձիւք լեռնէ ի լեառն եւ բով մի յԱրասաձոր եւ զՇորաձորն ի նահանգին Բջնոյ եւ զՕշովա ի գլուխ վանացն եւ շինեցին ինքեանք գիւղ մի մերձ ի ծովակն փոքրագոյն...» (Կիր., էջ 112. Հմմտ. ուրիշ նուիրատուութիւններ եւ օգնութիւններ՝ արձանագրութիւններու մէջ յիշուած) :*

*Նորակերտ վանքը, որ կը լնուր Հին Գետիկի պակասը եւ գայն շատ մը առաւելութիւններով կը գերազանցէր, կը կոչուի Նոր Գետիկ: Բայց հիմնադրին եւ շինել տուողին անունովն ալ՝ յորջորջուած է Գոշայ վանք* [8] *(Հմմտ. վերը) : Հիմնադրին կ'աջակցին Վարդան եւ ուրիշներ. Հմմտ. վերը:*

*Մխիթար Գետիկի մէջ եւ այլուր շատ աշակերտ ունեցած է :*

*Հովերն անոր անունը տարածած էին եւ նոյն իսկ արդէն անուն ունեցող անհատներ իրենց անձը կը ծածկէին՝ աշակերտելու համար: Գետիկին մէջ անոր քով կրթուեցան ու աւելի պարգացան շատերը, որոնցմէ են՝ Յովհաննէս Վանական, Պօղոս, Թորոս եւ Մարտիրոս* [9] *:*

---

[8] *Վարդան Աշխարհագիր կը գրէ՝ «Եւ Գետկայ վանքն, որ է աթոռ Գոշ վարդապետին»* (Saint-Martin, Mémoires. II, *էջ* 414. *Հմմտ. Ալիշան, Հայապատում, Բ., էջ* 502—503) :

[9] *Գետիկ ունէր՝ «միաբանս բազումս» (Պատմ. Մխիթարայ, էջ* 238) : *Մխիթարի գործունէութեան աջակից կ'ըլլայ Սուքիաս (Ջալալեան, Ճամբ., Ա., էջ* 137—138) :

Վերջինս՝ թէպէտ «մանուկ տիովք էր», սակայն «կատարեալ իմաստութեամբ» եւ Մխիթար վանքին առաջնորդութիւնն անոր կը յանձնէ ու կը մեռնի: Մարտիրոս անոր արժանիքին ու համբաւին համաձայն թաղում մը կատարել կու տայ: «Եւ վերակացու վանացն Մարտիրոս հանդերձ միաբանօք գեղեցկապէս յարմարեաց զպատշաճս թաղման նորա եւ տարեալ հանգուցին զնա առաջի դրան եկեղեցւոյն փոքրագունի, որ կայ ի գլուխ վանացն յարեւմտից կողմանէ վանացն» (Կիր., էջ 114):

Մարտիրոս «այր շինարար» էր եւ «շինեաց այլ ժամատուն անտաշ վիմօք մածուցեալ կրովք, հաստահեղոյս որմօք եւ փայտակերտ վերնայարկօք, որ յետ ժամանակաց փլաւ վերնայարկն, շինեաց եւ վերնատուն մի գեղեցկաշէն յարկօք, արուեստաւոր ունենալով զհիւսն Մխիթար (հմմտ. արձանագրութիւնները), որ ի բազում իրս աշխատ եղեւ եկեղեցեաց եւ վանից» (Կիր. Գամ., էջ 115):

Գետիկ վանքը ծարաւի մտքերու ուսումնարաշխ աղբիւր կը դառնայ: Բազմութեան պատճառով՝ նոյն իսկ կոփածոյ եւ տաշած քարերով, գմբեթաւոր եկեղեցի մըն ալ բարձրացնելու կը ձեռնարկուի, սակայն քաղաքական աննպաստ պարագաներ անոր աւարտումը յետաձգելու կը ստիպեն: Զայն գլուխ հանելու բախտը կը վիճակուի Գրիգոր Կապալեցիի, որ կանխաւ սատարած էր անոր

*հիմնարկութեան։ Շինութիւնը կը վերջանայ հայկական 690 թուականին։ Ապա ուրիշ եկեղեցի մըն ալ կը կառուցուի՝ Ս. Գրիգոր անունով եւ Վաչխէ գիւղը կը նուիրուի Գետիկի, որ Գրիգոր Տղայի խնդրանքին վրայ անոր դամբանարանը կ՚ըլլայ (Կիր., անդ, էջ 116)։*

*Մարտիրոսի օրով (1232ին) «Ի դաւառիս Կայենոյ, ի գերահռչակ սուրբ ուխտս Գետկայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս եւ սուրբ Լուսաւորչիս» Ստեփան Աւետարան մը կը գրէ (Բարխուդարեան, Աղուանից երկիր եւ դրացիք, էջ 235—236)։*

*Մարտիրոս քսան տարի վանահայրութիւն կ՚ընէ եւ ապա «կամաւորարար» առաջնորդութենէ կը հրաժարի։ Անոր յաջորդներ կ՚ըլլան՝ Մխիթար (Բ.), Յովսափ (Ղասապ), Աբրահամ, տէր Յովհաննէս Արմանեցին, որ կանխապէս Հաղարծնի առաջնորդ էր, եւ Խաչատուր իր Բարսեղ եղբօր հետ Ս. Գէորգ եկեղեցին կը շինէ։ Այս անունները ծանօթ են մեզի վերոյիշուած արձանագրութիւններէն եւ Կիրակոս Գանձակեցիէն (Պատմ., էջ 116, հմմտ. Աճառեան, Անձան. Բառ. Գ., էջ 132)։*

*Յովհաննէս Արմանեցին 1256ին եպիսկոպոսական ձեռնադրութիւնը կ՚ընդունի։ Սակայն թէ ո՛ր տարին Գետիկի առաջնորդութեան ղեկը կը ստանձնէ եւ երբ զայն կը ձգէ ստոյգ չէ, սակայն այնքանը ծանօթ է՝ որ*

*վանքին աշակերտներէն ոմանք «սակաւօ-րեայ» կ'ըլլան (Կիր., էջ 116)։*

*Գետիկի մէջ ապրած ու գործած է Կի-րակոս Գանձակեցին, որ երախտագիտու-թեամբ զայն կ'անուանէ «տեղի սնդեան մե-րոյ» (Պատմ., էջ 135) եւ անոր մասին բա-ւական ընդարձակ տեղեկութիւններ աւան-դած է (Հմմտ. վերը)։ Գետիկի մէջ կեցած է նաեւ միւս Կիրակոս Գետիկցի կամ Արեւելցի, որ Յայսմաւուրքի խմբագրողներէն է (Հմմտ. Տաշեան, Մայր Ցուց., էջ 564, 567. Ոսկեան, Յովհ. Վանական եւ իւր դպրոցը, էջ 92 եւն)։*

*Գետիկի միաբանները Կոստանդին կա-թողիկոսի կանոնական հրամանները կ'ըն-դունին եւ հաւանութեան ստորագրութիւն կու տան (Հմմտ. Կ. Գանձակեցի Պատմ., էջ 173)։*

*«Ի սուրբ եւ ի հռչակաւոր վանս Գետկա» 1273ին*[10] *Մխիթար Հաւաքածոյ մը կը գրէ (Կիւլէսէրեան Բ. եպ., Իսլամը հայ մատե-նագրութեան մէջ, Վիեննա 1930, էջ 190 կը յիշուի եւ ՉԻԳ թուին Հմմտ. Յովսէփեան, Հաւուց Թառի Ամենափրկիչը..., էջ 62, ծն. 4)։*

*Կարեւոր է հետեւեալ յիշատակագրու-*

[10] *Անկէ յառաջ գրուած է սա յիշատակագրու-թիւնը՝*

*«Փառք... ես նուաստ եւ անարժան ծառայ Աս-տուծոյ պիտակարար սպասաւոր բանի յԱրեւելից գա-ւառաւ եւ քաղաքաւ ի Գանձակայ սնեալ եւ վարժեալ ի մեծ մենաստանն Գետիկ, տարբերեալ այսր անդր հասի* սարահասան *ճանապարհաւ կասկածական* մա–հանու *հիւծեալ հիւանդամաչ մանաւանդ թէ հոգւով*

*թիւնը՝ «Կամաւն եւ ի թագաւորութեան ազ–գաց Մելիքսեդեկին ի դալն Իւանէի որդւոյ բարեպաշտ իշխանին պարոն Թուրթէլին (Բուրդէլին) որ եւ զհայրենական վանքս Գետկայ կրկին սկսելով հաստատեցաւ ի վե–րայ Տէր Միքայէլին եւ որդոցս Արղութային, Ոմիկին եւ Գրիգորին, յոյս եւ անկեալ հայ–ցեմք ի սորոյ Աւետարանէս զշնութիւն եւ զառաջութիւն տեղւոյն... Ցամի թուակա–նութեան Հայոց ՊԾ* (1401) *ի Տփղիս, գրե–ցաւ»* (*Բիւզանդիոն*, 1909, *Թ*. 3891):

*Տարիներ յետոյ* — 1662*ին* — *կը գրուի Աւետարան մը՝*

*«Արդ եղեւ գրաւ... թուին Հայոց ՌՃ եւ ԺԱ* (1662) *ի յերկիրս Ջակամ ի գիւղս Պա–պաջան ընդ հովանեաւ սուրբ Աստուածած–նիս եւ սուրբ Ովանիսին եւ սուրբ Գրիգո–րին... ի հայրապետութեան Աղվանից Տեառն Պետրոսի սրբասնունդ կաթուղիկոսի եւ եպիս–կոպոսութեան մեր նահանգիս Մինաս վար–դապետի եւ Թադէոս եպիսկոպոսի, յաթոռ սոցին Գետկա վանք կոչի: Գծագրեցաւ եւ մրեցաւ ձեռամբ... Յովանէս իրիցի» (Ակի–*

---

*եւս ի Հռոմ, ուր են ամոլքն հաւատոյ Պետրոս եւ Պաւղոս ստացայ զայս գրեանք ղոյզն ինչ նշխար յի–շատակի գծագրեցի իմով իսկ ձեռաւք խոշոր գծիս եւ յաղքատ նիւթի ի ՋԺԱ թուին եղեւ սկիզբն եւ աւար–տումն ի տիեզերաց հռչակեալ յականաւորս Հռոմ առ դրան վիմին հաւատոյ Պետրոսի առաքելոյն...», կը մաղթէ յիշել՝ Մանուէլ եւ Տաւորան* (?), *եղբայրները Թուրքէն, Յակոբ եւ Յովհաննէս ու քոյրը Աղիզ (Ակի–նեան, Հաւաք. Յիշատ. Ձեռ. Տէր–Աւետիսեանի Նոր Ջուղայի հայ. Ձեռ. Ցուցակէն Աւետարան, Թ.* 130):

նեան, Հաւաք. Յիշատ. էջմ. 337, Համմտ. Կարենեան Ցուց. Հայ. Ձեռ. էջմ. Թ. 324):

Քանի մը տարի վերջը՝ 1694ին Յայսմաւուրքի մը մէջ կը յիշուին՝ Մինաս Ծերունի հայրապետն Գօշայ եւ Դաւիթ բարունին (Մառ, Ցուց. Հայ. Ձեռ. Սեւանայ, Թ. 33. Համմտ. Սմբատեան, Գեղարքունիք, էջ 407), որ ձաշոցի մը յիշատակագրութեանը մէջ կը գրուատուի՝ «Հեզահոգի եւ շնորհազարդ» (Կանայեանց, Ցուց. Հայ. Ձեռ. Ներքսեան Վարժարանի, էջ 46):

Գետիկ կամ Գօշայ վանքը[11] Արցախցիներու սիրելի վանքերէն եղած է եւ տիրացած բաւական շատ հողերու: Եղեր է եպիսկոպոսանիստ եւ մինչեւ վերջերս իր գոյութիւնը պահած (Սմբատեան, Գեղարքունիք, էջ 171—179 եւ Արարատ, 1892, Բ., էջ 40—42 եւ Մշակ, 1911, Թ. 16, 17 եւն): Տուած է Հայութեան մատենագիրներ եւ գործող անձեր եւ արդարացուցած իր վրայ չափլուած հոգն ու ծախքը:

## 4. ԿԱՊՏԱՎԱՆՔԸ

Կը գտնուի Ղօզանի արեւմտեան կողմը՝ անտառապատ սարահարթի վրայ: Շինուած է կապտագոյն մեծ եւ անտաշ քարերով եւ այս հանգամանքին կը պարտի իր անունը: «Վանքս կառուցեալ է չորս կամարների վե–

[11] Կիրակոս վարդապետը Գոնցա խաթունի ժամանակ կը յաջողի Գետիկի ժողովուրդը հարկէ ազատ կացուցանել (Ազգր. Հանդ., Ժ., էջ 24):

*րայ, որոնց ոտքերը գետեղուած են պատերում» (Արցախ, էջ 332) խաչաձեւ է շինուածքը մենաստանին, որ ունի աւագ խորան մը, չորս փոքր խորաններ, երկու դուռ, սիրուն կաթուղիկէ մը եւ 11·50 մետր երկարութիւն եւ 9 մետր լայնութիւն: Զայս «Ո» թուականին Հանէս իր «արդեամբ» շինած է եւ ինչպէս նա՝ նմանապէս Աջիշէր — որդի Գրիգորի —, համաձայն արձանագրութիւններու, պատարագ կը ստանան (Արցախ, էջ 332):*

*Միաբաններու սենեակները փոքր եղած են:*

### 5· ՄՈՐՈՅ ՁՈՐՈՅ ԿԱՄ ԾՌՎՁԻ ՎԱՆՔԸ

*Խաչթարակ գիւղի հարաւային կողմը՝ շինուած է այս վանքը, որ ունի 7·20 մետր երկարութիւն եւ նոյնքան լայնութիւն: Խաչաձեւ է եւ սրբատաշ չեչ քարերով հիւսուած են իր պատերը:*

*Հոն կան հետեւեալ արձանագրութիւնները՝*

*«Թ. ՈԿՁ. ես Մխիթար եւ ամուսին իմ միաբանեցաք եկեղեցւոյս եւ ետուն մեզ ժամ Աստուածածնին Բ. մին ինձ, Ա. Հարկեւորին . . .»:*

*«Ես Սանոյս միաբանեցայ իմ որդաւքս Մորոյ–ձորոյ Աստուածածնիս եւ հայրս Գրիգոր եւ այլ միաբանքս ետուն ինձ Բ. ժամ զՎարդավառին չարաթ աւրն եւ զկիւրակէն, Ա. աւրն ինձ, Ա. Ծուչանկան»:*

«Ես Գեւորկի թագաւորաց թագաւոր ետու զՄորոյ Զորոյ վանս հայր Յովհաննէս եւ արարի ազատ յամենայն հարկէ. ամիր Քրտին հոգացողութիւն (թեամբ) որ ինձ ապաւթս անեն, որ մեր հրամանացս հակառակ լինի, Աստուծոյ հրամանին է հակառակ, հաստատ է գիրս անուամբ Աստուծոյ»։

«Ես հայր Գրիգոր... վանքս շինեցի Աստուածածին...» (Արցախ, էջ 342)։

«Ի թվ. Հայոց ՈԿԲ, թագաւորութեան Գիւրգէ մեք որդիք սպասալար Սարգսի Աթաբէգի եւ ամիր սպասալար Զաքարէ առաւ զերկիրս Հայոց յանուրինաց... շինեց որ վաղուց հետէ աւերակ կայր զօրութեամբն Աստուծոյ. արդ Աստուած սիրեաց զնա առ ինքն տարաւ (տր)ամայի ես Աթաբակի Իւանէ ետու(ն) ոոոգել (նորոգել) զուրբ Աստուածածինս վասն յերկար կենդանութեան Աւագին եւ Շ... վանէ սպասալարին, որ անցաւոր... Ա. զաւր մեծ Զատկին եւ զճրագալուցին ժամն իմ հարագատին կատար(են) Տեառն Քրիստոսի... (Նորո)գեցաւ սուրբ Աստուածածինս առաջնորդութեան հաւր Եւագրի հեզի եւ խոնարհի եւ հաստատեցի զսա առաջնորդ յազգէ ազգ մինչեւ յաւիտեան» (Արձագանք, 1888, էջ 100)։

«Կամաւն Աստուծոյ ես Յովհաննէս մխարանեցայ Աստուածածնիս եւ հայրս Գրիգոր եւ այլ մխարանքս ետուն ինձ Ե. ժամ զեկեղեցիս. ի Նաւասարդի առաջին աւր, Յով-

*հաննու տուն եւ Դ. ուր յետ իւր այլ Գ. ինձ եւ Բ. ամուսնոյ իմոյ...»:*

*«Կամաւն Աստուծոյ եւ ողորմութեամբ թագաւորեալ Գիորգի, ես Ամիր Քուրտս տուի զգիրս առաջնորդութեան ի թագաւորէն սուրբ Աստուածածնիս եւ հայրն Ովանէս ետ ինձ ի տունի Ա. ժամ զծառզաղարն» (Արձագանք, 1888, էջ 100):*

*Ահա այս արձանագրութիւններն են, որոնք Մոյրոյ ձորոյ վանքի պատմութիւնը մեր առջեւը կը պարզեն եւ անոր առաջնորդներէն՝ Գրիգորի, Յովհաննէսի ու Եւագրի անունները պահած են: Այսօր ամայի է եւ միաբաններու սենեակները նոյն իսկ հերկուած են (Արցախ, էջ 342):*

## 6. ՇԽՄՈՒՐԱՏԱՅ ԿԱՄ ԳԵՏԱԿԻՑ ՎԱՆՔԸ

*Հախում գիւղի մերձ, Հասան գետին ձախ ափին: Շինուած է խաչաձեւ եւ տաշուած մոխրագոյն չեչ քարով: Ունի աւագ խորան մը եւ չորս հատ մէկ մէկու վրայ շինուած փոքր խորան: Երկարութիւնն է 9 մետր եւ լայնութիւնը՝ գրեթէ եօթնուկէս մետր: Կաթուղիկէն գեղեցիկ է:*

*Գաւիթը հարաւային դրան վրան է: Անոր արեւելեան կողմը խորան մը կայ, որուն ճակատակալ քարին վրայ արձանագրուած է՝ «Յամի Կ. երրորդի եւ երրորդի նորո շրջակայիս (1181), ես տէր Գրիգոր շինեցի խորանիկս աստուածարնակ հրամանաւ Սար–*

*գոնս մեծի իշխանի վասն յիշատակի ննջեցելոց իւրոց եւ յաւիտենականութիւն անձին իւրոյ, որք սպասաւորէք ի սմա, զիս զտէր Գրիգոր եւ զծնողս իմ յաղաւթս յիշեսջիք, ընդ նմին եւ զայլ ազգատոհմն»* (*Արցախ*, *էջ* 335)։

*Հետեւաբար հին վանք մըն է։ Ունեցած է չրջապարիսպ, միաբաններու սենեակներ եւ գերեզմանոց։ Ընդունած է նուէր ու նպաստ եւ ստանձնած պարտականութիւններ։*

*Բարխուդարեան Տխմուրատի հին անունը կը կարծէ ըլլալ Գետակից, ուր Աղուարդան իշխանը կրօնաւորեցաւ* (*Պատմութիւն Աղուանից*, *էջ* 188. *հմմտ. Կիր.*, *Պատմ.*, *էջ* 73)։ *Մինչ Հ. Ինճիճեան կը խորհի թէ Գետակից եւ Գետիկ նոյն ըլլան* (*հմմտ անդ*)։

*Ծանօթ է Գետամիջոյ վանքը* (*Արցախ*, *էջ* 247)։ *Յիշատակագրութեան մը մէջ կայ թերի՝ «... ի հռչակաւոր վանքս Գետա... ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս եւ... Ս. Ստեփաննոսիս»* (*Թօփճեան*, *Յուց. հայ. Ձեռ. Դաղեան Վ.ի*, *Բ.*, *էջ* 30—31)։

### 7. ՍԱԼԱ ԳԻԽՂԻ ԱՆԱՊԱՏԸ

*«Մրդուզ սարի արեւմտեան ստորոտում, Սալա գիւղի մօտ կայ մի փոքր վանք՝ անապատ անուն՝ շինուած սրբատաշ քարով»* (*Արցախ*, *էջ* 348)։

## 8. ՍՐՎԵՂԻ ՎԱՆՔԸ

Հիմնուած է Համզա սարէն դէպի Ուղուն–Թալա խոնարհած լեռնաբազկին հարթակի վրայ: Հիմերը քարով, իսկ մնացած մասերը թրծուած աղիւսով եւ կրացեխով շինուած: Ունի չորս փոքր եւ մէկ մեծ կամ աւագ խորան, երկու լուսամուտ, վեղարաձեւ կաթողիկէ մը եւ երկու դուռ: Վէմ քարի վրայ գրուած է՝ «Կանգնեցաւ սուրբ նշանս ի բարեխաւսութիւն Ո. ամի»: Հիւսիսային որմին վրայ կայ՝ «Թիւ ՈԱ. ես Արտաւազ եւ Սարգիս շինեցաք զեկեղեցիս ձեռամբ Յովհաննիսի...»: Իսկ արեւելեան–հիւսիսային կողմը՝ «ՈԾ թուին, ես Անանիաս որդի սուրբ ուխտիս բարեխաւսութեամբ աւրն աղաւթ... երկրպագէք»:

Սրվեղի վանքը քանի մը անգամ նորոգուած է: Արեւմտեան որմին վրայ կը կարդացուի՝ «Ես Ասդոհի տղայ Մխիթարս սուրբ Սրվեղի Բ. դուռս շինեցի (նորոգեցի) ով կարդայ, ողորմի տայ Թվ. ՌՃԽԱ»:

Միաբաններու սենեակներն ու շրջապարիսպը աւերուած են: Սրվեղ վանքի անունը «բացատրում են երկու տեսակ իմաստով, Ա. վեղարի նման սրածայր կաթողիկէ ունեցող վանք. Բ. սարուհող — շիկահող — վանքատեղ» (Արցախ, էջ 340): Բաջիկեան՝ Ջալալեանի բացատրութիւնը (Ճամբորդութիւն, Ա., էջ 159) «որ ընկալաւ զայս անուն կամ ի սրութենէ վեղարին այսինքն կաթու–

*գիկէին, որ է սուր (կամ ի սրածութենէ որով մեռան բազմաթիւ քրիստոնեայք ի գազանաբարոյ ազգէն Ղեկաց ի մէջ մենաստանիս բատ ատանդութեան ծերունեաց») կ'ընդունի իբրեւ «սրախօսութիւն» (Արձագանք, 1888, էջ 100)։ Գ. Յ. Ջալալեանի մեկնութիւնը բոլորովին կամայական կը գտնէ եւ կը մխի Սրուեղ՝ «Սուրբ հող»ի աղաւաղում նկատել (Մեղու Հայաստանի, 1883, Թ. 91)։*

*Վերոյիշեալ արձանագրութիւններէն պայծառ կ'երեւայ՝ թէ Սրվեղի վանքը ԺԲ. դարու հիմնարկութիւն է։*

## Ձ. ՎԱՐԱԳԱՅ Ս. ՆՇԱՆԻ ՎԱՆՔԸ, ՈՐ ԿՈՉՈՒԱԾ՝ ԱՆԱՊԱՏ

*Վասպուրականի հռչակաւոր Վարագայ Ս. Նշանի այս համանուն վանքը՝ շինուած է Հասան վտակի ձախ ափին՝ թանձր անտառներով եւ ակնահաճոյ տեսարանով օժտուած սարահարթի մը վրայ։ Շինուած է յարեւնման Գանձասարի, բայց երկնագոյն սրբատաշ քարերով։ Ունի աւագ խորան մը եւ 8 փոքր խորան, գեղեցիկ կաթուղիկէ եւ երկու դուռ։ Ջալալեան կը գրէ՝ «Շինուածք ուխտիս են շքեղ, խոյակապ եւ վիմարդեան երկնանման կաթուղիկէ սորա սքանչելի է յոյժ» (Ճամբորդութիւն, Ա., էջ 160)։*

*Հարաւային դրան ճակատակալ քարին վրայ փորագրուած է՝ «Շինեցաւ եկեղեցիս ձեռամբ Յովհաննէս վարդապետի հրամանաւ եւ իշխանութեամբ իշխանաց իշխանի Վասա–*

կայ որդւոյ... պոռնկի բարսաւ (?) եւ սահնակեցար չարաչար» (Թերխմատ):

Տաճարին հիւսիսային որմին վրայ (ներքուստ) կայ՝

«Ի Թվ. ՈՁ ընդ այլ աշխարհս հոլովս հարաւ գաւազան եւ ցասումն Աստուծոյ գաւառն Խլաթա ի ձեռն Խորազմին եւ Թաթարին, ընդ որս եւ մեծահռչակ սուրբ ուխտս Վարագին չինեցեալ վասն մեղաց մերոց յայսմ ամի. ես Ղուկաս հայր Վարագայ առեալ զտիեզերահամբաւ սուրբ Նշանն զշնորհեալն յԱստուծոյ ի փառս մարդկան ի ձեռն Գատրոնիկեայ եւ սուրբ Հռիփսիմեանց եւ Թոդկաւս մեծ ամ շրջեցայ թափառեալ ի տեղւոյ ի տեղ, ապա ի կամսն Աստուծոյ ամենատես խնամոց Տեառն հասի ի Նոր բերդն առ քրիստոսասէր իշխանն Վասակ յաստուածարնակ անապատ կոչեցեալ վանքս եւ ազդումն հնչեալ առ իս հաճոյանալ սուրբ Նշանին ի տեղւոջս, նկարեցի եւ զգեղաղէշ եկեղեցիս արժանի հանգստեան սորա մեծարեալ ի Քրիստոնէից առի զվանքս եւ եսու զխաչս եկեղեցիս այս միջնորդութեամբ եւ վկայութեամբ տեառն Յովհաննու չինողի եկեղեցոյս առաջի հրեշտակաց եւ մարդկան եւ հաստատեցաւ ինձ ի տաւնի սրբոց առաքելոցն Պետրոսի եւ Պօղոսի, Յակոբայ եւ Յովհաննու յամենայն եկեղեցիս պատարագ: Այդ եթէ ոք հանել ջանայ աստի կապանօ եւ անէծս ժառանգեսցէ ի հոգի եւ ի մարմին անբժշկելի

ի սուրբ նշանէս եւ յամենայն սրբոց Աստուծոյ: Որչափ այս եկեղեցիս չէն է, մի ոք իշխեսցէ զխաչս հանել եւ զիմ յիշատակս խափանել, ապա թէ ոչ նախ զինքն ջնջեսցէ ի կենաց գրոցն եւ յիշմանէ Աստուծոյ. ապա ցեն հրեշտակք եւ մարդիկ, եղիցի, եղիցի[12]»:

Արեւմտեան դրան ճակատակալ քարին վրայ կայ՝

«Ի թվին ՈՁԶ (1237) ես Վասակ որդի Դաւթի, որդւոյ Վասակայ ի տանէ Բագրատունի ի տոհմէ Դաւթայ մարգարէին ի ձեռն Յովհաննու եւ ընծայեցի զՄագկագուզի իւր կապարովն ի վանս ի Քրիստոս եւ հաւանութեամբ եղբարցս հաստատեցաւ ինձ պատարագ յայտնութիւն եւ զատիկն յիմ շինեալ մեծ եկեղեցիս, որպէս իմ հայրն յիւր շինեալ փոքր եկեղեցին գրեցաւ եւ կնքեցաւ անուամբ Աստուծոյ, յաւուր յորում Վարագայ հայրն Ղուկաս զսուրբ նշանն եդ յեկեղեցիս: Արդ եթէ ոք զմեր տուեալ գիւղերս ի մեր եկեղեցոյս հանել ջանայ եւ զմեր յիշատակն խափանել, թէ քրիստոնեայ է՝ ի Քրիստոսէ եւ յիւր ընտրելոցն է նզոված...» (Արձագանք, 1888, էջ 89. Շահխաթունեան, Ստորագրութիւն, Բ., էջ 369. Արցախ, էջ 336—338):

---

[12] Հմմտ. Ջալալեան, Ճամբորդութիւն, Ա., էջ 160—161 ուր ձեռագրէ մը քաղուած է այս արձանագրութիւնը: Ջալալեան խաչին վրայ արձանագրուած գիտէ՝ «Սուրբ խաչ տէրունական լեր Դաւթայ աւգնական յաւուրն անեզրական» (էջ 160):

Վարագայ վանքը ունի հրաշալի գաւիթ մը, որ 14·5 մեթր երկարութիւն եւ 13·20 մեթր լայնութիւն ունի եւ հետեւեալ արձանագրութեամբ օժտուած՝ «Թվ. ՉԺ կամաւն Աստուծոյ ես Հայրուտս վայելեալ գձրիավարժ իշխանութեան եւ հասեալ յայս տեղի՝ զարհուրեցայ ի սպառնալեաց եւ դիմեցի յեղբարանոց անապատիս, առ ոտս տէր Յովհաննէս շինողի սուրբ ուխտիս եւ ստացայ զտնակս սակս յիշատակ ինձ եւ իմոցն..»:

Վարագայ վանքը, ինչպէս արձանագրութիւնները կը վկայեն ունեցած է երկու եկեղեցի: Զանոնք շինել տուողներն եղած են Դաւիթ եւ Վասակ Բագրատունիները եւ տէր Յովհաննէս՝ գործին հոգին ու մղիչը: Եկեղեցիներէն մին կնքուած է Ս. Աստուածածին անուամբ:

Կիրակոս Գանձակեցին հետեւեալ կարեւոր տողերն ունի՝ «Ընդ սա խաբէութեամբ վարեցաւ Դաւիթ իշխան Նորբերդին, զի էր նա յազգէն Բագրատունեաց, հայրն Վասակայ իշխանին որ շինեաց զեկեղեցին հրաշագան ի վանքն, որ Անապատ կոչի հուպ ի Նոր-բերդն, առաջնորդութեամբ եւ ձեռնտուութեամբ արքեպիսկոպոսին Յովհաննիսի Տուեցւոյ....: Յիշխանութեան Վահրամ իշխանին եղեւ աւարտումն եկեղեցւոյն, որ օծաւ եւ կնքեցաւ յանուն սրբոյ Աստուածածնին» (Պատմ., էջ 72—73):

Հաւանականաբար (Անապատ) վանքը Ղուկաս վարդապետի ձեռքով Վարագայ Ս.

Նշանի փոխադրութենէն յետոյ՝ Վարագայ վանք կոչուած ըլլայ — պաշտօնապէս։

Վարագի վանքի մէջ կան դեռ ուրիշ քանի մը արձանագրութիւններ, որոնք կը մատնանշեն անոր բարերարներն եւ անոնց յատկացուած պատարագներն ու ժամերը, այսպէս՝

1․ Նոր կիւրակէին Ե․ պատարագ Ջուրջին։

2․ Յովհաննու եւ Յակոբայ տօնին մէկ պատարագ։

3․ Քրիստափորի տօնին Բ․ ժամ Մխիթարի եւ Գօրանդուխտի։

4․ Ս․ Խաչի տօնին Գ․ պատարագ Էլբէկին։

5․ Թէոդոսի տօնին Ա․ ժամ Թոտորին եւ Խաթունին։

6․ «Ի կամս Աստուծոյ ես տէր Յովհաննէս պարոն Վասակայ եղբայրս կամակցութեամբ Բ․ աւր պատարագ գրեցաք երկուց հարազատաց Գրիգորոյ եւ միւս Գրիգորին ի տաւնի Ս․ Աստուածածնին․․․ Թվ․ ՈՀԹ»։

7․ Բարսեղի տօնին մէկ պատարագ Աբրահամին։

8․ Յակոբայ տօնին Բ․ ժամ Հայրապետին եւ Խաթունին։

9․ Ս․ Սարգսի կիւրակէին Ե․ պատարագ Սիրադիշայ որդեացն։

10. Տէր Յովհաննէս խորան շինել կուտայ եւ Դաւիթ որդի Վասակայ կը վկայէ թէ՝ «Շինեցի զանապատս իմ իշխանութեանս ձեռամբ վարդապետին Մխիթարայ եւ ի ՈԽԷ թվին շինեցի զեկեղեցիս ձեռամբ հաւր Գրիգորի եւ նորին միաբանեկի Պետրոսի եւ եղբարցն նորա Յովհաննիսի եւ Ազարիայի եւ ետու հող ի Տանձկուր եւ յեզեր գետին եւ զդրախտն ընկուզի ջրաղացէն Համաղնոյ մինչեւ յընկուզուտն Խարաբի եւ ջաղաց մի եւ ի Բաւն այգի եւ շինական մի եւ ետուն ինձ Զատկին աւուրն եւ զճրագալոյցին ժամն...» (Արձագանք, 1888, էջ 89—90)։

Գուցէ Վարագայ այս վանքին է որ՝ մահտեսի Յարութիւն իրեններովը Աւետարան մը յիշատակ կը դնէ՝ «...ի վայելումն առաջնորդ Գրիգոր վարդապետին ի թվ. Ռ..Ե.ի, դեկտեմբերի...» (Լալայեանց, Ցուց. հայ. Ձեռ. Վասպ., էջ 524)։

«Վարագայ վանքը այժմ ամայի է, Հախումի եւ Շամչադինու միւս գիւղերի բարեպաշտ կանայք երբեմն ուխտ են գալի նորան, հիւանդաց բժշկութիւն խնդրելով» (Մեղու Հայաստանի, 1883, Թ. 92)։

«Մենաստանիս հարաւային կողմին կից է մի այլ վանք իր գաւթով միասին» (Արցախ, էջ 338) զոր շինել տուած է Վասակի հայրը Դաւիթ Բագրատունին (հմմտ. վերը)։ Այժմ խոնարհած է գաւիթին գլուխը։

### 10. ՎԱՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՔԱՐԱՅՐԸ

*Ձեմ կարծեր որ Վանական վարդապետի ճգնատեղին, որ «կայ հանդէպ գեղջն, որ կոչի Լորուտն ի հարաւոյ կողմանէ Տաւուշ բերդի» (Կիր. Գանձակեցի, Պատմ., էջ 129) վանք եղած ըլլայ՝ յատուկ իմաստով:*

*Լորուտ՝ այժմ աւելի սոէպ գործածուած Ճլորուտ, Զօրաւոր գիւղին մերձ է (Արցախ, էջ 328):*

### 11. ԱԻԾՈՊԱՑ Ս. ԱՍՏՈԻԱԾԱԾՆԻ ԿԱՄ ՋՈԽՏԱԿ ՎԱՆՔԸ

*Յիշատակագրութեան մը մէջ կայ՝ «...Ես անարժան գրիչս Աթանաս... գրեցի զսուրբ Աւետարան ի Թուականիս Հայոց ՋԼԷ ի սուրբ ուխտս Աւծոպայ ի դուռն սուրբ Աստուածածնին...»: Բարխուդարեան կը գրէ՝ «Ծոպ էր կոչուում ի հնումն այժմեան Դիլիջանի ձորն, իսկ Աստուածածնայ վանքն այժմ անմարդաբնակ է, որ կոչուում է Ջոխտակ վանք» (Արցախ, էջ 297): — Արցախի Քուստի գաւառին մէջ կայ Դիլիջան անուն գիւղ մը*[13] *(անդ, էջ 356):*

---

[13] *Տես Օծոպու վանք ի Սիւնիս, Ալիշան, Սիսական, էջ 483:*

Թ.

## ՁԱՒԷԻ, ՁՈՐԱԳԵՏԻ ԵՒ ԿԱՅԵՆՈՅ ՎԱՆՔԵՐԸ

*Արցախի ԺԹ. գաւառը կ՚իյնայ Կուր գետի, Ձորագետի, Խրամի, Աղստեւ գետի, Փօղոս Բիլխայի եւ Կայենի լեռներու գաւաթնագծերու մէջ եւ ստացած է Ձաւէ, Ձորագետ, Երկիր Սեւորդեաց, Երկիր Կայենոյ եւ այժմ Ղազախի գաւառ անունները:*

### 1. Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԸ

*Հին Ոսկեպարի արեւելեան կողմը՝ ձորակի մը եզերքին կառուցուած է այս վանքը: Տաճարը խաչաձեւ է եւ ներքուստ ու արտաքուստ սրբատաշ քարով շինուած: Ունի նորաշէն կաթողիկէ (Արձագանք,* 1888, *էջ* 159):

### 2. ԱՌԱՔԵԼՈՑ ՎԱՆՔԸ

*Հին Կիւնէնէն քիչ մը վեր, առուակի մը ձախ ափին՝ լեռնաբազուկի մը վրայ կանգնուած է Առաքելոց վանքը՝ չորս կամարներու յեցած: Տաճարը հոյակապ է՝ շինուած սրբատաշ քարերով: Ունի աւագ խորան մը, չորս լուսամուտ, երկու խորհըր-*

դարան, կաթողիկէ մը, դուռ մը եւ 10·25 մ. երկարութիւն ու 7·45 մ. լայնութիւն: Ունի նմանապէս գաւիթ մը, որուն դռնադրուխ քարին վրայ կայ՝ «Ի թվին ՈՂԴ. կամաւն բարերարին Աստուծոյ եւ ողորմածութեամբ աթարակ ամիր սպասալար Խութլու փուղին ես Գրիգոր Թոռն Խաչէնիսենց ապաւինեցայ սուրբ Առաքելոյս իմ հալալ արդեամբ եւ ընակինչք սուրբ ուխտիս եառւն Բ. պատարագ ի տաւնի սուրբ Գրիգորի գլւոյ նշխարացն...» (Արցախ, էջ 378, Արձագանք, 1888, էջ 158, ուր Խութլու փուղին՝ Խութլու-բուղին» եւ Խաչինիսենցը՝ «Խաչէնի Սինեաց» կարդացուած է):

Գաւիթին հարաւային թաղասինին վրայ կայ «Յուսոփն Աստուծոյ միաբանեցայ ի սուրբ Առաքելս եւ միաբանքս եառւն Ա. ժամ ի տաւնի Հռիփսիմեանց, խափանիչք դատին»: Աստ ներքեւը՝ «Կամաւն Աստուծոյ ես Տարեմուտ որ եւ միաբանեցայ Առաքելոց սուրբ ուխտիս իմ հալալ արդեամբք եւ միաբանքս եառւն Բ. պատարագ ի տաւնի սուրբ Գրիգորի...» (Արձագանք, 1888, էջ 158):

Առաքելոց տաճարի հարաւային որմի տակ կայ նշանաւոր խաչարձան մը հետեւեալ արձանագրութեամբ՝

«Ես եմ լոյս աշխարհի...

ապա ստորին մասին վրայ՝

Ով քառաթեւ սուրբ պանծալի,
Փրկագործող մարդկան ազգի,

Տեսիլ փառաց անճառելի,
Գերապայծառ եւ սխրալի,
Յորժամ փայլես ընդ ամ(պ)ս երկնի,
Լեր բարեխաւս Տեառն Յիսուսի,
Կարապետին քո աւգնողի,
Ալմկանին իւր կենակցի,
Եւ զաւակացն զովելի,
Համայն ազգացն,
որ ի կամս Հաւր ննջեցին»:

(Արցախ, էջ 379):

«Մենաստանս ունի ամրոցի նման ամուր պարիսպ՝ շինուած լեռնարազկի զիրքով, որ ձգուած է զրեթէ հիւսիսից հարաւ եւ ունի հաստատուն եւ բարձր բուրգեր: Պարսպի ներսում կան միաբանից խուցեր, պալատանման բնակարաններ, սենեակներ եւ զոմեր» (Արցախ, էջ 379. հմմտ. այս վանքի մասին նաեւ Ջալալեան, Ճանապարհորդութիւն, Ա., 148—150. Էփրիկեան Հ. Ս., Բնաշխ. Բառարան, Ա., էջ 245):

3. ԳԱԳԱՅ Ս. ԽԱՉԻ ԵՒ Ս. ՍԱՐԳԻՍԻ ՎԱՆՔԸ

Համանուն բերդին — որ Կոթի գիւղի արեւելեան կողմը կ'իյնայ — վանքն է այս: Շինուած՝ սրբատաշ կաթնագոյն քարերով: Հիմնադիրը ճանչցուած է Ս. Մեսրոպ, իսկ վերանորոգողներէն եղած է Արզուման Խաչատուրեան Տէր Սարգիսեանց: Մեծ մատուռին վրայ կայ արձանագրութիւն մը, որ

*անոր ուրիշ մէկ վերաշինութիւնը կը հաղորդէ, սակայն համեստ բարերարին անունը լռուած է: Գաւթին հիւսիսային պատին վրայ կը կարդացուի՝ «Կամաւն Աստուծոյ ես Խաչերես Գրիգոր եւ Յակոբս կանգնեցաք գլխաչս բարեխաւս մեզ եւ ծնաւղաց մերոց... ի Թուին ՁՉէ»:*

*Հին վանք է, օժտուած Ս. Սարգիսի մասունքով: Վարդան Արեւելցին կ՚անուանէ՝ «Հուչակաւոր» (Պատմութիւն, էջ* 145. *Հմմտ. դեռ Ջամչեան, Պատմ. Հայոց, Ա., էջ* 446. *Գր. Դարանաղցի, Ժամանակագրութիւն, էջ* 157. *Արձագանք,* 1888, *էջ* 161. *Արցախ, էջ* 396. *Պատմութիւն Աղուանից, Ա., էջ* 184—194 *եւ Բիւզանդիոն,* 1900, *Թ.* 1019. *նաեւ Էփրիկեան, Բնաշխ. Բառարան, Ա., էջ* 442):

*Սիրուած ուխտավայր, մանաւանդ Զատկին եւ Ս. Սարգիսի տօնին:*

## 4. ԴԵՂՁՆՈՒՏԻ ԿԱՄ ԴԵՂՁԿՈՒՏԻ ՎԱՆՔԸ

*«Առաքելոց վանքից երկու ժամ ճանապարհ հեռու շինուած է այս մենաստանը, բարձր անտառապատ լերան լանջին՝ Մէլիք գիւղի այժմու ձմեռանոցի մէջ»: Մենաստան գեղեցիկ: «Տաճարն է քառակուսի... ներքուստ եւ արտաքուստ սրբատաշ քարով» (Արձագանք,* 1888, *էջ* 159): *Մակարայ վանքի մեծութիւնն ունի: «Տաճարս ունի երկու փոքր եւ մի աւագ խորան, երկու խոր-*

Հրդարան, մի դուռն արեւմտեան կողմից» (Արցախ, էջ 381)։ Օժտուած է գաւիթով մը, ուր կան թաղուածներ։

Այս վանքը Բարխուդարեան (Արցախ, էջ 380—381) Դեղձնուտի, իսկ Քաջիկեան՝ Դեղձկուտի վանք (Արձագանք, 1888, էջ 159) կ՚անուանեն։

Խաչքարի մը վրայ հետեւեալ կարեւոր արձանագրութիւնը դրուած է՝ «Էին Աստուծոյ զօրութեամբ յաշխարհակալութեան եւ յիշխանութեան Ամիր սպասալար Աթաբակա եւ (ես) Առաքելս[1] նուաստս սպասաւոր բանին Աստուծոյ յերկրէն Կիլիկու գաւառէն Տարօնի կամակցութեամբ եղբարցս շինեցաք զեկեղեցիս ամենայն պատրաստութեամբ եւ զգաւիթս, կանգնեցաք զսուրբ նշանս աստուածընկալ ի նեղ ժամանակի, դառն աշխատութեամբ բարեխաւս մեզ եւ ծնողաց մերոց եւ արեւշատութեան պարոնին եւ զաւակացն, որ սատար եղեւ ձեռնտուութեան մխիթար կենաց մերոց յարքեպիսկոպոսութեան Հաղպատու տէր Յովհաննէսի, որ է հեզ... Թվ. ՁԻԴ» (Արձագանք, 1888, էջ 159. Էփրիկեան Հ. Ս., Բնաշխ. Բառարան, Ա., էջ 602)։

---

[1] Առաքել սիրուած եւ բարեգործ անձ եղած է։ Զինքը Յովսէփեան Յովհ. Վանականի համանուն աշակերտին հետ կը նոյնացնէ (Հմմտ. Յովսէփեան, Գարեգին արքեպ., Հաւուց Թառի Ամենափրկիչը եւ նոյնանման յուշարձաններ հայ արուեստի մէջ, Երուսաղէմ, 1937, էջ 62—63)։

## 5· ԴՎԵՂԱՅ Ս· ՍԱՐԳԻՍԻ ՎԱՆՔԸ

*Հիմնուած է Նոր–Պարան կամ Ապարան գիւղի մօտերն, անտառապատ եւ խոր ձորի մը լանջի հարթակի վրայ։ «Մենաստանս շինուած է ամբողջապէս սրբատաշ քարով, բայց եկեղեցու ձեւով եւ ունի երկու փոքր եւ մի աւագ խորան, մի առանձին խորան եւս հիւսիսային որմի մէջ, մի դուռն հարաւային կողմից, մի քանի լուսամուտ, մի զանգակատուն, որ բազմած է աւագ խորանի գլխին,* 11 *մետր* 80 *սանթիմ երկարութիւն,* 7 *մետր եւ* 80 *սանթիմ լայնութիւն։ Հնաչէն են աւագ խորանն եւ հիւսիսային երկու խորաններն, իսկ նորոգուած են մնացեալ բոլոր մասերն» (Արցախ, էջ* 383)։

*Հարաւային կամարին վրայ կայ՝ «Ծինեցաւ յատակս սուրբ սեղանոյս արդեամբ Խաչատուր եւ Դարչօ Հախվերտեանցի»։ Իսկ դրան ճակատին վրայ՝ «Ողորմութեամբն Աստուծոյ շինեցաւ եկեղեցիս յանուն սրբոյն Սարգսի տրովք բարեպաշտից, ջանիւք եւ վերակացութեամբ Տփխիսեցի Եսայեան Նուրենց… Հիմնարկեցաւ ի* 1845 *եւ աւարտեցաւ* 1849 *ամի Տեառն» (անդ, էջ* 383· *Էփրիկեան Հ. Ս., Բնաշխ. Բառարան, Ա., էջ* 609)։

## 6· ԿԵՐԱՆՑ ՎԱՆՔԸ

*Առաքելոց վանքի մօտ։ Մաս մը՝ քարով եւ մաս մըն ալ՝ թրծուած աղիւսով շինուած։ «Մենաստանս կառուցեալ է երկու*

սիւների եւ երկու կիսասիւների վերայ, խաչաձեւ է ներքուստ, բայց եկեղեցու ձեւ ունի արտաքուստ» (Արցախ, էջ 379)։ Ունի աւագ խորան մը եւ երկու փոքր խորան, ութը նեղ եւ երկար լուսամուտ, գեղեցիկ կաթուղիկէ մը, 17·60 մ. երկարութիւն եւ 12·15 մ. լայնութիւն։ Տաճարը ունեցած է քառակուսի շրջապարիսպ։ Միաբաններու սենեակները քանդուած են (Արձագանք, 1888, էջ 159 եւ Արցախ, էջ 379—380)։

## 7. ՀԱՂԱՐԾՆԻ ՎԱՆՔԸ

Հաղարծնի[2] վանքի «շինութեան տեղը շատ գեղեցիկ է եւ բնութեան տեսարաններով հարուստ, թէեւ հեռու է Տաթեւի արտասովոր գեղեցկութիւններից։ Ագստեւ գետի ձախ կողմից հոսող մի գետակ իր երկու սկսուածք առուակներով մի տեսակ թերակղզի է կազմում Ղազախի լեռնոտ բարձրունքներից դէպի հարաւ-արեւելք իջնող փեշերի վրայ, մի քառակուսի կիլոմետրաչափ աննշան հարթութեամբ։ Այդ հարթութեան հիւսիսում մի լեռ է բարձրանում միանալով Փամբակու լեռնագօտիների հետ, իսկ հարաւից իջնում է մինչեւ Ագստեւ գետը...։ Ահա այդ հարթութեան վրայ է շինուած Հաղարծնի պատմական վանքը» (Տահաղ, էջ 73.

[2] Աբրահամ Կրետացին զայն կ'անուանէ Ագրծնու վանք, ուր իր ճամբորդութեան ատեն կ'այցելէ (Պատմագրութիւն, էջ 26)։

հմմտ. եւ Արցախ, էջ 364)։ Դիլիջանէն երկու ժամ հեռու՝ դէպի հիւսիս (Ազգր. Հանդ. 1913, ԻԵ., էջ 61)։

Հաղարծինի վանքը կազմուած է զանազան շինութիւններէ կամ շէնքերէ։ Սկսինք եկեղեցիներէն։

Վանքին աւագ կամ գլխաւոր եկեղեցին Ս. Աստուածածին անունը[3] կը կրէ։ Ան «ներսից եւ դրսից մաքուր սրբատաշ կրաքարով շինուած (է), ներսում չորս պիլոններ, որոնց վրայ բարձրանում է բարձր կլոր թմբուկով գմբէթը, գլխի սալերը թափուած։ Թմբուկը որ յածախակի պիլաստրներով է օղակուած, այդ պիլաստրների մէջ կան չորս լուսամուտ (Տահագ, էջ 75)։ Բարձր է եւ հոյակապ[4], ունի աւագ խորան մը, երկու փոքր խորան, հինգ լուսամուտ, երկու խորհրդարան եւ 14·50 մ. երկարութիւն ու 11 մ. լայնութիւն։

Ս. Աստուածածնի տաճարին[5] հարաւային որմին վրայ (ներքուստ) արձանագրուած է՝ «Շնորհիւն Աստուծոյ ես Բէկս որդի Աչոտո յազգէ Մարբանդ եւ ամուսին իմ Բորինա եւ եղբայր իմ Սմբատ միաբանեցաք

[3] Հաղարծնի եկեղեցիներն երեք հատ են՝ Ս. Աստուածածին, Ս. Գրիգոր եւ Ս. Ստեփաննոս։ Երեքն ալ սրբատաշ եւ կոփածոյ քարերով շինուած (Արձագանք, 1890, Թ. 8, էջ 14)։

[4] Ազգր. Հանդ. 1913, էջ 65։

[5] Վանքին արեւելեան ճակատի անկիւնաւոր բարձրութեան մէջ կան երկու վեղարաւոր անձ, որոնք իրենց ձեռքին մէջ կը բռնեն եկեղեցւոյն կաղապարը (Արցախ, էջ 365)։

սուրբ ուխտ(ի)ս եւ հայրն իմ եւ տվաք» (Տաշաղ, էջ 79)։ Սոյն պատին վրայ կը գտնուին դեռ ուրիշ արձանագրութիւններ, որոնք կը յայտնեն նուիրատուներու անուններն եւ անոնց վանքին ընծայածները եւ այն պարտականութիւնները, զորոնք միաբանները փոխադարձաբար կը ստանձնեն (Տաշաղ, էջ 79)։

Կարեւոր են այն երկու թուականները, որոնցմէ մին Շի հարաւային դրանագլխին է եւ անոր հակառակ կողմը կայ միւսը՝ ՁԼ[6]։ Հաւանականաբար՝ առաջինը եկեղեցւոյն շինութեան տարին եւ երկրորդը անոր վերաշինութեան կամ բարեզարդութեան թուականը կը ցուցնեն։ Արդէն վերանորոգուած է քանի մը անգամ, այսպէս՝ կարեւոր նորոգութիւններ ըրած են 1681ին Թիֆլիզցի Թաղոյ որդիները եւ իրենց բարերարութիւնը արձանագրութեամբ մը յաջորդ սերունդի հաղորդած (Արցախ, էջ 365· Տաշաղ, էջ 79, ուր եւ դեռ ուրիշ արձանագրութիւններ յառաջ բերուած են)։

Երկրորդ եկեղեցին է Ս. Գրիգոր, որ առաջինին հարաւային կողմը միեւնոյն ձեւով շինուած է, բայց կաթնագոյն չեչ քարով եւ ունի մէկ մեծ եւ չորս փոքր խորան, ինը լուսամուտ, երկու խորհրդարան, կաթողիկէ մը, 9 մետր երկարութիւն եւ 7·90 մ.

---

[6] «Ազգր. Հանդէսի» մէջ Տէր Մովսէսեան «Ձէ» նշանակած է (1913, ԻԵ, 63)։

լայնութիւն[7]: Անոր արեւմտեան պատին ճակատին վրայ եղած է շինութեան արձանագրութիւնը, որ եղծուած է եւ անընթեռնլի դարձած, սակայն գաւիթին վրայ մնացած է հետեւեալ արձանագրութիւնը՝ «Կամաւն Աստուծոյ ամենակալին Աստուծոյ այս մեր գիր յիշատակի է եւ արձան մշտնջենաւոր որդեաց մեծին Սարգսի յազգէ Բագրատունեան Իւանէի եւ Զաքարէի, յորժամ նախախնամութիւն Աստուծոյ եհաս յարարածս եւ ետ տիրել սեփական ժառանգութեան նախնեաց մերոց ետ ի ձեռս մեր յառաջ զանառիկ զղեակն Հանբերդ եւ զթագաւորանիստ քաղաքն Անի եւ ապա զամուրն Բջնի զՄարանդմիձր եւ Գուագանք, զԹաւրէժ, զԿարնոյ քաղաք մինչեւ ի Խլաթ՝ զԾաքի եւ զՇրուան, զՊարտա մինչեւ ի Բեյուկան եւ զայլ բազումս իւրեանց սահմանաւքն, զոր աւելորդ համարեցաք յիշատակել: Այլ անբարկանալին Աստուած սիրեաց զԹագ. պարծանաց գլխոյ իմոյ զԶաքարիա կոչեաց առ ինքն յորո ձեռն եղեւ արիութիւնս եւ ես շինեցի ի մեր հայրենի վանքս Հաղարծին ժամատուն վիմարդեան կամարակապ ի դրան սրբո Գրիգորիս եւ Ա. այգի յԵրեւան ետու վասն յիշատակի եղբաւր իմո եւ պարտին սպասաւորք սորա զաւագ խորանին պատարագն Զաքարէի մատուցանել անխափան, կատարիչք գրոյս

---

[7] «Աստիճան ելից սեղանոյ այսր եկեղեցւոյ է ի միջավայրի բեմին ըստ Ցունաց» (Ջալալեան, Ճամբ., Ա., էջ 129):

ուրհնեալ լիցին յԱստուծոյ» (Տահազ, էջ 77· Սմբատեան, Գեղարքունիք, էջ 183· Ջալալեան, Ճամբ., Ա., էջ 131· Ազգր. Հանդ. 1913, ԻԵ., էջ 67—68· Արցախ, էջ 366)։

Ժամատան (գաւիթին) դրան շրջանակին վրայ կայ՝ «Կամաւն Աստուծոյ ես Գաւգս եւ Աշոտ միաբանեցաք սուրբ Գրիգորիս եւ զմեր հոգոպահուստն յԱստուածածնիս շինութիս տուաք եւ սկ վարդապետ եւ միաբանք սահմանեցին պատարագ զամեն եկեղեցիքս ի տաւնի Երեմիայի մարգարէին, որչափ ես կենդանի եմ» (Տահազ, էջ 80)։

Գաւիթին մէջ կայ՝

«Ի թու ՈԾԵ (1206) ի յաշխարհակալ տէրութեան Զաքարէի եւ Իւանէի եւ յառաջնորդութեան Տեառն Ստեփաննոսի ես Խալթ որդի Սմպատայ իմ գեղն Քանաքեռ Սկանդարանց հողն գնեցի եւ ի Հաղարծինս ետու վասն իմ հոգոյս եւ վասն յերկարութեան կենաց Շահնշահի եւ Աւագի եւ միաբանքս զծառզարդարին եւ զերկրորդ զալստեանն ժամն ինձ ետուն զամէն եկեղեցեացս...» (Տահազ, էջ 80· Սմբատեան, Գեղարքունիք, էջ 183 եւն)։

Ս. Գրիգորի արեւմտեան պատին վրայ կայ՝

«Ի ՈԼԴ (1185) թուիս Հայոց ի թագաւորութեանն Աղ(խազ)աց Գէորգեա ի հայրապետութեան Հայոց Տեառն Գրիգորիսի ես Խաչատուր վարդապետ եւ Սուքիաս նորո—

*գեցաք զուրբ Գրիգորս հրամանաւ Թագաւորին եւ իւր մեծամեծ իշխանացն Սարգսի ամիրո . . .դին Անտոնի ճպ(դ)դ ունդլին Ելբէկին եւ Թագադրին զհին եւ զնոր կազմութիւն ետ ի սուրբ Գրիգոր . . . զայգին զմիջնաշինին ջրին զտն. Խաչկուպավանիցս ի միջի զփուր տեւան զԱրաստծոր զՏանձուտն եւ հրամայեաց Թագաւորն զսուրբ Խաչի տաւնն աւուր յիշատակ կատարել . . .»* (Տահատ, էջ 77 · Արցախ, էջ 367, ունի տարբեր ընթերցուած) ։

*«Ես Գրիգոր միաբանեցայ սուրբ Գրիգորիս իմ հալալ արդեամբ եւ վարդապետ Յովհաննէս եւ միաբանքս սահմանեցաք Ժ. պատարագ ի տաւնի Նաւակատեաց խաչին Բ. Թումանին եւ զայլն Գրիգորին» ։*

*Այսոնցմէ զատ կան դեռ ուրիշ շատ մը արձանագրութիւններ — նուիրատուութիւններու եւ փոխադարձ պարտականութիւններու — այսպէս՝ Սարկաւագ, Քառուր, Աբրահամ եւ իր տիկինը, Գրիգոր, Աթանէս, Վարդ, Գերգ, Սարգիս, Յովհաննէս, Անտոն Դսեղեցի, Փաւղ եւ Սիմա, Զուգայ, Մխիթար, Յովհաննէս քահանայ, Յովհաննէս եւ Սարգիս, Ներսէս, Սարգիս եւ Գրիգոր եւ ուրիշներ կը միաբանին կամ նուէրներ կ՚ընեն եւ պատարագ կամ պատարագներ կը ստանան իրենց նախասիրած տօնական օրերուն ։*

*Ս. Գրիգոր եկեղեցւոյն, յարակից մատուռին եւ գաւիթին մէջ կան շատ հանգու-*

ցեալներ: «Փոքրիկ մատուռներ, որոնց չորսը տակաւին կիսականգուն են, չուրջը կան բազմաթիւ գերեզմանաքարեր եւ խաչարձաններ, ուրեմն այդ բազմանդամ միաբանութեան գերեզմանատունն էր» (Տահադ, էջ 78): Դժբախտաբար անոնց վրայ գրուած արձանագրութիւններն այլ եւս անընթեռնելի են եւ առով վանքին պատմութենէն չատ բան՝ որ հաղորդուիլ ուզուած է՝ չէ հասած մեզի: Միայն խաչքարի մը արձանագրութիւնը մեծ մասովը դեռ կարելի է կարդալ· այսն Գրիգոր իր Ներսէս եղբօրորդւոյն համար կանգնած է (անդ, էջ 79):

«Ս. Գրիգոր վանքիս հարաւային կողմին կից՝ շինուած է համակ սրբատաշ քարով թագաւորաց դամբանարան մատուռն, որ ունի երկու խորան: Հիւսիսային խորանին առաջ եղած տապանաքարի վրայ քանդակուած է՝ «Սմբատ թագաւոր»: Իսկ հարաւային կողմը կայ «Հանգիստ, Ս. թագաւորին Գագկայ» (Արցախ, էջ 367. Ջալալեան, Ճամբ., Ա., էջ 134): Սմբատեան ուրիշ գերեզմանաքարի մը վրայ կարդացած է՝ «Գէորգ թագաւոր» (Գեղարքունիք, էջ 185). Տէր Մովսէսեան ունի՝ «Այս է հանգստարան թագաւորաց Գագայ եւ Գուրգայ» (Ազգր. Հանդ. 1913, էջ 72):

Կայ Ս. Ստեփանոսի նուիրուած մատուռմըն ալ (փոքրիկ եկեղեցի մը), որ կանգնուած է Ս. Գրիգորի եւ ժամատան միջեւ. ունի չորս փոքր եւ մէկ աւագ խորան, երկու

խորհրդարան, ինը լուսամուտ, մէկ կաթուղիկէ, մէկ դուռ եւ 6·88 մ. երկարութիւն ու 5·80 մ. լայնութիւն: Հոս հետեւեալ կարեւոր արձանագրութիւնը դրուած է՝ «Ի թու ՈԽԳ (1194, Բարխուդարեան, Արցախ, էջ 368՝ ունի ՈՂԳ) ի յիշխանութեան Իւանէի եւ յառաջնորդութեան Խաչատուր վարդապետին ես Խալթ Հարրա որդի շինեցի զեկեղեցիս վասն իմ հոգոյս. փրկութեան եւ ամեն միաբանքս զՅայտնութեան ճրագալոյցին ժամն ինձ հրամաեցին եւ զՉատիկն Մլոքանա, որ անխափան տանեն կատարիչք գրոյս աւրհնեալ լինին» (Տահադ, էջ 76):

Հարաւային որմին վրայ գետեղուած արձանագրութեան մը համեմատ Ս. Ստեփանոս նորոգութիւն կը տեսնէ՝ «Ի թուին Հայոց ՌԾ...աց Շահ Սուլէմանին որդոյ փոքր Շահ Աբասին եւ տէ.. Ս. Իշխանին եւ մէլիքութեան պարոն Շահնազարին եւ ի հայրապետ... Զուղայեցւոյ եւ առաջնորդութեամբ սուրբ ուխտիս Յակովբայ եպիսկոպ... տէր Պետրոս աշակերտի նորին, ողորմութեամբ Աստուծոյ մեք յետինքս ի կրօնից Թիփլիզեցի Հոգեջան, որդիքս Պարոս, Մխիթարս, Սափարս եւ Զալիս եւ որդիքն տէր Գասպարն, Հոգեջանն, Բաղդասարն եւ Մելքոնն, զմեր հոգոյ արդեամբքն նորոգեցաք զսուրբ Ստեփաննոս, որ յոյժ խախտեալ էր վասն փրկութեան հոգւոց մերոց եւ երկարութեան կենաց որդոց մերոց եւ միաբանք սորա հաստատեցին յայտնութեան եւ յարութեան պա-

տարաղն զմեզ յիշատակել եւ մեք խոստացաք զկանխեղ սուրբն միշտ ի վառ պահել որդէց որդի. կատարողքն օրհնին յԱստուծոյ ամէն» (Արցախ, էջ 368)։

Հաղարծնի վանքին միաբանները սենեակներն աչքի զարնող բան մը չունին, սակայն սեղանատունը Կիրակոս Գանձակեցիի վկայութեան համաձայն սուտղիւ «երեւելի» է (Պատմ., էջ 116)։ «Շինութեան երկարութիւնն է՝ 28 մետր, լայնութիւնը՝ 10 մետր, կտ(ու)րին ունի երկու հերթիկ եւ երկու երկար եւ բարակ լուսամուտներ հարաւի կողմից, իսկ հիւսիսային պատն դրսից ամենեւին չի երեւում, որովհետեւ նա ծածկուած է տեղի զառիվայր թեքութեան մէջ...։ Շէնքը ներսից հոյակապ տպաւորութիւն է թողնում, կամարները միմեանց հետ միացած են խաչաձեւող աղեղներով, յենած պատերի, երկու մեծ առանձնացած եւ սաս հաստ պատերին կպած կիսասիւների վրայ. կամարները միանում են երկու կենդրոնում, որոնց գլխին տանիքի հերթիկներն են բացւում...» (Տահաղ, էջ 78. համմտ. Արցախ, էջ 369 եւ Ջալալեան, Ճամբ., Ա., էջ 129)։

Սեղանատան արձանագրութիւնն է՝ «Ի թվ. ՈՂէ (1248) յառաջնորդութեան Յովանիսի վարդապետի շինութեան աստուածաչէն տանս եւ ես կուտա... սնունդ սրբոցն ետու ագնութիւն տրապիզիս դեկան վարդապետքս եւ միաբանքս խոստացան... սբ. Բարաղ... ով խափանի իմ մեղացս տէր է»

(Տահաղ, էջ 78. Ազգր. Հանդ., ԻԵ., էջ 74)։

Այս արձանագրութենէն Բարխուդարեան կարդացած է միայն՝ «Ի թվ. ՌՂէ յառաջնորդութեան Յովհաննէսի վարդապետի շինեալ...» (Արցախ, էջ 369), մինչ «Արձագանք»ի յօդուածագիրն (1888, էջ 104) ընթերցած է՝ «Ի թվ. ՌՂէ յառաջնորդութեան Յովհաննիսի վարդապետի շինութեան ստուածաչէն տանս եւ Կուտա... անուն դարրոցս եւու օգնութիւն տրապադիս դեկան վարդապետս եւ միաբանքս խոստացան ի տաւնի սուրբ Բարսղին... աւր.ով խափանէ իմ մեղացն տէր է»։ Նոյն արձանագրութիւնն անկէ յառաջ Ջալալեան կը կարդար (Ճամբ., Ա., էջ 136) «Յառաջնորդութեան Յաւհաննէս վարդապետի եւ շինութեան աստուածաչէն տան եւ ես Կուտայ... եւու ի տարապիղաս. միաբանքն խոստացան ի տաւնի Բարսղի ինձ պատարագել»։

«Վանքից ոչ հեռու, արեւելակողմը կան երեք քայքայուած մատուռներ, որոնցից մէկի արեւելակողմն կանգուն մնացած խաչքարերից մէկի վերայ գրուած արձանագրութիւնից կարդացվում է միայն «ՌԿԵ. Թվ. ես Գրիգոր...» միւսի արեւմտեան երեսի վրայ գրուած է «Թվ. ՌԿԸ յառաջնորդութեան Դանիէլի ես Հաչարչահ եւ իմ եղբեր Սապատ կանգնեցաք զխաչս ի հանգստարանիս ար ի հոգոյ փրկութիւն. յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր եւ զհոգեւոր եղբայրն մեր զԳրիգոր...» (Արձագանք, 1888, էջ 104)։

Հաղարծին վանքի անուանակոչութեան մասին կը հաղորդուի՝ «Յիշատակեալ գուգակիր գերեզմանի ճակատին սրբատաշ պատուանդանի վերայ բազմեցրած կայ մի քար, որի վերայ փորագրուած են երկու վեղարաւոր կրօնաւորներ փիլոնները ծածկած. նոցա մէջ տեղ նոյնպէս փորագրուած է տաճարի պատկերն, որի սրածայր կաթուղիկէի վերայ սաւառնել իջել է արծուին եւ փարում է խաչին, վարդապետները ձեռքերը մեկնած դէպ ի վեր ցոյց են տալիս արծուին: Աւանդութիւնը պատմում է որ տաճարի օծման հանդէսին այդ երկու սրբակեաց կրօնաւորները նկատում են Հոգին սուրբ արծուակերպ իջած կաթուղիկէի վերայ եւ սկսում են ուրիշներին եւս մատնացոյց անել, արծուի սաւառնելու եւ թռիչքի պտոյտները, անուանել են խաղ արծուի, որից եւ մենաստանը կոչուել է Խաղարծին կամ Հաղարծին...», սակայն ուղիղը պիտի լինի Հողարծին, ինչպէս անուանում են Կիրակոս, Չամչեան[8] եւ ուրիշներ» (Արձագանք, 1888, էջ 102, 1890, Թ. 8, էջ 14, ուր եւ վանքին պատկերը՝ էջ 1 եւ Ջալալեան, Ճամբ., էջ 130):

Հաղարծին կամ Աղարծին, նաեւ Խաղարծին կամ Հաւարծին վանքի մասին տեղեկութիւններ ունինք ԺԲ. եւ ԺԳ. դարերէն:

---

[8] Իրականին Հ. Չամչեանին (Պատմ. Հայոց, Գ., էջ 160 ցանկ), թէ Հաղարծին եւ թէ Խաղարծին ծանօթ է, իսկ Կիրակոսի պատմութեան Վենետիկեան հրատարակութեան մէջ (էջ 108) կայ՝ Հաղարծին:

«Քանի որ պատմական աւելի հին տուեալներ չկան, ենթադրաբար պէտք է ընդունել որ Հաղարծնի ներկայ տեղում, ինչպէս Տաթեւում եւ այլ հռչակուած տեղերում, կար մի հին վանք, իր միաբանութիւնով, իսկ յետոյ երբ Զաքարեաններն ուժեղացան եւ այդ տեղ ընտրեցին իրենց ընտանեկան դամբարանի տեղ, կալուածների նուիրաբերութեամբ հարստացրին...: Այդ շրջանում ահա շինեցին Հաղարծնի այժմ գոյութիւն ունեցող կաթուղիկէի գեղեցիկ եկեղեցին հաւանական արձանագրական ՇԻ (= 1071) թուին: Շինութեան ճարտարապետական ոճն այդ բանն է հաստատում» (Տաշաղ, էջ 74):

Ամէն պարագային Հաղարծին արդէն հռչակաւոր էր եւ աչքի զարնող հաստատութիւն, երբ Զաքարէ եւ Իւանէ զայն Ստեփանոս եպիսկոպոսին կը յանձնէին՝ «Նոտուն ի կայէն տեղի հանգստեան նմա զգերահռչակ ուխտն Հաղարծին եւ գիւղն զԱսաձորն» (Օրբէլեան, Պատմ. Սիս., Գլ. ԿԳ): Բայց նոյն վանքը «ամայի եւ խամրացեալ» էր, երբ Խաչատուր Տարօնեցի վարդապետը հոն կը հաստատուի եւ առաջնորդութեան ղեկը իր ձեռքին մէջ կ'առնու: Նա «այր սուրբ եւ առաքինի եւ գիտութեամբ հռչակեալ, մանաւանդ երաժշտական արուեստիւ» կը ձեռնարկէ վանքին վերածնունդին եւ «պայծառացոյց զսուրբ ուխտն» (Կիր., Պատմ., էջ 108): Իր գործերուն մեկենաս ու քաջալերող կ'ունենայ Գորգի թագաւորը եւ օգնական՝ Սու-

քիաս վարդապետը (հմմտ. Կիր., Պատմ. Հայոց, էջ 108—109 եւ արձանագրութիւնները):

Կիրակոս Գանձակեցին կը գրէ՝ «Եւ յեօթն հարիւր եւ երեք թուին Խաչատուր վարդապետն եւ եղբայրն իւր Բարսեղ շինեցին եկեղեցի մի երեքխորանի հանդէպ վանիցն գմբէթաւոր յանուն սրբոյն Գէորգեայ» (Պատմ., էջ 116): Հ. Ինճիճեան սրամտօրէն ուշադիր կ'ընէ՝ որ Կիրակոս լռած է շինութեան վայրը եւ իրեն համաձայն «առաւել թուի լինել Հաղարծինն քան թէ Գետիկ» (Ստորագրութիւն, էջ 313): Սակայն արձանագրութիւն մը եւ Ս. Գէորգի գոյութիւնը՝ Գետիկի մօտ, կու գան աւելի հաստատելու որ այս խօսքեր Գետիկի մասին են (հմմտ. անդ), մանաւանդ երբ նկատի առնուի որ այդ ատեն Խաչատուր Տարօնեցին մեռած էր եւ խօսքը ուրիշ Խաչատուրի նկատմամբ է:

Հաղարծին վանքի — որուն համայնքը Կոստանդին Ա. կաթողիկոսի կանոնական սահմանները կ'ընդունի (Կիր., Պատմ., էջ 174) — երկրորդ ծանօթ անուանի առաջնորդն է Յովհաննէս Արմանեցին. որ «շինեաց ի Հաղարծինն սեղանատուն երեւելի սրբատաշ վիմօք» (հմմտ. վերը):

Գրիգոր քահանայի հրամանովը 1284ին Աստուածատուր քահանան «ի վանս Հաւարծին կոչեցեալ» Աւետարանի մը մասերը կը գրէ (Թորոս Աղբար, Բ., էջ 339. հմմտ.

*Սիւրմէեան Ա. արքեպ., Ցուց. Հայ. Ձեռ. Երուսաղէմի, Ա., էջ* 359):

*Կարծեմ կարելի է անվարան Յաղրճին նոյնացնել Հաղարծինի հետ, ուր Մաշտոց մը կը կազմուի՝ «Ես մեղապարտ Սարգիս սարգաւարկս, որ կազմեցի Մաշտոցս յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց ի հայրապետութեան տէր Մխիթար եպիսկոպոս հոգեւոր հօրն իմ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, որ կոչի Յաղրճին ի թվ. Հայոց ՊՀԸ ի Մարտ ամսոյն Ե» (Ակինեան Հ. Ն., Հաւաք. Յիշատ. Էջմ.* 1028):

*Դարեր վերջ Հաղբատի Զաքարիա առաջնորդը Սիմէոն Երեւանցի կաթողիկոսի օրով կը ջանայ Հաղարծնի (Աղարծնոյ) վրայ իր իշխանութիւնը տարածել (Դիւան, Գ., էջ* 137—138), *բայց յաջողութիւն չ'ունենար (անդ, էջ* 628): *Սիմէոն զինքը միմիայն Հաղարծնի նուիրակ կը նշանակէ եւ Ղազարի կէսը Հաղբատցիներուն եւ կէսը Հաղարծնի մէջ կը բաժնէ (անդ, Գ., էջ* 628 *եւ Զ., էջ* 182—183): *Սակայն ասով խնդիրը առժամապէս կը կարգադրուի: Քիչ յետոյ Հաղբատացիները Հաղարծնի բաժինին կը տիրանան եւ վերջինիս առաջնորդը Մանուէլ, զոր Սիմէոն պաշտօնանկ ընելու տրամադրութիւն ալ ունեցած է, Սարգիս միաբանին հետ անոնց դէմ Ղուկաս կաթ. Կարնեցիին խիստ բողոքագիր մը կը ներկայացնէ (Դիւան, Գ., էջ* 628 *եւ Դ., էջ* 387—389):

*Տարիներ ետքը Հաղարծինի միաբանները*

Դաւիթ կաթողիկոսէն կը խնդրեն իրենց վանքը «տէրունի» ընել եւ Սիմէոն վարդապետը վէքիլ նշանակել: Կաթողիկոսը կը հաւանի (Դիւան, Զ., էջ 33—36, 182—183):

Հաղարծին Աղա–Մահմատ խանի օրէն մինչեւ 1862 գրեթէ լքուած եւ անրնակ կը մնայ: Այդ շրջաններուն Տէր Մարգարեան Պօղոս վարդապետը († 1895) կը ջանայ զայն չէնցնել (Արձագանք, 1887, էջ 483. Արաքս, 1895, էջ 63—65. Սմբատեան, Գեղարքունիք, էջ 182. Մշակ, 1911, Թ. 258, ուր եւ Ստ. Վ. Քօլեանց վանահօր մասին): Ան 1901ին կը վերանորոգուի (Բիւզանդիոն, 1901, Թ. 1363):

Հաղարծնի վանքը ունէր բաւական կալուածք եւ ջաղացք (Կիր., Պատմ., էջ 109. Արձագանք, 1887, էջ 483. Արաքս, 1897, Բ., էջ 43—44), բայց դժբախտաբար անխնամ ձգուած է (Մշակ, 1911, Թ. 258—259): Ստացած է Զօղիմոս քահանայէն շատ մեծ կաթսայ մը (Արցախ, էջ 369. Սմբատեան, Գեղարքունիք, էջ 182 եւն):

## 8. ՄԱԿԱՐԱՅ ՎԱՆՔԸ

Հին–Հաչա–Ջրի հարաւային կողմը գեղեցիկ եւ բարձրահայեաց սարահարթի մը վրայ բարձրացած է Մակարայ վանքը[9]:

[9] Ցովսէփ Դինեցիի վկայարանութեան մէջ Սեւորդեանց գաւառին մէջ Մակարայ վանք կը յիշուի (Աճառեան, Հայ Նոր Վկաներ, էջ 51. Ինճիճեան, Ստորագրութիւն, էջ 526. Տաշեան, Մայր Ցուցակ, էջ 89):

Ս. Աստուածածնի նուիրուած տաճարը շինուած է կիսատաշ քարերով եւ խաչաձեւ։ Ունի աւագ խորան մը եւ չորս փոքր խորան, վեց լուսամուտ, մէկ դուռ եւ արեւմտեան պատին կից գաւիթ մը, որ կառուցուած է չորս սիւնի եւ տասը կիսասիւներու վրայ։ Երբեմն անոր մէջ տեղը ուրիշ գաւիթ մը եղած է, որ սակայն այժմ խոնարհած է։ Կանգնուած է չորս կամարներու վրայ։ Միապաղաղ են եւ բոլորշի տաշուած սիւները եւ կիսասիւները, որոնք գեղեցիկ պատուանդաններ եւ խոյակներ ունին։ Այս գաւիթը իր հարաւային կողմը՝ իրարու վրայ երկու խորան ունի։ Հիանալի է այն քանդակազարդ սանդուխը, որ վերի խորանը կ՚առաջնորդէ (Արցախ, էջ 374. Տաշագ, էջ 124)։

Գաւթին սեմին վրայ կայ՝ «ՈՂ թիւ. Սամէլս մեծ յուսով միաբանեցայ, Աստուածածնիս եւ եսու (զարդիւնս) յուսոյն Աստուծոյ»։ Անոր ներքեւ կայ՝ «Ես Սերոբ եւ Թումա քահանայք եւ եղբարք զմեր հոգոյ արդիւնս տուաք ի սուրբ Աստուածածինս. հայրս Յովհաննէս եւ միաբանքս եսուն մեզ Բ. պատարագ Թումային ի տաւնի Անտոնի... թվ. ՁԲ» (Արցախ, էջ 374. Արձագանք, 1888, էջ 132)։

Երկրորդ տաճարը կամ վանքը[10] չի–

[10] Բարխուդարեան կը գրէ՝ «Հարկ է յայտնել, որ Բ. վանքի արեւելեան արտաքին որմի վերայ կայ մի երկար արձանագրութիւն, որի մէջ յիշուած է միայն Մակարայ վանք անունն» (Արցախ, էջ 376)։

նուած է ամբողջապէս սրբատաշ քարով, չորս բարձրակառոյց կամարներու վրայ, բայց շատոնց կաթուղիկէն արդէն խոնարհած: Ծինուած է Գանձասարի ճարտարապետութեամբ եւ ճաշակով: Ունի աւագ խորան մը եւ եօթը խորանիկ, տասնումէկ լուսամուտ, երկու խորհրդարան, երկու դուռ եւ 15·30 մ. երկարութիւն եւ 10·10 մ. լայնութիւն: Հրաշալի է եւ ուշագրաւ բեմին ժողովրդահայեաց ճակատը, որ կազմուած է դոյնզգոյն քարերով եւ զարմանազան նրբաքանդակ նաղշերով:

Հարաւային փոքր խորանին դրան վրայ արձանագրուած է՝ «Կամաւն Աստուծոյ ես Դաւիթ առաջնորդ սուրբ ուխտիս կամակցութեամբ եղբարցս գրեցաք զՏեառնընդառաջ աւրն զամէն եկեղեցիքս, որ Վահրամայ լինի պատարագ, որչափ ի շինութեան է ուխտս»:

Հարաւային ներքին պատին վրայ՝ «Անուամբն Աստուծոյ այս գիր է Դաւթի եւ այլ միաբանացս, որ գրեցաք վասն Յովսէփայ, որ ետ ոսկի ի գին եկեղեցւոյս եւ մեք տուաք Ա. պատարագ ի տաւնի Քառասնիցն»:

Արեւմտեան լուսամտին վերեւ՝ «Տէր Աստուած Յիսուս Քրիստոս ողորմեա Իւան Շահին եւ ամուսնոյն ՈՂԲ»:

Հարաւային որմին վրայ, արտաքուստ, արեւի ժամացոյցին տակ՝

«Յուսով Աստուծոյ ես Յովանէս քահանայ էտու զիմ հողոյ արդիւնս եւ գնեցի յԱրտաւազայ իւր ամէն որդեացն զայգին եւ ըն–

*ծայեցի Աստուածածնիս. Յովաննէս առաջնորդ եւ միաբանքս էտուն Բ. ժամ ի տաւնի Աշխարհամատրան, Ա. ժամ ինձ եւ Ա. ժամ իմ մաւրն Զուզին... Թվ. ՁԹ»* (*Արցախ*, *էջ* 378. *Արձագանք*, 1888, *էջ* 132):

*Այս տաճարներուն արեւելեան կողմը կայ մատուռ մը, որ հետեւեալ արձանագրութիւնն ունի՝ «Ի Թուին ՌԽէ Հայ(ոց) ես յամենայնի մեղապարտ Յովհաննէս ամեն միաբան եղբարցս կամակցութեամբ եւ ձեռնտուութեամբ զեկեղեցիքս յիմ ծնողացն եւ եղբարցն, որ այժմ ննջեցեալ են շինեցի, Վասակայ, Շուշկանն, Հասանա(յ) եւ Վաչէի եւ խնդրեմ մեծ յուսով եւ հաւատով եւ զԱստուածածին եւ զՔրիստոսի չարչարանսն բարեխաւս ունիմ, որ յետ իմ սպասաւորեն տեղոյս, զի Զատկին ՚ւրն արասցեն նոցա ժամ...»* (*Արցախ*, *էջ* 373—376. *Արձագանք*, 1888, *էջ* 133):

*Այս արձանագրութիւններէ զատ կան դեռ ուրիշ արձանագրութիւններ, որոնց բովանդակութեան ամփոփումն է՝*

1. *Վասակ իշխանը՝ Ջիահիկս կու տայ եւ Վարդանանցին՝ Դաւիթ առաջնորդէն ժամ մը կը ստանայ:*

2. *Խարդիշիկ եւ Բանուան կը միաբանին Ս. Աստուածածնի եւ Դաւիթ առաջնորդէն ժամ կ՚առնուն:*

3. *ՈՀԳ Թուին նոյն առաջնորդէն Նւազր քահանային Բ. պատարագ կը նշանակուի:*

4․ *Լիպարիտ եւ իր ամուսինը ոսկի կուտան եւ պատարագ մը կ՚ընդունին։*

5․ *Պօղոս ալ ոսկի կը յանձնէ եւ Դաւիթէն պատարագ մը կ՚առնու։*

6․ *Աշոտ Դ. ժամ կը ստանայ Յովհաննէսէն։*

7․ *«Յանուն Աստուծոյ այս իմ գիր է Վասակա Կուտկանս, որ էտուք գայգին ի վանքս յառաջնորդութեան Յօհանիսի միջնորդութեամբ յԱստուծոյ վկայութեամբ ամէն եղբայրութեանս կամակցութեամբ Աշոտո եւ Գրիգորո եւ Վաչէի եւ իւրեանց մաւրն...»։*

8․ *Խաչատուր քահանան ընծայ տալով Յովհաննէսէն պատարագ կ՚ընդունի։*

9․ *Յովհաննէս եւ Տիկին կը միաբանին եւ Յովհաննէս պատարագ մը կը սահմանէ։*

10․ *Ծարուհի Գայիանեանց տօնին պատարագ մը կ՚առնու։*

11․ *Քրիստափորի տօնին Տէրունականին Յովհաննէսէն պատարագ մը կը տրուի։*

12․ *Միհնազ իր հոգւոյ արդիւնք կու տայ եւ իրեն պատարագ մը կը յատկացուի։*

13․ *«Այս մեր գիր է Գաւթի (Դաւթի՞) եւ միաբանացս, որ տուաք Ասփին եւ եկն յուսով եւ միաբանեցաւ Ս. Աստուածածնիս»։*

14․ *«Ես Վաչէ Անբերդեցի իշխանաց իշխան ետու վեց հարիւր դահեկան ի շինութեան գաւթիս ձեռամբ Գրիգոր վարդապետին եւ յառաջնորդութեան Դաւթի եւ սոքա ետուն զՂազարու տաւնին եւ զԾառզազարն զամէն եկեղեցիքս ինձ պատարագել»։*

15․ *Երիտասարդի մը հոգւոյն կը տրուի իր տօնին առթիւ Դ. ժամ։*

16․ *Խարիբէկ եւ Նանա Վարագայ տօնին՝ պատարագ կը ստանան։*

17․ *Ճպոււնա Խ. դահեկան կու տայ եւ Բ. ժամ իրեն համար կը սահմանուի։*

18․ *Հոգեղեղ իր նուէրին փոխարէն՝ Սուքիասեանց տօնին ժամ մը կ՚առնու։*

19․ *Մխիթար եւ Մարազան ընծաներ կը մատուցանեն եւ Բ. պատարագ կը պարտադրեն։*

20․ *Գաղան* 20 *դահեկան կը նուիրէ եւ Յովհաննէս ու միաբանները Վարագայ տօնին անոր ժամ մը կը գրեն* (*Արցախ*, *էջ* 373—376. *Արձագանք*, 1888, *էջ* 133)։

*Այս արձանագրութիւններէն հասու կ՚ըլլանք՝ թէ Մակարայ վանքը — որուն եւս Արզու խաթուն իր բարեգործութեան ցոյց կու տայ — ԺԲ. դարու հիմնարկութիւն է եւ իր առաջնորդներէն եղած են Յովհաննէս եւ Դաւիթ։*

*Ս. Մակարի վանքը կրնար տրամադրել շատ կալուածներու վրայ. գանոնք ստացած էր նուիրատուութեամբ եւ գնումով* (*Արաքս*, 1892, *էջ* 34—39)։

9․ ՄԱՆՍՏԵԻԻ ՎԱՆՔԸ

*Ջորագետի հարաւը, Ճինող վտակի ափին։ Կանգնուած՝ սրբատաշ քարերով։ Տանիքին վրայ դրուած է խոյի մը քարեայ գլուխը* (*Արցախ*, *էջ* 389—390)։

## 10· ՄՇԱԿԱՎԱՆՔ ԿԱՄ Ս· ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԸ

*Նոր Կողբ գիւղի մօտերը։ Զմայելի տարահարթի վրայ շինուած է Ս· Աստուածածնի այս վանքը եւ այն «համակ սրբատաշ սպիտակ, տորոնագոյն եւ երկնագոյն քարերով մի կամարի վերայ» (Արցախ, էջ 385)։ Ունի չորս փոքր եւ մէկ աւագ խորան, երկու խորհրդարան, չորս լուսամուտ, մէկ դուռ, 12 մ· երկարութիւն եւ 8 մ· լայնութիւն։ Հիանալի քանդակներով զարդարուած են բեմի եւ խորհրդարաններու քարերը։*

*Դրան գլխաքարի վրայ արձանագրուած է՝ «Ես Ռըստակէս եւ այլ միաբանքս հաստատեցաք ի տարին Բ· ժամ Ա· Արեսալոյ, Ա· Ագըգին, ի տանի քառասնից, ով խափանէ, մեր մեղացս տէր է առաջի Աստուծոյ»։*

*Տաճարին արեւմտեան որմին կից է քառակամար եւ գեղեցիկ գաւիթը, որ կանգնած է երկու միապաղաղ սիւներու եւ վեց կիսասիւներու վրայ եւ ունի երկու խորանիկ, երկու գեղեցկաքանդակ խաչարձան, երեք լուսամուտ, մէկ դուռ, 14·85 մ· երկարութիւն եւ 13 մ· լայնութիւն։ Հարաւային խորանին վրայ կը կարդացուի՝ «Տէր Աստուած ողորմեայ յԱզատին եւ իւր ծնողացն ամէն»։ Նոյն կողմի Խաչարձանին վրայ կայ՝ «Տէր Աստուած ողորմի Աւմ· Տողմիշին, Դաւփին, Խոյտանին»։ Իսկ հիւսիսային Խաչարձանին վրայ՝ «Տէր ողորմեայ Թաչտին եւ իւր ծնո–*

ղաց, որ գլխաչս կանգնեաց ի Թիլիս Հայոց ՉԽ»:

Տաճարին որմին վրայ (արտաքուստ) կայ արեւի ժամացոյց մը, որ այս արձանագրութիւնն ունի՝ «Ի թուակ. ԷԾԲ (ՉԲ) ես Վասակ, Սխխաթունս էգի եռու Աստուածածնիս, Ռըստակէս եւ միաբանքս տվաք Գ. ժամ Աւետեացն տաւնին»:

Մշակավանքի մէջ դեռ ուրիշ արձանագրութիւններ կան: Անոնց համառօտ բովանդակութիւնն է՝

1. «Կամաւն Աստուծոյ ես Վարդան եւ եղբայրն իմ Ամիրայն միաբանեցաք Աստուածածնիս եւ ի հալալ ընչից մերոց տուաք գաս. հայր Ըռստակէս եւ այլ միաբանք հաստատեցին ի տարին...»:

2. «Կամաւն Աստուծոյ ես հայր Գրիգոր եւ այլ միաբան եղբարքս հաստատեցաք ի տարին Բ. ժամ Խաչբեկին ի տաւնի սուրբ Խաչին Ջ»:

3. Գաղայ միաբանելով հինգ պատարագ կը ստանայ:

4. Սիրայդեղ երեք պատարագ կ՚ընդունի:

5. Գրիգոր եւ Վահրամ հինգ պատարագ կ՚առնուն:

6. «Կամաւն Աստուծոյ ես Ասլան որդի.. չինեցի զմատուռս ի հալալ ինչից իմ. առաջնորդք սուրբ ուխտիս հաստատեցին ի տարին Է. աւր ժամ ի տաւնի սուրբ Աստուածածնին»:

7· Խաչատուր քահանան տուած նպաստներուն համար Գ. ժամ կ'առնու:

8· Երկու ժամ կը հաստատուի Իշխանին եւ անոր ամուսինին:

9· Գոհարին եւ Հայրապետին երկու ժամ կը յատկացուի:

10· Պրուխին Ս. Սարգիսի տօնին երկու ժամ կը տրուի:

11· Յուհանին մէկ ժամ կը սահմանուի:

12· Վարդեգոյնին եւ Բանուգին մէկական ժամ,

13· Նմանապէս Գերգայ եւ Ոթանկին

14· իսկ Սարգիսին երկու ժամ

15· եւ Ազիզին ալ երկու ժամ կը յատկացուի:

16· «Կամաւն Աստուծոյ ես Աստուրս միաբանեցայ ի սուրբ Աստուածածինս եւ ետու ստակ եւ ամենայն միաբանքս հաստատեցաք ի տարին Բ. ժամ երկրորդ գալստեան աւրն Աստղոնին առնեն»:

17· Աստուած ողորմեայ Ազատին եւ իւր ծնողացն ամէն:

18· Կամաւն Աստուծոյ ես Սանդուխտ միաբանեցա սուրբ Աստուածածնիս, Առըստակէս եւ այլ միաբանքս ետուն ա. աւր ժամ ի տաւնի Սանդխտոյ...»:

19· Աթարակ եւ իր ամուսինն երկու ժամ կ'ընդունին:

Այսպէս արձանագրութիւններէն պայծառ կ'երեւայ թէ այս վանքը բաւականէն աւելի սիրուած սրբավայր եղած է (Արցախ,

էջ 385—386· Արձագանք, 1888, էջ 160—161):

«Վանքիս շուրջն լի է գերեզմանաքարերով. այս տեղ կայ եւ գիւղատեղի՝ որ կոչւում է վանք: Անյայտ են միարանից խուցերի տեղերն» (Արցախ, էջ 386):

Վարդան Պատմագիրը կը հաղորդէ՝ «Եղեւ չարժ ահագին (ՈԿԸ Թուին) եւ փլաւ պաճուճազարդ եկեղեցին որ ի Մշակավանս, ի մենաստանն, Յունուարի ի ժամ ճաշու եւ դ· պատարագող ընդ մեծ գենմանն նուիրեցան» (Պատմ., էջ 142· Հմմտ. Ինճիճեան, Ստորագրութիւն, էջ 528):

## 11· Ս· ՊԵՏՐՈՍԻ ԿԱՄ Ս· ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԸ

տե՛ս

ՋՈՒԽՏԱԿ ՎԱՆՔԸ

## 12· ՊՂՆՁԱՀԱՆՔԻ Ս· ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԸ

Մաթոս գիւղատեղին՝ «կայ մի մենաստան սրբատաշ քարով, բաղկանում է երկու մատուռաձեւ տաճարից եւ մի գաւթից...»: Արձանագրութիւնից երեւում է որ այդ եկեղեցին կոչուել է Պղնձահանաց Աստուածածին» (Արձագանք, 1888, էջ 101):

Եկեղեցւոյ ճակատին վրայ գրուած է «Կամաւն Աստուծոյ ես Յորդանանս շինեցի զեկեղեցիս ի Թվ. ՈՂ. յիշխանութեան Աւագին՝ ողորմութեամբ Պղնձահանացս Աստուածածնին եւ ի առաջնորդութեան Պետրէի եւ տէր Համազասպայ, որք երկրպագէք

յիշեցէք յաղաւթս ձեր զՄխիթարն... եւ զՅորդանանս...» (Արձագանք, 1888, էջ 363․ Համմտ. եւ Արցախ, էջ 363—364, որ աւելի յաւ եւ ճոխ ընթերցուած եւ ուրիշ արձանագրութիւններ ալ ունի)։ Հետեւաբար վանքին հիմնադիրը կամ վերանորոգողն է՝ Աւագի օրով (ՈՂ—ՈՂՁ թուականներուն) Յորդանան։

## 13. ՁՈ(Ի)ԽՏԱԿ ՎԱՆՔԵՐԸ (Ս. ԳՐԻԳՈՐԻ ԵՒ Ս. ՊԵՏՐՈՍԻ ՎԱՆՔԵՐԸ)

Կը գտնուին Պօղոս քէլլիսա գիւղի արեւմտեան կողմ երկու առուակներու մէջ ինկած անտառապատ հովիտի մը գոգը եւ շինուած են իրարու մերձ։

Արեւելեան վանքը, որ արձանագրութիւններու համաձայն Ս. Գրիգոր կոչուած է, կառուցուած է չորս կամարներու վրայ, որոնց գլխուն բազմած է կաթողիկէն։ Ունի աւագ խորան մը, չորս փոքր խորան, ութ լուսամուտ, երկու խորհրդարան, երկու ճգնարան, 9·78 մ. երկարութիւն եւ 7·57 մ. լայնութիւն։ Երկու վերին եւ փոքր խորանները եւ առոնց ժողովրդահայեաց երեսները զարդարուած են գեղեցկաքանդակ խաչերով։ Այժմ կաթողիկէն ամբողջապէս խոնարհած։

Վանքին հարաւային կողմը (արտաքուստ) արձանագրուած է՝ «Կամաւն Աստուծոյ ես Տալիթայս միաբանեցայ սուրբ Գրիգորիս, միաբանքս ետուն ա. պատարագ

ի տանի Ծառազարդին, կատարիչքն աւրհնին յԱստուծոյ»։

Աւագ խորանին հիւսիսային նեղքին կողմը կայ՝ «Այս իմ դիր է Բէկխս եւ Բարինիս, որ զնեցաք զաջոյ խորանս, հանապազ մեզ պատարագ, կատարիչք գրոյս աւրհնին յԱստուծոյ»։

Երկրորդ վանքը արեւմտեան կողմն է եւ կոչուած Ս. Պետրոս, մինչ եկեղեցին Ս. Աստուածածնի նուիրուած։ Տաճարն ունի երկու փոքր եւ աւագ խորան մը, չորս լուսամուտ, դուռ մը եւ 8·62 մ. երկարութիւն եւ 6·40 մ. լայնութիւն։

Դրան ճակատակալ քարին վրայ գրուած է՝ «ՈՃԱ Հայոց... ամիրութեան Լաչայի ի տէրութեան... խանին ես Հայրապետ առաջնորդ ուխտիս, որ կոչի Պետրոսի վանս, շինեցի զսուրբ Աստուածածինս եւ յուսով կարգեցի զճրագալոյց(ի)ն Բ. խորանն ինձ պատարագ առնել եւ Ա. իմ եղբաւրն Ծմաւոնին[11]»։

Հիւսիսային փոքր խորանին դրան վրայ՝ «Ի թվ. ՈՃՋ. ես Մայրացեալս շինեցի զխորանս ի հալալ արդեանց իմոց եւ առաջնորդք

[11] Այս արձանագրութիւնը Բաջիկեան կը կարդայ՝ «Ի Հայրապետութեան սուրբ ուխտիս որ կոչի Պետրոսի վանս, շինեցի զսուրբ Աստուածածին եկեղեցիս եւ կարգեցի զճրագալոյցն Բ. խորանն ինձ... ա. իմ եղբաւրն Ծմաւոնին. զամեն եկեղեցիս մեծ աղվան» (Արձագանք, 1888, էջ 101)։ Արդէն Ջալալեանի, Բաջիկեանի եւ Բարխուդարեանի արձանագրութիւններու ընթերցումներու մէջ եւ այն տեղ բաւական մեծ տարբերակներ կան։

սորա եաւն ի տարումն... ժամ Տեառնընդառաջին»։

Հարաւային փոքր խորանին դրնագլխուն՝ «Յայսմ խորանի ա. ժամ ի տաւնի սուրբ Սարգսին՝ Սարգսին արասցեն, զի նորա արդեամբք շինեցաւ խորանս...[12]»։

«Վանքերիս շուրջն լի է գերեզմաններով։ Միւրանից սենեակներն շինուած են եղել գետնափոր, վիմափոր եւ փայտեայ։ Իսկ շրջապարիսպի հետքերն անգամ անկարելի եղաւ գտնել» (Արցախ, էջ 361—363. հմմտ. եւ Մշակ, 1911, թ. 181)։

## 14. ՍԱՄՍՈՆԻ ՎԱՆՔԸ

Խնձորկուտի ձորի մէջ։ Տափարակ վայրի մը վրայ։ Փոքր է «վանքս՝ որ ներսից խաչաձեւ է, ունի կաթուղիկէ, աւերակ խուցեր եւ հանգստարան» (Արցախ, էջ 381)։

---

12 Բաջիկեան հետեւեալ արձանագրութիւններն ալ ունի՝ «Ցաւուր տաւնի Վարագայ խաչի Ա. ժամ Մխիթարայ առնեն, ով խափանէ դատապարտեսցի յԱստուծոյ»։ — «Կամաւն Աստուծոյ ես Մրուան միաբանեցայ Ս. Աստուածածնիս եւ ետու ընծայ եւ Յորդանան ետ ինձ Բ. ժամ պատարագ ի տաւնի սրբոյ Խաչին Ա. ինձ եւ Ա. Լերանցին անխափան» (Արձագանք, 1888, էջ 101)։

Այսքան է այս վանքերու մասին մեր ծանօթութիւնը։ Յորդանան՝ տաճարդ ըլլալու է (հմմտ. վերը))։ Բարխուդարեանի արձանագրութեան մը ընթերցումին համեմատ՝ ուրիշ տաճարդ մըն է՝ Հայրապետ (հմմտ. վերը)։

## ՅԱՒԵԼՈՒԱԾ, ԷՋ 208

*Մինչ լոյս կը տեսնէր աշխատասիրութեանս հատուածը «Վարագայ վանք» (Հանդ. Ամս. 1952, Թ. 10—12, էջ 570), մի եւ նոյն ժամանակ կու տար էջմիածին ամսագիր (1952, Թ. 9—10, էջ 21 եւ Թ. 11—12, էջ 27) Գ. Սարգսեանի նկարագրութիւնը նոյն վանքին բովանդակալից նորութիւններով: Կը յանձնարարեմ զայն ընթերցողներուս:*

*Նոյն ամսագիրը հրատարակած է (Թ. 1, էջ 23—26) Առաքել Պատրիկի գրչէն «Մշոյ Առաքելոց վանքի դուռը», նկարով եւ ուսումնասիրութեամբ:*

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Բ. Վարանդայի վանքերը | էջ



Գ. Մեծիրանքի կամ խաչենքի վանքերը

Դ. Հարթերքի վանքերը



Ե. Ջրաբերդի եւ Գիւլիստանի վանքերը



Զ. Գարդմանի վանքերը

էջ



Է· փառիսոսի վանքերը

էջ



Ը· Բուստիի վանքերը



Թ. Ջաւէի, Ձորագետի եւ Կայենոյ վանքերը

Էջ



---

# ԸԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

## ՄԱՏԵՆԱՇԱՐ

ՃԾԸ. Ակինեան Հ. Ն., *Ս. Մաշտոց վարդապետ. կեանքն եւ գործունէութիւնը. հանդերձ կենսագրութեամբ Ս. Սահակայ*: 1949, էջք ԺԱ + 473: գ. Փր. 6.—

ՃԾԹ. Ակինեան Հ. Ն., *Քրիստոնէութեան մուտքը Հայաստան եւ Վրաստան. «Գիրք Կինը», Ս. Հռիփսիմէ եւ Ս. Նունէ*: 1949, էջք ԺԱ + 348: գ. Փր. 5.—

ՃԿ. Սեֆուլայ Հ. Օ., *Նոր Կտակարանի գրքերու կարգը Հայոց քով*: 1949, էջք 96: գ. Փր. 1.—

ՃԿԱ. Արեղեան Ա., *Քերովբէ Պատկանեան Դորպատում*: 1949, էջք 54: գ. Փր. 1.—

ՃԿԲ. Պօղոսեան Հ. Ե., *Կարապետ Արթին Փաշա Տատեան* (1816—1873): 1949, էջք 84: գ. Փր. 1·50

ՃԿԳ. Ակինեան Հ. Ն., *Քննութիւն Ս. Սահակի վերագրուած կանոններու եւ Հայոց եկեղեցական տարին Է. դարու սկիզբը*: 1951, էջք 192: գ. Փր. 2.—

ՃԿԴ. Ակինեան Հ. Ն., *Սիմէոն Պղնձահանեցի եւ իր թարգմանութիւնները վրացերէնէ*: 1951, էջք 276: գ. Փր. 1·50

ՃԿԵ. Տէր-Պօղոսեան Հ. Պ., *Տեղագրական հետազօտութիւններ Հայաստանի մէկ քանի քաղաքներու եւ բերդերու մասին*, 1951, էջք 134: գ. Փր. 2.—

ՃԿԶ. Աճառեան Հ., *Եւրոպական փոխառեալ բառեր հայերէնի մէջ*: 1951, էջք Ը + 188: գ. Փր. 4.—

ԾԿԷ. Ոսկեան Հ. Հ., *Բարձր Հայքի վանքերը*: 1951
էջ ԺԲ + 230: գ. Փր. 4.—

ԾԿԸ. Ակինեան Հ. Ն., *Եղիշէ վարդապետ եւ իր Պատմութիւնն Հայոց պատերազմին. քննական ուսումնասիրութիւն*: Հատ. Գ.: 1952, էջք 530:
գ. Փր. 7.—

ԾԿԹ. Ակինեան Հ. Ն. Վ., *Կարմիրն Վարդան եւ Աւարայրի ճակատամարտը ըստ Ղազար Փարպեցւոյ*: 1951, էջք Է + 96: գ. Փր. 1.—

ԾՀ. Պողոսեան Հ. Ե. Վ., *Գուլամճեան եւ Թընկըրեան Գերդաստանները*: 1951, էջք Ե + 122:
գ. Փր. 1.20

ԾՀԱ. Ոսկեան Հ. Հ., *Գնունեաց եւ Ռշտունեաց Նախարարութիւններ*: 1952, էջք Ը + 156:
գ. Փր. 3.—

ԾՀԲ. Ակինեան Հ. Ն., Վ., *Բաղէշի Դպրոցը* 1500—1704. *Նպաստ մը Հայոց Եկեղեցւոյ Պատմութեան եւ Մատենագրութեան*: 1952, էջք Ը + 390:
գ. Փր. 5.—

ԾՀԳ. Ակինեան Հ. Ն., *Մատենագրական հետազօտութիւններ*. Հտ. Ե. 1953: գ. Փր. 5.—

ԾՀԴ. Ոսկեան Հ. Հ., *Տարօն–Տուրուբերանի վանքերը*: 1953, էջ 371 (24 *պատկերով*): գ. Փր. 5.—



*Հասցէ*

**ՄԽԻԹԱՐԵԱՆ ԳՐԱՎԱՃԱՌԱՆՈՑ**
*Librairie des Pères Mechitharistes*
*Vienne VII/62, Mechitaristengasse 4 (Autriche)*

